# ՄՆԱՑՈՐԴՔ
## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
## ԱՐՏԱՔՈՑ ՏՕՆԱՑՈՒՑԻՆ ՄԵՐՈՑ
## Յիշատակելոց

Ի Յայսմաւուրս կամ՝ ի Ճառընտիրս Հայոց
ոչ և Յունաց, և Լատինացւոց.

Զոյգ ընդ ցուցակի Տօնելի սրբոց.

Համառօտեալ աշխատասիրութեամբ Հ. Մկրտիչ Վրդ.
Աւգերեան, 'ի միաբանութենէ մեծին Մխիթարայ
Աբբայ հօր ։

Եւ փաստագրեալ հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի
Ագոնց՝ Աբբայի և Արքեպիսկոպոսի ։

Արդեամբք ծախասէր Մանուկ Աղայի Կարնեց-
ւոյ մահտեսի Աճատուրեան ։

## ՀԱՏՈՐ. ԺԲ.

Այբուբենական.

որ է Բառարան յատուկ անուանց Սրբոց,
հնոց և նորոց ։



1815. Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԴ.

Ի Վանս Սրբոյն Ղազարու ։

չէ ինքնին դիւրագիւտ լինելոյ՝ որոց ցանկան գտա-
նել և ընթեռնուլ շնորհս այսր կամ այնր սրբոյ արդա-
ժոյ փօխադրութե: Բայց որպէս չէ լեալ հարկաւոր այս
ժամանակամայն և Յունաց վարդապետաց փօխելեաց 'ի մէնջ,
եբրև հանրական ցուցակ՝ եմ Նաստաւարան ամ սրբոց ե-
րևելեաց, անցուցանեմք 'ի կարգ այլոցաբեննիցդ և
զանոնմանս եղեալս 'ի փօխադրութե, առաւելով շըն-
թերցօղս 'ի լիակատար վարս նոցա՝ որ 'ի նախընթաց
հատորս, աւելով. տե՛ս 'ի Տօնելիս. հատ. Ա. կամ
Բ. Ճա. երես, Ճա:

Նաև թէ ժամե՞ ժրրանց և աշխատութեց եղէ գործս,
ո̄ն է գիտելի. յորմէ և եթ ծամ անհնարութէ վար-
ձոյց ըստ անէա մարդասիրութե իւրոյ՝ բարեխօ-
սութեամբ ամ սրբ. այլ յընթերցանելեաց ախն ունիմ
ընդ ազօթից, և ընդ ներողամտութե մարդկօրէն սխա-
լանացս՝ ընդունել և շնորհակալ վաստակոցս՝ 'ի հոգիս
իւրեանց. չի մ՛ լոկ ընթերցօղին շահեալն, այլ չի
պարգևեալեացին և զուերմանեալն եբրև երկիր բարի
և պարարտ, նման օշ լինելով վարդոց սրբոց ամ. չի
և նոցին պտուղոյն արժանի լինիցին 'ի ժ̃ յ̃ 'ի ո̄ր
մէր:

Այս չէ գործս բովանդակ չարչարեալն յամի փօխելեօք
կամ յեղապանելեօք, չորոց է դարել սրբ առաքելական
գահին հռովմայ, ընդ նորին դատաստանաւ արկա-
նեմ զամ ա. յինէն գրեալս պարմաշարար կամ ժնոն-
շաբար. որպէս և զամ գրածս իմ բերականս և
գործնականս յամ 'ի կեանս իմ 'ի ժամս ամյ, և 'ի
պատիւ անճորհնեալ ամ ամանն, և յօգուտ մաս-
կանց եկեղեցւոյ:

* Այսուհետև և մեք՝ որ այսչափ շուրջ զմեօք մածեալ ունիմք զԲազմութիւն Վկայից, զհպարտութիւն զամ՚ ՚ի բաց ընկեսցուք և զմեղս կարևորս, համբերութեամբ ընթասցուք ՚ի պատերազմ, որ առաջին կայ մեզ։ Հայեսցուք ՚ի զօրագլուխն հաւատոց, և ՚ի կատարիչն Յս։

Եբր. ԺԲ. 1։



Իշխեա՛ մեզ դու և որդի քո։

# ՄՆԱՑՈՐԴՔ

## Վարուց Սրբոց Յիշատակելեաց,
## Օրինակ ըստ դասուց Տօնելեաց,
## Ըստ Այբուբենի։

---

## Ա.

ԱԲԳԱՐ ԿԱՄ ԱՒԳԱՐ Թագաւոր Հայոց յԵդեսիա. տե՛ս 'ի վարս տօնելի սրբց. հատոր. Ա. երես. 145 = 157։

Աբդաս կմ Աբդաս Եպս պարսից՝ ը Որմզդաննայ և Սայենի և Բենիամենի սարկաւագի նահատակեալ. տե՛ս 'ի տօնելիս. հատ. Բ. երես. 211 = 224։

Աբդաս կամաւոր, որ և Աբդիսու՝ Եպս Խեր-խա ղնդայ 'ի Պարսս, և Աբդիշու կմ Աղդիշ-սու Եպս Սախարայ՝ եւն 'ի Հալածանս յազ-կերտի։ Նախ ըմբռնի առաջինն՝ մատնեալ 'ի քեռորդւոյ իւրմէ սարկաւագէ. և դա-տեալ մն 'ի քն հաւատոց 'ի ներսիթայ եղ-բօ

ԱԲԵՂԱՅՔ սինէական լերինն, և ռաւթայ կամ հայրիթու եգիպտացւոց՝ նահատակեին որով և այսպէս տանջանօք 'ի սարակինոսաց, 'ի Դ և 'ի Ե դարու, անձինք իբր ութսուն և մի. 'ի հայրիթ կատարեցան միայնակեացք ԽԳ. և 'ի սինեա ԼԸ. յորոց վս ծագեաց լոյս յերկնից. և զմարմինս սրբոցն թաղեցին սաբա և եսայի ճգնաւորք: Զվկայելոցն 'ի սինեա ճոխագոյն գրեաց սբն հայրն նեղոս: Հ. յունվ. 11: Յ. Լ. յունվ. 14:

ԱԲԵՐԿԻՈՍ եպս յերապօլսոյ փռիւգացւոց՝ փայլեաց նշանագործութբ 'ի Բ դարու, յաւուրս մարկոսի անտոնինոսի իմաստասէր կայսեր, և դարձոյց զբազումս 'ի հաւատս քնի. բժշկեաց զդիւահարս և զախտաժէտս, լուսաւորեաց զկոյրս, ջուր բղխեցոյց յանջրդի վայրի, և յետ բժշկելոյ և զդուստր կայսեր 'ի հռոմ՝ դարձաւ յարևելս, և խաղաղութբ հանգեաւ 'ի քս առաքելանման հայրապետն, և թաղեցաւ 'ի տապանին՝ զոր ինքն էր պատրաստեալ՝ գրելով 'ի նմա և բանս խորինս: Հ. Յ. Լ. հոկտ. 22:

ԱԲԷԼ արդար՝ տօնելի Զ նախահարս. հտ. Դ. 194:

ԱԲԷՍ սարկաւագ տօնելի. հտ. Ա. 444:

ԱԲԻՍՈՂՈՄ սարկաւագ տօնելի. հտ. Ա. 37:

ԱԲՈՒԴԻՄՈՍ վկայ էր 'ի տենեդոյ կղզւոյն առ դիոկղետիանոսիւ. որ վս մերժելոյ զկուռս և զզոհս՝ կապեալ 'ի չորս ցիցս տանջեցաւ յինն դահճաց. և յետ քերմանց գլխատեցաւ:

ցաւ ։ Այս երևեցան Թ̃գրին հրեշտակք սու-
սերաւորք , և ցուցեալ զհոգի ս̃բյն աքսուղի-
մոսի ո̃պ քաջ սպառազէն՝ ասեն . տե՛ս զծա-
ռայն ո̃յ՝ զոր դու կարծէիր կարծել՚ի կե-
նաց . և գիտեա՛ , զի և յետ մահուանն կեն-
դանի է մեռեալն վ̃ս քո , և հզօր և յաղ-
թօղ ընդդէմ դիւաց՝ զորս պաշտէք կռա-
պաշտքդ . իսկ բռնաւորն յանձն լեալ , այլ
ոչ ինչ օգտեալ՝ եւ այլեւ զմարմին վկային ։
÷. օգոստ. 25 կմ 26 ։ {}. Յ. յուլ. 15 ։
Սեբակոմ նակաղեփ՝ տօնելի ը̃ նախահարս .
Հտ. Պ. 219 ։
Սեբակոմ և Կորէն խոստովանօղ երիցունք
Հայոց՝ աշակերտք Պ Լոնդեանց , տօնելիք .
Հտ. Յ. 210 ։
Սեբակոմ կամ Սեբոմ եպս պարսից՝ յարտա-
վիլ քաղաքէ՝ յաւուրս շապհոյ արքայից ար-
քայի , վասն ածելոյ զպարսիկս ՚ի հաւատս
քո̃՝ մատնեցաւ կապանօք ՚ի ձեռս աղեղ-
փարայ մոգպետի . և ոչ հաւանեալ զոհել
արեգականն և հրոյ՝ կրեաց ազգի ազգի տան-
ջանս , ո̃պ և պնեղուԹիս բանտի . և ապա
գլխատեցաւ՝ ՚ի բերան ունելով զխոստովա-
նուԹի̃ ամենասո̃ երրորդուԹե ։ ÷. փետր.
8 , կմ 7 ։ {}. փետր. 4 ։
Սեբակոմ քահանայ անապատաւոր՝ մակա-
նուն Սերգար , եր ասորի ուռհայեցի՝ աշա-
կերտ ս̃բյն յակոբայ մծբնայ հայրապետի .
մուծեալ ՚ի ծնողաց բանուԹ̃ ՚ի կարգ Ծի ,
և յետ եօԹն աւուր հրաժարեալ ՚ի կնոջէն
կա

կամակցութեամբ նորա՝ արգել զանձն 'ի խուղ մի՝ երկու մղոնաւ հեռի յեդեսիոյ, և ընդ պատուհանն առնոյր կոգեպահ կերակուր՝ կամս տասն: Ապա 'ի վախճանիլ ծնողացն՝ բաշխեաց զինչս նոցա աղքատաց. և բռնադատեալ յեպիսկոպոսէն՝ օծաւ քահանայ, և քարոզել դարձոյց 'ի քս գիւղ մի կռապաշտից. և դարձեալ առանձնացաւ 'ի խուղ իւր կամս յիսուն:

Նր դուստր եղբօր նր Մարիամ անուն՝ որբ մնացեալ. զոր եդ աբրահամ 'ի խուց մի՝ ուսուցեալ նմա զքմ կարգ ճգնութե. այլ նա պատրանօք չարին անկեալ 'ի մեղս՝ դարձաւ յա. յայնժամ արդարն գնաց ծպտեալ զա-կան ձևով 'ի խնդիր կորուսելոյն, և դարձոյց զնա յառաջին կարգ իւր. և այնքան ապաշխարութե ճգնեցաւ Մարիամ, մինչև գործել սքանչելիս. և այնպէս երկոքեանն սրբութե կատարեցան 'ի քս 'ի միայնարանս իւրեանց: Զգործս աբրահամու գրեաց աշակերտակից նր նը աբբայն եփրեմ: Հ. հոկտ. 28: Յ. հոկ. 29: Լ. մրտ. 16:

Ս. Ագաթէ կմ Ս. Ագաթա կոյս՝ (որ յունարէնն բարի լսի,) էր 'ի սիկիլիայ կղզւոյն՝ 'ի պանորմայ քաղաքէն (այն է բալէրմօ), չքնաղ յոյժ և մեծատուն, և պայծառացեալ առաքինութե 'ի հաւատս քսի՝ յաւուրս հալածանաց դեկոսի կայսեր: Կալան զնա կռապաշտք, և տարան առ կուինկտիանոս դատաւոր կատանայ քաղաքի (որ և գաղանա՝ 'ի

՚ի ստորոտս Եռնայ լերին) . և մինչև հար-
ցեալ՝ ինքնին խոստովան եղև կոյսն զքրիս-
տոնէութին իւր , և յանդիմանեաց զմոլո-
րութին կռապաշտութե : Իսկ դատաւորն զար-
մացեալ և զամօթի հարեալ՝ ետ զնա հար-
կանել զաղախինն քնի , և հատանել սրով
զստինս նը , և այնպէս ՚ի բանտ արկանել :
Ընդ երևեցաւ նմա ոը առաքեալն պետրոս
՚ի նմանութիւն ծերունի բժշկի՝ հանդերձ
բուսաւոր պատանեկաւ միով . և մատուցա-
նէր կուսին դեղս , զի ողջասցի ՚ի վիրացն :
Ասէ աղաթի . ես դեղ ունիմ զքս , որ
բժշկէ զիս առանց դեղոց : Ասէ պետրոս .
և զիս նա առաքեաց առ քեզ , զի աշակերտ
եմ նը և առաքեալ : Իսկ զայս ասացեալ՝
աներևոյթ եղև . և կոյսն գտաւ ողջացեալ բո-
լորովին , և գոհացաւ զա՞յ : Ապա հանին
զնա ՚ի բանտէ , և քարշեցին ՚ի վը մանր
խեցւոյ , և այրեցին հրով զխոցս վիրացն .
յայնժամ եղև շարժումն , և կործանեցաւ
կէս քաղաքին կատանայ . (զի ուր սոսկալ լե-
նի սասանութե ՚ի բռնութե հրաշունչ լե-
րինն Եռնայ , նովին կամեցաւ տր առ հարկա-
նել անհաւատից վս տանջելոյ նորա զգա-
թա . ) և ՚ի դիմել ամբոխին ՚ի վը դատա-
ւորին ապաստանել զնա՝ դադարեցին դահիճք
՚ի տանջելոյ զկոյսն . և եդին անդրէն ՚ի
բանտ . ուր ՚ի գիշերին յայնմիկ յաղօթս կա-
լով աղաթեալ՝ աւանդեաց զհոգի իւր առ
ած . և հաւատացեալքն առին զմարմին նը ,
և

Դոս, էին իշխանք փառաւորք և իմաստունք՝ նիկոմիդացիք, նէոկեսարացիք, և պոնտա-ցիք՝ քրիստոնեայ հաւատով ՚ի հալածանս մաքսիմիանոսի. յորում ժամանակի եւստոլ-միոս կոմսն յետ սպանանելոյ զքնմս յազ-քատաց ԺԸ ամ ճանապարհն՝ զոր արար ՚ի նի-կոմիդեայ ՚ի պոնտոս, զեօթանեսին զատա-արս երևելիս եած կապանօք առ Թգըրն՝ որ էր յայնժամ ՚ի սիզիւմբրիա Թրակիոյ. և նր գտեալ զնս հաստատուն ՚ի քն՝ ետ հա-տանել զգլուխս նց։ Հ. օգոստ. 20, կամ 21, և կմ 22։ Յ. օգոստ. 22։ Լ. օգոստ. 22. և այլք. 20։

Ր. Գաւնոդոսս կամ ագաթապուս սարկաւագ-ծերունի, և Նէոգոտլոս ընթերցող երիտա-սարդ՝ եղբարք էին Թեսաղոնիկեցիք, փայ-լեալք հաւատով ՚ի հալածանս մաքսիմիա-նոսի. և եղև նց տեսանել ՚ի միում գիշերի միանգամայն՝ ոմն տեսիլ երազոյ, զի ունէին ՚ի մատունս իւրեանց մատանիս ոսկիս՝ յորս գրեալ կայր ՚ի վր պատուական ականց մար-տիրոսութի նց։ Եւ ահա յետ աւուրց կա-լաւ զնս փաւստինոս դատաւոր Թեսաղոնի-կեայ, և էարկ ՚ի բանտ. և անդ եւս Թուէր նոցա տեսանել՝ զի կային ՚ի նաւի. յորոյ ՚ի խորտակիլ յալեացն՝ իբրև ընկղմեցան նա-ւորդք, ինքեանք ելին ՚ի լեառն մի բարձր, և զերծան։ Ի վաղիւն անդր փորձեալ զնս դատաւորին, և ոչ կարացեալ մեկնել զնս ՚ի քէ, ետ ընկենուլ զվկայսն ՚ի ծով. իսկ

Ր. ադ-

ազգականք նոցա գտեալ զմարմինս սրբցն 'ի ծովեզրն՝ Թաղեցին պատուով: Հ. ապր. 4. կմ 5: Յ. Լ. ապր. 4:

Ս.Ագապէ կամ ագապի՝ տօնելի դուստր սոփիայ. տես հատ. Դ. 398:

Ս.Ագապէ յիշատակելի. տես աստ ընդ Իրինեայ:

Ս.Ագապիոս կմ ագապիտոս վկայն, և Թեկղ կմ Թեկղա վկայուհին էին 'ի գաղայ պաղեստինոյ 'ի հալածմանս դիոկղետիանոսի. և յետ բանտարգել լինելոյ՝ յաւուր յորում կատարեցաւ անդ տիմոթէոս երևելի վկայն, արկին և զսոսա առաջի գազանաց. են որ ասեն՝ թէ Թեկղ այնպէս կատարեցաւ 'ի քրծ, այլ ագապիոս և այլ բազում տանջանօք: Հ. օգոստ. 24, կմ 30: Յ. Լ. օգոստ. 19:

Ս.Ագապիտոս կմ ագապիոս հռովմայ հայրապետ՝ էր հռովմայեցի, նստեալ յաթոռ սրբյն պետրոսի յամի տն 535: Սա մտ օգտի եկեղեցւոյ կամեցաւ երթալ առ յուստինիանոս կայսր կոստանդնուպօլսոյ. և յելլադա բըժշկեաց զայր մի կաղ և համր՝ հաղորդելով զնա 'ի սբ խորհրդոյն, և 'ի մտանելն 'ի Թգրեալ քաղաքն ը̃ դուռն ոսկի կոչեցեալ՝ եբաց զաչս կուրի միոյ: Ընդ էր յայնժամ անթիմոս ոմն անարժան եպս տրապիզոնայ՝ որ էր եւտիքի և սևերիանոսի հերձուածողն, և առեալ զպատրիարգութի կոստանդնուպօլսի՝ սերմանեալ էր զաղանդ իւր

'ի քաղաքին. մ՟ն յանդիմանեաց զնա ն՟ր հայրապետն ագապիտոս, և ընկէց յաթոռոյն, ձեռնադրել 'ի տեղի ն՟ր պատրիարգ զմինաս զայր ողջամիտ և առաքինի՝ վկայել յամենեցունց. և ինքն խօթացաւ, և ոչ կարաց դառնալ 'ի հռովմ. և փոխեցաւ առ ա՟ծ 'ի կոստանդնուպօլիս, և թաղեցաւ փառօք 'ի տաճարի ս՟ց առաքելոց: Հ. ապր. 15, կի՟ր 19: Յ. ապր. 17: Լ. սեպտ. 20:

Ա.գնէս կոյս, որ և Ա.գնաւէս, (է՟ յունաց՝ ագնէ, որ թարգմանի գառնիկ, և ողջախոհ, և հագնի) էր առ դիոկղետիանոսի՟ 'ի հռոմայ, օրիորդ պարկեշտ և իմաստուն. որ զբազում կանայս ուսոյց դառնալ 'ի չար ճանապարհէ և 'ի կռապաշտութենէ: Ս՟յ կալաւ զնա սիմփրոնիոս իշխան քաղաքին. և ստիպէր կամ զոհել կռոց, և կամ գնալ 'ի պոռնկատունն: Իսկ 'ի մերժել ն՟ր և պարկեշտ կուսին զանօրէն հրամանսն՝ տարան զնա բռնութ՟բ 'ի տուն գարշութե. ուր ն՟ր տարածեալ զձեռս յերկինս՝ զ՟ք՟ն կոչէր յօգնականութի. յորմէ պակուցեալ անառակ երիտասարդաց՝ որք կամեցան մտանել առ նա, աչիւ մեծաւ արտաքս փախչէին որ՟պս պարտեալք և կթուցեալք. մի ոմն 'ի նոցանէ քանզի յանդգնեցաւ բռնին հարկանել 'ի ն՟ր կոյսն, նոյնժամայն պատուհասեալ անկաւ և եհան զոգին: Կոչեաց իշխանն զագնէս, և հարցանէր՝ թէ ի՞ մեռաւ երիտասարդն. և նա պատմեաց, թէ զ՟ի ես էր

հրեշ-

հրեշտակ ա՛յ իմոյ՝ պահապան հզօր , և յա-
հէ, նդ մեռաւ այրն : Ասէ Իշխանն . եթէ
յարուսցես զմեռեալդ , յայնժամ գիտացից՝
թէ ճշմարիտ է բան քո : Նա յաղօթել կա-
ցին ծնրադրութ՟՝ իսկևիսկ յարեաւ մե-
ռեալն . և զարհի հարան ամենեքին . իսկ
բռնաւորն հրամանս տայր այրել զագնեսս իւ-
րև ղիւթ և վհուկ . այլ ոչ մխասեաց նմա
հուրն . և ապա հատին զգլուխ կուսին յա-
մի տն իբր 304 : Յետ ութ աւուրց երևե-
ցաւ ագնէս փառօք՝ ծնողաց իւրոց , և փա-
րատեաց զսուգ նց . սորա և զայլ սքանչե-
լիս՝ որոց գալին 'ի տապան նր . զկրօրինակ
բժշկեաց և զկոստանդիա զդուստր կոս-
տանդիանոսի նախ քան զմկրտութն . որ
և մկրտեալ՝ շինեաց եկեղեցի 'ի պատիւ
սրբուհւոյն ագնեսի , որ է կոյս փառաւո-
րեալ յամ ազգս և 'ի լեզուս՝ ասէ հերոնի-
մոս : Տ . յուլիս . 9 , կմ 10 : Յ . յուլ . 5 :
Լ . յունվար . 21 , և 28 :

Ադամ նախաստեղծ՝ տօնելի ընդ նախա-
հարս . հտ . Գ . 186 :

Ադդէ հայրապետ՝ տօնելի . հտ . Ժ . 141 :

Ադոկտոս վկայ տօնելի . հտ . Օ . 215 :

Ադրիանոս և Անատոլիա տօնելիք . հտ . Ն .
167 :

Ադոն , որ և տղա կմ աղի , սքանչելագործ
վկայ՝ էր խսաւրացի՝ զօրական լիկիանոսի ,
առանձնացեալ 'ի լեառն յերեսաց հալա-
ծանաց , և կրօնաւորեալ բազում ճգնութ .

մինչև ետ Նմա տր շնորհս բժշկութեան ։ Տե-
սեալ զնա արքայազուն որսորդաց՝ ծանեան ,
և պատմեցին դիոկղետիանոսի ։ և յառա-
ջել Նր զօրականս ՃԾ 'ի բերել զազիոս՝ Նա
դարձոյց զնս 'ի քս՝ բղխեցուցանելով ջուր
'ի վր ճանապարհի ։ զորս մատնեաց թգրն
ՃԼ ազիոսի և այլ ևս նահատակաց 'ի ձեռս
ակումիղինոսի եպարքոսի ։ և Նր տարեալ զնս
'ի պոնտոս՝ ետ կախել զսբն ազիոս զհե-
րայ , և քերել երկաթի ձանկօք , և 'ի բանտ
արկանել ։ ուր երևեցաւ Նմա տր , և ողջա-
ցոյց զվէրս Նր ։ Արկին զնա 'ի հուր բորբո-
քեալ , և ել անտի անվնաս ։ և հաւատա-
ցին կինն և դուստրն եպարքոսի ։ և կոչե-
ցան Մեղասփիա և Սինփորոսա ։ վսյ ետ դատա-
ւորն հատանել զգլուխս նց ՃԼ ազիոսի և ՃԼ
ՃԾ զօրականաց ։ Իսկ եկեղ եպս սինոպքա-
ղաքի տր թադէոս՝ եառ զմարմին սբյն ա-
զիոսի , և ամփոփեաց պատուով ։ իսկ 'ի լի-
նել հրաշից 'ի տապանէ Նորա՝ հաւատացին
այլ ևս ԺԲ զօրականք ։ և Նոքա ևս կատա-
րեցան սրով ։ Հ ։ նոյեմբ ։ 20 ։ Յ ։ Լ ։
նոյ ։ 19 ։

Աթանագինէ եպս տօնելի ։ հատ ։ Պ ։ 56 ։
և Պ ։ 319 ։

Աթանաս հայրապետ աղէքսանդրացի՝ մեծն
կոչեցեալ , տօնելի ։ հտ ։ Ա ։ 217 ։

Աթանաս եպս տարսոնի կիլիկեցւոց՝ այր ա-
ռաքելական՝ յաւուրս վաղերիանոսի կայ-
սեր ։ առ որով էր 'ի սելևկիա իսաւրացւոց

Իշխ

Խանթուշ կին Աթանաս դուստր մեծատան և կռապաշտ ծնողաց · որ եկն երկու ծառայիւք զանխուլ 'ի տարօրն առ աթանաս՝ խընդրել զմկրտութիւն · և աթանաս աղդմամբ հրեշտակի տն եւ ը առաջ նր, և նշանաւ խաչի ջուր բղխեցոյց 'ի քարէն, և մկրտեաց զկոյսն · որում երևեցան երկու հրեշտակք, և զգեցուցին հանդերձ պայծառ : Ապա 'ի հաղորդել զնա եպսին՝ տեսանէին ծառայքն խանթուշի, զի կայր առ նմա տիկին մի փառաւոր՝ ունելով 'ի գլուխն պսակս երկու և խաչ մի · յայնժամ հաւատացին և ինքեանք, և մկրտեալ՝ անուանեցան Խարէուտինոս և Ստեփանոս : Յետ այսորիկ հալածեալ խանթուշ յիւրոցն՝ զգեցաւ մազեղէն, և կրօնաւորեցաւ 'ի լերին զամս իդ, և սքանչելի սրբութբ փոխեցաւ առ տր յառանձնութեան · զոր յետ չորից ամաց եկեալ ամփոփեաց յայտնութբ տն աբբահամ անապատաւոր · և շինեցաւ վկնի մատուռն և վանք 'ի վր տապանի նր : Իսկ Ճր եպսն աթանաս մատնեցաւ 'ի ձեռս կայսեր, և գլխատեցաւ վն անուանն քսի · և մարմինն նր եդաւ յեկմ յարծաթի տապանի : Տանջեցան վն հաւատոց և խարիսխմոս և նեստորիոս · և յետ քերանաց՝ սրով կատարեցան 'ի տր :

Դ. սեպտ · 3 : տր իէլ · օգոստ · 25 : Յ. Լ :
օգոստ · 22 :

Աթանաս զօրական · տեմ ը Օսիմոսի :

Անդրոնիկոս , կին աւեքսիոս այրն տյ՝ կամա-

ւոր աղքատ՝ տօնելի. Հատ. Ա. 388 :
Ալոյսիոս գոնզակա, ( որ և Լուիճի ասի ), մնա-
նուկ ազնուական և հրեշտակային վարուք
հանգոյն ալեքսիանոսի առն այ՝ էր որդի
փերրանդեի կմ՝ փերտինանտի գոնզակեան
ասպետին գաստիլիոնի 'ի լոմպարտիա, և
մարթայի դանայ սանդենայ, ծնեալ յամի
տն 1568. նուիրեալ 'ի բարեպաշտ մօրէն
նախ քան զծնունդն 'ի ձեռս փրկչին Է հա-
վանեաւ որ ածածնի. և սնեւ 'ի վարս պար-
կեշտութե և անարատութե, յաղօթս և 'ի
գիրս : Մինչդեռ ինն ամաց էր՝ տարաւ զնա
հայր իւր 'ի փլորենտիա՝ կրթիլ 'ի պալա-
տան դքսին յարքունի հրահանգս և յարտա-
քին գիտութիս : Իսկ ալոզիոս առաւել 'ի
հոգևորս եղև յառաջադէմ՝ աղօթասէր և
ընթերցասէր գոլով նոր գրոց և վարուց սրբց.
և 'ի տիս անգ դեռափթիթ մանկութե ուխ-
տեաց առանձինն առաջի պատկերի աւետ-
ման կուսին մշտնջենաւոր ողջախոհութի.
զոր և պահեաց ամ ամբծութե և կատա-
րեալ պահպանութե զգայարանաց, մինչև
յերեսս մօր իւրոյ իսկ չհայէր համարձակ.
նոյ և 'ի մատրիտ սպանիոյ յապարանս կա-
լով զամս երկու՝ ոչ ակնարկեաց երբեք 'ի
դէմս թագուհւոյն. միանգամայն և ձնշէր
զմարմին իւր 'ի ծածուկ ինքնատանջ հար-
ուածովք և պէսպէս խոշք. պահէր երիցս
'ի շաբաթու՝ հացիւ և ջրով շատացեալ, սի-
րէր կուսութի և զառանձնութի, և տքնէր
'ի

'ի գիշերային աղօթս զօդուտ ժամս : Սկրա-
տեալ 'ի հօրէն վարել որպէս զայլս 'ի համա-
կակցաց 'ի վայելս ծի ը̄ աստիճանի պատ-
ուոյ իւրոյ՝ յայտնեաց նմ պատանին զկամս
իւր , թէ կամի կրօնաւորիլ ըստ առանձին
ազդեցութենն Այ . Ըդէմ եկաց հայրն բազ-
մօք , զի նա էր անդրանիկ իւր , և յոյս մեծ
ունէր յառաջադիմութե նր յծի . բայց ոչ
կարաց խափանել զնա 'ի բարի խորհրդոյ ,
թէպէտև զերկեամ մի աշխատ եղև . միջ-
նորդ էր և մայրն կատարելոյ զմծահանձոյ
կամս որդւոյ զաւակին իւրոյ : Նա այնուհետև եմուտ
ալօզիոս 'ի կարգն յիսուանց 'ի հռոմ յամի
1585 . ժը̄ ամաց : և կատարեաց 'ի սակաւուն
ժամանակս երկայնս՝ եղև հայելի անա-
րատ ամ առաքինութեց , հեզ , խոնարհ ,
հնազանդ , ուրացեալ զանձն և մեռեալ ծի ,
և կատարեալ յամ կանոնապահութիւն , և
աղօթից մտօքն առաւելեալ . զի սա է ա-
ւեր համառօտ ճանապարհ կատարելութե՝
աղօթասէր լինել : Նա զի արդելոյին զնա
յառաջելութէ արտաքին ձգնութեց՝ վասն
փափկին և տկար մարմնոյն , նա եա զանձն
ես քան զևս 'ի ներքին մեռելութիւն , և 'ի
կարդացմունս և 'ի կրթութիւն հոգևորս և
'ի մտաւոր տեսութիւն . եառ պշնորհս աղօ-
թից և արտասուաց ը̄ նախնի հարանց , և
վառեալ սիրովն Այ՝ եղև ոչ անմարմին 'ի
մարմնի , և եհաս 'ի ներքին միաւորութիւն
ը̄ Այ . մինչ զի 'ի լսելն բան զԱյ՝ լինէր ոչ

արտաքոյ ինքեան. և 'ի միում նուագի 'ի սեղանատան լուեալ զընթերցուած զմի-րոյն նոյ՝ այնպէս բորբոքեցաւ սիրտ նր, մինչ-չև մոռացեալ զճաշելն՝ զեղաւ յաղբիւրս արտասուաց. բայց մեծաւորք չափաւորէին զհանապազորդեան արտասուս նր, զի մի վնասեսցին աչքն: Ըստ ածսիրութեն՝ և յեղբայրսիրութե էր կատարեալ, և սակաւ հրաման առեալ՝ երթայր 'ի հիւանդանոցն, և ծառայէր յամ խոնարհ գործս՝ ոչ նմին իսկ քնի սպասաւորելով. և պատիւ համա-րէր անձին 'ի վիճս՝ ծառայակից լինել հի-ւանդապահին: Եռայր հոգւովն երթալ քարոզել՝ եթէ հնար ինչ իցէ՝ ը ամ աշխ զնր հաւատս և զսէրն քնի. այլ Տր կոչեաց զնա փութով առ ինքն զկենդանախարուկեալն հրով սիրոյ իւրոյ: Քանզի 'ի լինել հիւան-դութե 'ի Հռովմ իբր ժանտախտի՝ ծառայե-լով հիւանդաց սիրով՝ անկաւ և ինքն 'ի մահիճ. և յայնմանէ վերծեալ՝ կրեաց զայլ խօթութի հիւծիչ զամիս երիս. և լի զը-ւարթութբ պատրաստէր զանձն 'ի մահ. և ասէր որոց գային՝ 'ի տես նր, երթիցուք առ Տր ուրախութբ. մարգարէացաւ և զօր փոխման իւրոյ. և այնպէս գետնախշտի տա-րածեալ, և վերակնեալ 'ի պատկեր խաչե-լեալ փրկչին՝ քաղցրութբ աւանդեաց զմա-քուր հոգին 'ի մէջ գիշերի՝ որում լուսա-նայր 21 յունիսի, յամի 1591. 'ի հասակի իգ ամաց և իբրև երից ամսոց: Եւ յայտ-նէ

լուպեկիոս և Սեւերինոս որդիք վիտաղիոսի եղեն 'ի հալածանս լիկինիանոսի. զորս դարձոյց 'ի քս և մկրտեաց Ախսենտիոս ոմն. և նորօք համա-գերձ մնացեալ 'ի ձեռս դատաւորի, ը ոգիս և Աւրաղմոս, և այլ ևս ժը, կմ ձծ անձինք՝ պսակեցան 'ի հռոմ։ Ըննեաց զնա դիո-մեդես դատաւոր 'ի պատիողոս, և ետ դնել քար ծանր 'ի վր սրտին ոնեսիմեայ, մինչև ատանեցաւ նա զօգին. և զերապոմոս այ-լովքն համդերձ ետ գլխատել. իսկ զերե-սին եղբարս յղեաց 'ի սիկիլիա. ուր կատա-րեցան հրով և քարկոծմամբ։ ⁀. ապր. 20, կմ 21. և սեպտ. 28։ {}. |. մայ. 10։

Ակակիոս ամասիացի՝ մանուկ, և մեծն Ակակիոս կապադովկացի՝ որ և բուզանդացի ասի, վկայք տօնելիք. հատ. Գ. 100. և 103։

Ակակիոս խոստովանող եպս արևելեան՝ կմ ամդայ 'ի միջագետս առ գեկոսիւ, յիշատա-կեալ 'ի ⁀. ապր. 11. կմ ըը տր ինէլի. մարտ. 22։ {}. մարտ. 29։ |. ապր. 9։

Ակեփսիմաս եպս տօնելի. հտ. Ա. 175։

Ակիւլինէ վկայուհի տօնելի ը Պրիստոփո-րի. հտ. Գ. 906։

Ակիւլինէ կմ ակուիլինա կոյս մատաղ 'ի բիբղոպոլսոյ փիւնիկեցւոց կամ պաղեստի-նացւոց, առ դիոկղետիանոսիւ կմ տրայիա-նոսիւ, դուստր եւտողմիոսի ազնուականի՝ մկրտի հինգամեայ յեւտաղիոսէ եպիսկոպո-սէ. և յետ տասնամեայ հասակի առեալ յոյժ շնորհս՝ դարձուցանէր 'ի քս զհասակակից աղջ-

աղջկունս ։ Այդ մատնեաց զնա Նիկանդրոս կմ Նիկողիմոս անն յատեան՝ վաղերիանոսի բդեշխի. և նա ետ ապտակել և գանել զկոյսն, և հրացեալ շամփուրս մխել յականջս նր, մինչ զի հոսեր ուղեղն արիւնախառն ի ունգունս և ի լսելիս ։ Այլ յաղօթել նր 'ի բանտին՝ բժշկեաց զնա հրեշտակ այ. և ապա սրով կատարեցաւ, կմ ի ոմանց 'ի ժամ գլխատմանն առանդեաց վաղագոյն զհոգին ։ Հ. յունիս, 13, կմ 14, կմ 16 ։ Ձ.

Լ. յունիս. 13 ։

Ա. կիւղաս տօնելի է Սադերիոսի. հտ. Ա. 631 ։

Ա. հարօն քահանայ՝ տօնելի է Աախահարս. հտ. Գ. 253 ։

Ա. ղեքսանդրոս հայրապետ տօնելի է Մետրոփանոսի. հտ. Ա. 239 ։

Ա. ղեքսանդրոս Թեսաղոնիկեցի առ Մաքսիմիանոսիւ, այր ջերմ յաստուածպաշտութե՝ կործանեալ զսեղան զոհից կռոց, և յանդիմանեալ զհեթանոսութի յատենի թգաւորին՝ ածի 'ի գլխատումն. և զօսանայ ձեռն զահճին ։ Այլ յաղօթել մկային, և 'ի լռմանել զձեռս՝ ասելով, ով ով ով Տր զօրութեց, այլ անն 'ի դահճաց կարօղ լինի հատանել զգլգլուխ սբյն ։ Իսկ Թագին տեսեալ, զի չորս հրեշտակք 'ի հանդերձս լուսաւորս տանեին զհոգի մկային յերկինս, զարհի հարաւ, և թոյլ ետ քրիստոնէից փութով թաղել զմարմին նր 'ի Թեսաղոնիկէ, և զածոյց զհալածումն,

ծունն : ^. փետր. 18: { }. | . նոյ. 9 :

Ա.ղեքսանդրոս Հռովմայեցի զօրական առ Մաքսիմիանոսիւ 'ի գնդէ Նումերիանոսի կոմսի՝ վասն ոչ յանձն առնլոյ զոհել ը̄ բանակին, յետ բազում տանջանաց և նշանաց, և վաթելոյ 'ի բիւզանդիա և 'ի բերիա՝ կատարի սրով 'ի դրիզիպար Թրակիոյ : ^. ապր. 27. կամ 28. կամ 30: { }. մայ. 13: | . մրտ. 27:

Ա.ղեքսանդր պատրիւղացի՝ նոյնպէս առ Մաքսիմիանոսիւ չարչարեալ բազմօք վն 'ի քն հաւատոց, և վարեալ 'ի կաղքեդոն և 'ի Մարկիանուպօլիս, գլխատի 'ի Թրակիա : ^. փետր. 19, կամ 20: { }. փետր. 25 :

Ա.ղիպիոս սիւնակեացն յադրիանուպօլսոյ պափլագոնիոյ՝ յաւուրս Հերակլի կայսեր, 'ի մանկութենէ սնեալ 'ի սբ վարս, և սարկաւագ ձեռնադրեալ՝ եղև կենի միայնակեաց. և զաւեալ սիւն մի բարձր՝ յորում կայր բագին կռոց 'ի բացի, կործանեաց, և ինքն եկաց 'ի վերայ սեանն զամս բազումս բացօթեայ՝ զցայգ և զցերեկ, արևակէզ և ցրտահար, փայլեալ սքանչելեօք. և կոչկոճեալ քարամբք 'ի մախացող դիւէն՝ կրեաց զցաւ կողից զամս ժ̃գ. և հասեալ 'ի խոր ծերութի փոխեցաւ առ ա̃ծ՝ ճ̃ը ամաց : ^. նոյ. 22 : ո̃ր ինքն. և { }. նոյ. 26 :

Ա.մբակում մի յերկոտասան մարգարէից՝ տօնելի. հա. Պ. 313 :

Ա.մբրոսիոս այր սքանչելի՝ մի 'ի չորից վ̃պաց արևմտեան եկեղեցւոյ, որ ջահ լուսափայ-

լեաց

լեալ յեկեղեցի (ըստ ամենայն յայսմաւուրաց
Հայոց), նախանձաւոր գոլով ուղղափառ
հաւատոյ, և տապալիչ հերձուածողաց.
Սա յառաջագոյն էր ՚ի դասս սինկղիտոսաց
հռովմայ յաւուրս որդւոց մեծին կոստան-
դիանոսի, ընդ հանճարով, և ներհուն ածայինն
և արտաքին գիտութեանց. և եղեալ հոգա-
բարձու քաղաքայ և գաւառաց արդարակա-
րով տնտեսութբ՝ խաղաղացոյց և զխռովու-
թիս արիանոսաց ՚ի միջոցէ, որ և Մեդիո-
լանն կմ Միլանն քաղաք իտալիոյ. և վն առա-
քինութե իւրոյ ընտրեցաւ եպս այնր քաղաքի
հաւանութբ յովլիանոսի կայսեր. և մաքրեաց
զկողմանսն զայնոսիկ յաղանդոյն արիոսի, և
պարզարեաց ամ բարեկարգութբ յաւուրս
մեծին թէոդոսի: Սրուամ և պղծէմ կալաւ ա-
ռաքար, և ոչ թողացոյց զինքնակալն մտա-
նել յեկեղեցի ՚ի տօնի ծննդեանն քսի՝ վն
անպարտ արեանց հեղլոց հրամանաւ նորա.
մինչև յետ արժանաւոր ապաշխարութե ըն-
կալաւ զնա. և յետ վախճանի թէոդոսի՝
պատուեաց զնա ներբողական ճառիւք. որք
ասացաք ՚ի վարս նր: Գրեաց և այլ բազում
ճառս և մեկնութիւս և գիրս և թուղթս՝
ճարտար և խորին իմաստիւք և լուսաւոր
վայելչութբ, և եթող յետ իւր յիշատակ յաւ-
իտենական. և ՚ի բարւոք ծերութե հան-
գեաւ ՚ի քս: Սա և թղթակցուե սրբոյ ընդ-
սա և ը բարսեղ կեսարացի. սա ինքն ամբ-
րոսիոս ճանաչի և հայր հոգևոր մեծին օգոս-

տի

և գործովք ամենայնի 'ի ճգնողական վարս, և 'ի յաղթահարել զհերձուածողս ամենայն վարդապետութբ̃: Սա մնացեալ երբեմն առ մեծն Թէոդոս՝ ոչ ետ կամաւ զարժանի պատիւ գահակցի նր̃ արկադեայ արքայորդւոյ. և 'ի դժուարիլ նր̃ այն կայսեր՝ ասէ ամփիլոքիոս. տեսանե՞ս արքայ, զի դու ոչ տանիս զանարգանս որդւոյ քո. և զիա՞րդ հայրն երկնաւոր տանիցի զարհամարհանս միածնին իւրոյ յերեսաց քստամբոտ հերետիկոսաց ժամանակիս: Յայնժամ Թգ̃րն զարմացեալ ընդ իմաստութի սր̃յ եպսին՝ արգել ձեռնագրով իւրով զհամարձակութի արիանոսաց, եւնոմեանց, սաբելեանց, մակեդոնեանց, և ապողինարիտաց: Արար և այլ բազում ինչ ամփիլոքիոս գրով և բանիւ յօգուտ եկեղեցւոյ: Ն. հոկտ. 26: Տ̃ր ինէլ և Յ. հոկտ. 19: Ն. նոյ. 23:

Ափերէոս կմ̃ անփիրիոս. տես Ապփիանոս:

Այթալաս սարկաւագ տօնելի. հտ. Բ. 175:

Այթալաս քուրմ կռոց 'ի պարսս յաւուրս շապհոյ՝ գտեալ զբժշկութի յանբուժելի ախտից անուամբն քի՝ մկրտեցաւ, և սկսաւ քարոզ լինել ճշմարտութե: Կալաւ զնա իշխան քղ̃քին, և հրամայեաց միում 'ի քրիստոնէից հատանել զունկն այթալայ. և նա առ ահի կատարեաց զհրամանն. բայց նոյն ժամայն գօսացաւ ձեռն նր̃: Նոյն աւուրս ըմբռնեցաւ և Տաֆտոն կմ̃ ափսէ սարկաւագ. և յետ զանից մատնեցաւ ընդ այթալայ 'ի

Ձեռս մոգպետին · և նա խոշտանգեաց զնա բանտիւ և կապանօք · և ոչ ինչ օգտեալ՝ եհան յատեան արքայի · և իբրև հաստատուն գտան 'ի քն՝ որով կատարեցան : Ն · դեկտ. 16. կմ 22 : Տր իէլ. և Յ. դեկտ. 11 :

Անանիա առաքեալ՝ տօնելի · հռ. Ա. 51 :

Անանիա պարսիկ՝ այր Ցիկ, քրիստոնեայ հաւատով, վն յանդիմանելոյ զմոլորութիւն պարսից հրապարակաւ յարտաքոյ քաղաքի, ձգեն 'ի քղ̄քայլուց՝ չարաչար հալուածովք քարշեցաւ արտաքս իբրև զմեռեալ · և յետ պահու բացեալ զաչերան իւր՝ ասէ ցորս անդն կային · արիք կացէք յաղօթս, զի տեսանեմ սանդուղս յերկրէ մինչև յերկինս, և արս հրեղէնս՝ զի ելանեն 'ի վեր, և ասեն ցիս · եկ ը̄ մեզ, և հանցուք զքեզ 'ի քաղաքն լի լուսով և ցնծութ̄բ · և զայս ասացեալ՝ աւանդեաց զհոգի իւր ուրախութ̄բ : Ն · Յ · Ա. դեկտ. 1 :

Անանիա քահանայ՝ 'ի հալածմանս դիոկղետիանոսի չարչարեալ ը̄ անուանն քի 'ի մաքսիմոսէ դատաւորէ, յետ զանից արկաւ առաջի գազանաց · այլ նք̄ ոչ մերձեցան 'ի նա : Ապա դահճիձքն շամփուրս հրացեալ խաղացուցին 'ի վ̄ր պորտոյ ոտիցն · և քացախով և աղիւ և խորգով շփեալ՝ արկին 'ի բանտ · ուր եկաց անսուաղ զեօթնեակ մի : Յայնժամ հաւատաց բանտապանն, և մկրտեալ կոչեցաւ Պետրոս : Եկն այլ դատաւոր մաքսիմիանոս անուն · որ ետ կապել զանանիա

և զպետրոս յանիծս, և փորձեաց զնոսա հրով. և յանձնեաս պահել նց՝ հաւատացին զահիճքն եօթանեքին. և այնպէս լինն վկայք միանգամայն արկան 'ի ծով: Տ. յունվար. 30. կմ 31: Յ. յունիս. 27:

Ստեփաննոս աբեղայ տօնելի. հա. Ս. 5:

Ստեփանուհի կոյս հռովմայեցի՝ կրօնաւորեալ 'ի վանս կուսանաց, որպէս գլխաւոր 'ի նոն՝ մատնեցաւ անուր' 'ի պարանոյի 'ի ձեռս պղոքոսի դատաւորի առ դեկոսիւ և վաղերիանոսիւ. և մը դաւանելոյ զքն աներկիւղ՝ ապտակս հանին նմա. և տարածեալ 'ի վն հրոյ՝ հեղլին զնովաւ ձիւթ և ձէթ եռացեալ. ապա քերեցին զմարմինն. հատին զստինս. 'ի քայց կորզեցին զեղնգունս, կտրեցին ըզձեռս և զոտս, և ջարդեցին զատամունսն. և յետ ամի հատին զգլուխ փառաւոր կուսին: Մինչդեռ 'ի տանջանս էր սրբուհին՝ 'ի խնդրել նորա զջուր, մատոյց նմա զայն ումն 'ի մերձակայից Սեւերեղ անուն. վոյ և զկիւրեղ գլխատեցին, որ եղև անզուգական վարձ տալոյ զջուր բաժակաւ յանուն քի: Տ. հոկտ. 19, կմ 29: Յ. հոկ. 12. Լ. հոկ. 28:

Ստեփանուհի կին հռովմայեցի՝ դուստր հօր հեթանոսի առ դիոկղետիանոսիւ, և մօր քրիստոնէի, ուսեալ առ ոտս խրիսոգոնոսի վկային՝ մկրտեցաւ. բայց հայր նորա ետ զնա 'ի կնութիւն պոպղիոսի առն կռապաշտի. որ և սկսաւ խոշտանգել զաղախինն քի՝ առ-

կա

կամնելով 'ի բանտ, զի դարձցի 'ի հաւատոց. այլ նա կայր հաստատուն 'ի նր: Եւ եղև պոպղիոսի ընկղմիլ 'ի ծով, յորժամ երթայր դեսպանութբ 'ի պարսս. յայնժամ ազատացեալ սրբուհին անաստասիա' շրջէր 'ի ձև աղքատի նաժշտաւ միով, և մտեալ 'ի բանտս' դարմանէր զնահատակս, և բաշխէր զինչս իւր կարօտելոց: Այն մատնեցաւ 'ի ձեռս դատաւորաց, և վարեցաւ բազում չարչարանօք 'ի սահմանս բիւզանդիոյ. և ազատութիւն գտեալ' հանդիպեցաւ սրբուհւոյն թէոդոտեայ, որ էր 'ի կալանս երեք որդւովք իւրովք, և քաջալերեաց զնա. և լուեալ զնահատակութիւն նց և զայլ ևս բազմութեան լայր դառնապէս: զոր իմացեալ հեթանոսաց' մատնեցին փլորոսի եպարքոսին իլլուրիկեցւոց. և նա ետ զնա 'ի ձեռս ուլպիանոսի քրմապետի' առնել զնա իւր կին: Իսկ անաստասիա մերժեաց զհրապոյրս ուլպիանոսի. և 'ի կամիլ նր մերձենալ 'ի նա' կուրացաւ. վնյ արկին զսրբուհին 'ի բանտ. և ապա ընկեցին 'ի ծով. յորմէ զերծաւ կենդանի 'ի կղզին պալմարիոյ. ուր 'ի նահատակիլ բազմութեան իբր երկերիւր արանց և եթանասուն կանանց' կապեցին և զանաստասիա 'ի չորս ցիցս, և այրեցին հրով. զորոյ զնշխարս առեալ թաղեաց 'ի պալատիզի իւրում ապողոնիա կին հաւատացեալ, և յետ հալածմանց շինեաց 'ի վր նր վկայարան: Եւ եղև անաստասիա մին 'ի նշանաւոր և 'ի

նշանագործ վկայուհեաց։ Հ. դեկտ. 21։
Տն եէը. և Յ. 22։ Ա. 25։

Անատոլա ընդ Ադրիանոսի՝ տօնելի. Հատ.
Ա. 167։

Անգէ մի 'ի ժբ մարգարէից՝ տօնելի. Հատ.
Գ. 315։

Անդրէաս առաքեալ՝ տօնելի. Հատ. Ա. 168։

Անդրէաս զօրավար և բանակ նր տօնելի. Հատ.
Ա. 121։

Անդրէաս կրօնաւոր կրետացի՝ մի յերևելի արանց յութերորդ դարու, եկեալ 'ի կոստանդինուպօլիս յաւուրս կոպրոնիմոսի կայսեր՝ պաշտպան եկաց պատուոյ սբ պատկերաց և նշխարաց սրբց ըդէմ պատկերամարտից. վսյ ետ թգւրն հարկանել զնա արջառաջլօք. և յետ ջարդելոյ քարամբք զբերան նր և զատամունսն՝ կապեցին չուան յոտս նր, և քարշեցին ընդ մէջ քաղաքին. ապա ոմն ձկնավաճառ եհատ կացնով զաջոյ ոտն սբյն, և այնպէս աւանդեաց զոգին. և 'ի լինել սքանչելեաց՝ թաղեցին զնա պատուով 'ի տեղի մի որ՝ կրիսիս կոչեցեալ։ Հ.
հոկտ. 18։ Յ. ժմ. և Ա. հոկտ. 17։

Անդրէաս կանոնաւոր կղերիկոս յարևմուտս՝ մականուն աւելլինոս, 'ի նոր աւանէ լուկանիոյ, երբեմն փաստաբան եկեղեցական ատենի 'ի նէապօլիս՝ թէև ինչ սուտ խօսեցաւ, և ապա զգաստացեալ բանիւ գրոց, եթէ բերան ստախօս սպանանէ զանձն, ետ զանձն 'ի խիստ վարս ճգնութե սրբակրօն

կար-

կարգօք, և եղև առաջնորդ բազմաց 'ի կանոնաւոր կուսեցեալ երիցանց, և քարոզ բանին ա՟յ, և շահեցող հոգւոց բազմաց: 'Ի միում՝ նուագի յընթանալ գիշերայն 'ի ծառայութ՟ հոգւոց՝ տեղաց անձրև յորդ. բայց ոչ եթաց ընաւին զնա և զուղեկիցս նորա. միանգամայն և լոյս ցոլացեալ յանձնէ նր՟ ցուցանէր զճանապարհն: Իւր ջերմ պաշտօնասէր ս՟բյ կուսին. և եղև արժանի խօսակից լինել ը՟ հրեշտակս, և լսել զհոգեղէն հնչմունս ա՟ծային փառաբանութե՟ նց՟. ստացաւ և զշնորհս մարգարէութե՟ և հոգետեսութե՟: 'Ի ծերութե՟ իւրում յաւուր միում մինչդեռ կամէր մատուցանել զն՟ք պատարագ, երիցս կրկնեաց 'ի մուտս անդ զբան սաղմոսին, Մտից առաջի սեղանոյ ա՟յ, և ոչ ևս յաւել բարբառել. զի ըմբռնեալ 'ի կաթուածոյ՝ անկաւ 'ի մահիճս, և փոխեցաւ առ Տ՟ր. որ և կայ թաղեալ փառօք 'ի տաճար ս՟բյն պօղոսի 'ի Նէապօլիս, փայլէ՟լ սքանչելեօք. որում և մեք արժանի եղաք այց առնել 'ի մօտոյ, ոչինչ հեռի յեկեղեցւոյ վանաց ս՟բ լուսաւորչին մերոյ: Նոյեմբ. 10:

Անդրոնիկոս՝ տօնելի ընդ Տարագոսի. հատ. Ն. 271:

Անդրոնիկոս անտիոքացի ոսկերիչ, և ամուսին նր՟ Աթանասիա 'ի վեցերորդ դարու, անձինք երկիւղածք յա՟յ, աղքատասէրք և աղօթասէրք, յետ վախճանելոյ երկուց զա-

ւակաց իւրեանց 'ի միում աւուր 'ի տարւոջ.
ժամ հասանէր՝ միաբան կամօք բաշխեցին
զա̃մ ինչս իւրեանց աղքատաց, և շրջեալ
յուխտս եկին՝ անցին յաղէքսանդրիա. և
գտեալ 'ի սկիտէ զհայրն դանիէլ՝ ուսան 'ի
նմանէ զճանապարհ կատարելութե̃: Ան-
դրոնիկոս կրօնաւորեցաւ առ ոտս հօրն դա-
նիէլի, և աթանասիա առանձնացաւ ը̃ կու-
սանս կանանց: Յետ ձգնելոյ զամս երկո-
տասան սքանչելի առաքինութե̃՝ հանդիպե-
ցան միմեանց 'ի գնալն միասանգամ յեմ̃.
և լռութ̃ գնացին և դարձան. զի թէպէտ-
և աթանասիա ծանեաւ զանդրոնիկէ, այլ
սա ոչ ծանեաւ զնա. քանզի զգեցեալ էր
առնայի ձևով. և ապա հաճութ̃ հօրն դա-
նիէլի բնակեցան յութուտասնեկի վանս.
ուր այց առնէր նոցա աբբայն դանիէլ. և 'ի
փոխիլ նց̃ երջանիկ մահուամբ մի զկնի միւ-
սոյն՝ թաղեաց զնս̃ ծերն հանդերձ բազմու-
թե̃ սկիտացւոց. սմ̃ լիով գրի 'ի վարս հա-
րանց: Ա. փետր. 7. կմ̃ ըստ ոմ̃ր իէլի. յուն-
վար. 24: Յ. մարտ. 2: Լ. հոկտ. 9:

Անդրէաս հայրապետ տօնելի. հտ. Օ. 137:

Անդրէաս՝ վկայ հաւատարիմ կոչեցեալ 'ի
յայտնութեն յովհաննու, էր մի յառաջին
աշակերտելոց՝ ձեռնադրեալ յառաքելոց
եպս̃ պերգամայ յասիա. որ աղօթիւք հա-
լածէր զչարս, և անգործ առնէր զխաբէու-
թիւս նց̃ 'ի բագինս. վս̃յ ասեն դևքն ցիշ-
խանն հեթանոսաց, ոչ կարեմք կալ 'ի տե-

ղիս

դիս յայս , և ոչ կամիմք զզոհս ձեր . զի ան-
Թիպաս գլխաւորն քրիստոնէից բամբասայ 'ի
վՐ մեր : Ապա կալեալ դատաւոր քաղաքին
զսբ եպսն . և ոչ կարացեալ տալ նմա զոհել
կռոց՝ եարկ 'ի պղնձի յուլ ջեռուցեալ և
շողացեալ . և այնպէս կատարեցաւ երանե-
լին , և թաղեցաւ անդ 'ի Պերգամոն : ÷ .
տպր . 10 : Ա . Լ . 11 :

Անիկիտոս և Փոտինոս տօնելիք . Հտ . Գ . 373 :
Աննա մայր տիրամօր՝ տօնելի . Հտ . Ա . 5 :
Աննա մայր կիւրղի՝ տօնելի . Հտ . Բ . 429 :
Անոյշ , որ և սբուհին Անտոնիա , Թեսաղո-
նիկեցի առ Մաքսիմիանոսիւ , որբ մնացեալ
'ի բարեպաշտ ծնողաց՝ կեայր առաքինի վա-
րուք . յերթալն իւր ըստ սովորութեան յեկեղեցի՝
ել ը̅դ առաջ նորա զօրական հեթանոս , և
ստիպէր 'ի մեհեանն երթալ 'ի զոհ կռոց :
Նա ընդդէմ դառնալ սրբուհւոյն և 'ի թշնա-
մանել զդիս՝ խոցեաց զնա այրն սրով , կամ
գեղարդեամբ ը̅դ կողս և ը̅դ սիրտն . և նորա
անկեալ յերկիր և թաւալեալ յարեան՝
աղօթելով աւանդեաց գոհութը̅ զհոգին :
Ի նոյն աւուրս նահատակեցաւ և եպս Թե-
սաղոնիկեայ Անտոնիոս : ÷ . տպր . 16 : Տէ-
րէն . տպր . 20 : Ա . Լ . ղեկտ . 30 :

Անսելմոս երևելին յարեւմտեան վիճակս մե-
ծին դարուց՝ էր յօգոստայ քաղաքէն , փոյթ
'ի մանկութէ յաստուածպաշտութի̅ , մինչև դնել
'ի միտս կրօնաւորիլ . այլ յոչ թողուլ զնա
ծնողացն՝ հիւանդացաւ առ ցաւոյ սրտին .

իսկ իբրև առողջացաւ՝ անփոյթ եղև զի-
րացն. և յետ մեռանելոյ երմենբերգայ
բարեպաշտ մօրն՝ իսպառ հոլովեցաւ՝ սկսաւ
ընկղմիլ 'ի սէր Յի։ 'Ի խրատել և 'ի յան-
դիմանել զնա հօրն՝ նախ գժդմնեցաւ. և
ապա զզաստացեալ՝ շրջեցաւ աստ և անդ
ամս երիս. մինչև եկեալ 'ի Նորմանդիա՝
եմուտ յաբբայարանն բեկկայ. և աշակերտ-
եցաւ առ ոտս լանփրանկոսի առն սբյ։
Յորմէ կրթեալ 'ի գիտութիւնս, և առաւել
'ի վարս բարիս՝ զգեցաւ զսքեմն կրօնաւո-
րութե̄ բենեդիկտեանց՝ յամի տն̄ 1060. իէ̄
ամաց, 'ի ձեռաց երղուինոսի աբբայի հիմ-
նադրի տեղւոյն։ Եւ 'ի սուղ ժամանակի
այնչափ յառաջադէմ եղև, մինչև 'ի պա-
կասիլ վերակացուի՝ զանսելմոս ընտրեցին.
Է̄ որ խեռայլին ոմանք, այլ նա քաղցրուե̄
և խոնարհուե̄ շահեցաւ զամենեսին. Հա-
նապազորդեան խստակրօնութե̄ նր̄ և պա-
հեցողութե̄, համեստութիւն և նախանձա-
ւորութի բարեկարգուե̄ ածեցոյց զեռանդն
'ի վանականս. մինչև առնել նմա յայնմ
աբբայարանի զմեծ դպրոց սբ̄ց միանձանց.
յորոց և ընտրեցաւ աբբայ զկնի վախճանե-
լոյ երղուինոսի՝ յամի 1078։ Այլ նա յա-
ւել 'ի խոնարհութի. մինչև ոչ̄ զմի յեղ-
բարց կատարել զտմ̄ ցածուն պաշտօն վա-
նաց։ Դէպ եղև նմա վն̄ գործոյ իմիք ան-
ցանել յանգղիա. ուր արքայն գուլիելմոս
Բ՝ կարմիրն կոչեցեալ՝ իբրև ետես զհան-

դէս

դէս սրբութեան և իմաստութեան անսելմոսի , ընտրեաց զնա յարքեպիսկոպոսութիւն կանտուարիոյ կամ կանտորբերայ . յորմէ բազմօք հրաժարելովն , և յանհնարս մտեալ՝ յանձն էառ բեռն արտասուօք յամի 1094 . և իբրև քաջ հովիւ խնամ կալաւ հօտի իւրում յամի ։ Այլ ՚ի դաւս գործել նորա վասն խաղաղութեան յերկպառակութեան անդ աթոռոյն հռովմայ , և ՚ի յորդորել զամենեսին ընդունել իբրև հարազատ քահանայապետ զուրբանոս բ̃ , թշնամացաւ ընդ նմա թագաւորն , և ստրջացաւ ընդ ընտրել իւր զնա յեպիսկոպոսութիւն . Քանզի ոչ ներէր նմա անսելմոս սեպհականել զինչս եկեղեցւոյ ։ Իսկ աւագանին կուսակից լեալ արքային՝ եղեն ՚ի կողմն դերապապին գուի-բերտոսի . և զի անսելմոս ընդդէմ եկաց այսմ , կողոպտեցաւ յամենայն հասից եկեղեցւոյ , և կրեաց բազում՝ հալածանս անպարտելի համբերութեամբ ։ ՚Ի հաշտիլ արքային ընդ ուրբանոսի պապին՝ տակաւին ոչ ուղղեցաւ սիրտ նորա ընդ անսելմոսի . զի նա էր յանդիմանիչ իւր վասն յափշտակութեան ընչից եկեղեցւոյ , վասնորոյ և յորդորեաց զպապն՝ ընկենուլ զանսելմոս յաթոռոյ եպիսկոպոսութեան ։ և ոչ գտեալ զհաւանութիւն՝ ինքնին տարագրեաց զերանելին յաթոռոյ . և նա դէմ եդեալ գնաց ՚ի հռովմ . ուր պատուեցաւ յոյժ ՚ի հայրապետէն ։ Գնաց զկնի անսելմոս և ՚ի ժողովն բարիոյ ( կամ պեւկետիոյ յերկրին նէապօլսոյ ) յամի 1098 . ուր քաջ հանդի-

սա-

ստացոյց զմեծաբան վարդապետութի իւր զօրագոյն բանիւք ՝ի ցուցանել ընդդէմ յունաց զելումն հոգւոյն սրբոյ և յորդւոյ. նոյնպէս փայլեցոյց զմեծիմաստ գիտութի իւր և զպերճախօսութիւն ՝ի մէջ ևս ժողովոյն որ եղև ՝ի Հռոմ: Իսկ մեռաւ գուլիելմոս արքայ անգղիացւոց յամի 1100, յաջորդ նր արրիկոս Ա՛ կոչեաց անդրէն զանսելմոս յաթոռ եպսութե իւրոյ ՝ի կանտուրպերիա: Այլ ՝ի ծագել նորոյ հակառակութե ը թգւրն և ընդ եպսն մն խիլայից, (իմա՛ զգեստու և գաւազանի և այլ ևս նշանակաց պատուո՛յ զորս թգւրք կամէին անձամբ տալ եպսաց և աբբայից,) հարկ եղև անսելմոսի միւսանգամ դարձ առնել ՝ի Հռոմ: Այլ ապա կանց ՝ի լուգդոն քաղաք գաղղիոյ իբրև ՝ի տեղի ապաստանհմանութե. ուր և եկաց առ ժամանակ մի, մինչև ըն թախանձելոյ համարէն տրութեն անգղիացւոց՝ որք ոչ կենդանի ոք ճանաչէին զանսելմոս, դարձոյց արքայ պատուով զնա յաթոռ իւր, և լսէր նմա քաղցրութբ: Յայնմհետէ պարապել ոչյն առաւել հանդարտութբ ՝ի շարագրութիւս՝ յօրինեաց բազմապատիկ գործս ՝ի պայծառութի եկեղեցւոյ. և յետ երից ամաց խօթացեալ՝ ետ տարածանել զինքն ՝ի վր մոխրոյ, և արկաւ զիւրև քուրձ խաջոր. և այնպէս փոխեցաւ առ տր յամի 1109. ՝ի 21. ապրիլի, հէ ամաց. և փայլեաց սքանչելեօք ՝ի կեանս և յետ մահու: Ա.

ապ-

ապրիլ . 21 :

Անտիոքոս բժիշկ սեբաստացի յաւուրս հա-
լածմանց (դիոկղետիանոսի) բժշկէր զբազմ
հիւանդս անուամբն քի , և փոխանակ վար-
ձու դարձուցանէր զնս 'ի քր : Այս հալա
զնա ադրիանոս դատաւոր , և յետ բազում
չարչարանաց՝ էարկ 'ի կաթսայ եռացեալ .
յորմէ պահեցաւ կենդանի . Նոյնպէս և առ-
աջի գազանաց արկեալ՝ ոչինչ վնասեցաւ :
Ապա 'ի կործանել սորին աղօթիւք զբագինս
կռոց՝ հատին զգլուխ նր . և 'ի բղխել կա-
թին ընդ արեան՝ հաւատաց Կիւրակոս դա-
հիճն . և նզովեաց զկուռս . որ վն և նա
ևս կատարեցաւ սրով : ※ . օգոստ . 38 . կմ
24 ըդ որ իէլ : Յ . Յ . յունիս . 15 :
Անտոն աբբայ՝ տօնելի . հա . Ա . 57 :
Անտոն և Սրօնիդէս՝ տօնելիք . հա . Ի . 33 :
Անտոն պատուածացի՝ Նշանաւոր այրն այս՝ էր
ծննդեամբ յերկրէն լուսիտանիոյ ի փոր-
թուգալայ՝ 'ի լիսբոնայ քաղաքէ , որդի մար-
տինոսի և մարեմայ . և առաջին անուն նր
փերնանդոս . որ եղև մանուկ փոյթ յա-
ղօթս և յանձպաշտութն , սակայ կանխելով
'ի մօտակայ եկեղեցի սբ. ածածնի՝ ուր կայր
մարմինն սբ. վկային վինչենցիոսի վալենցայ-
ւոյ : Խորշէր 'ի տղայական զբօսանաց , և
յերիտասարդական ցանկութեց . և էր ու-
սումնասէր յոյժ , մինչև ներհուն լինել ամ
գիտութեց՝ առաւել սբ. գրոց : Ապա յազգ-
մանէ նոն հրաժարեալ յնէ՝ եմուտ 'ի վանս
կա

կանոնիկոս աբեղայից կարգի սրբոյն Օգոս-
տինոսի , որ կայր արտաքոյ քաղաքին . ուր
ղամն երկու փայլեաց սքանչելի վարուք ։
Այլ տեսեալ՝ թէ նեղեն զնա բարեկամք
ստէպ երթևեկօք՝ հրամանաւ մեծաւորին
փոխեցաւ յայլ վանս նոյն կրօնի 'ի քաղաքն
կոյեմբրիայ . անդ առաւել յայտնի կացոյց
զեռանդն հոգւոյ իւրոյ ։ Յետ այսորիկ լու-
եալ , թէ ոմանք 'ի կարգէ սրբոյն Փրանչիս-
կոսի նահատակեալ են 'ի մառոքքօ ափրի-
կոյ , և մարմինք նց փոխադրեալ 'ի փոր-
թուգալ . յայնժամ վառեցաւ յանհնարին
փափաք հեղլոյ զարիւն իւր վասն անուան
քնի . վոյ խոսեցաւ ը Փրանչիսկեանս , և
ասէ . մտադիւր առնուի զձև կրօնի ձերոյ ,
եթէ զխոստէք՝ թէ առաքէք և զիս 'ի քարո-
զութիւն յերկիր անհաւատից ։ Եւ նքա խըն-
դամիտ ընկալան զբանն՝ գիտելով զայրն ի-
մաստուն և սրբասէր՝ լինել 'ի պարծանս
կրօնի իւրեանց ։ Եւ 'ի խնդրել սրբոյն հրա-
ման 'ի մեծաւորէ օգոստինեանց մտ անցա-
նելոյ 'ի կարգ Փրանչիսկեանց , ոչ կարաց
նա ըդէմ դառնալ . զի օրէն էր 'ի խստա-
գոյն կրօն փոխիլ , և զի տեսանէր զնա ող-
ջամիտ և փափաքօղ 'ի լաւ անդր . այլ մե-
ծապէս ցաւելով ետ զհրամանն՝ մտ զրկելոյ
յայնպիսի անձնէ ։ Յայնժամ մի ոմն յաբե-
ղայից նոյն վանաց ասէ հեգնելով ցերանե-
լին . գնա՛ գնա՛ խաղաղութբ փե՛րնանդէ՝ առ
'ի զգենուլ զաքեմ եղբա՛րց կրտսերաց , զի
թէ.

թերևս ո՛չ լինիցիս ։ Իսկ նա ասէ հեզութ̃ · յորժամ լսիցես՝ թէ ո՛չ լեալ իցէ իմ, յայնժամ մեծապէս փառս տաջիր այ̃ ։ Եւ այնպէս եկն եմուտ 'ի կարգ Ֆրանչիսկեանց , և զգեցաւ զձև նց̃ · և փոխեալ զանուն իւր՝ կոչեցաւ Անտոնիոս , առ առաւել անծանօթ լինել յաչս մրդ̃ ։ Եւ եղև յետ տեսանելոյ մեծաւորացն Անտոնի զբորբոքումն սրտի ն՛ր 'ի նահատակութիւն՝ ետուն նմա հրաման ըն̃ խոստման իւրեանց երթալ քարոզել զաւետարանն յափրիկէ · և նա յօժարափոյթ սիրով եմուտ 'ի նաւ , ոչ գիտելով եթէ այլազգ էր տնօրինեալ 'ի վերուստ ։ Քանզի հասեալ 'ի ցամաք , և եղեալ 'ի բնակութե̃ ուրեք քրիստոնէից՝ հիւանդացաւ · և ոչ եգիտ զառողջութի̃ զձմեռն ողջոյն · մինչև հարկ լինել դառնալ նմա 'ի սպանիա , և երթալ յիւր տեղի · բայց բռնութի̃ հողմոց տարաւ ընկեց զնաւն 'ի սիկիլիա ։ Ընդ լո՛ւաւ զսբ̃յն Ֆրանչիսկոսէ , զի հանրական ժողով առնէ կարգին 'ի քաղաքն իւր ասսիզ՝ որ յումբրիա իտալիոյ · վ̃ոյ ել գնաց անդր նաև Անտոն տկար անձամբ ։ Իսկ յարձակիլ ժողովոյն՝ այր իւրաքանչիւր ցրուեցան 'ի վանս իւրեանց · և ոչ ոք գտաւ վանատուր և ասպնջական Անտոնի՝ վն̃ անծանօթ և հիւանդ գոլոյն · մինչև աղաչեաց զգաւառապետն ռոմանիոյ , և նա տարաւ զնա ը̃ իւր 'ի վանս անապատին՝ որ կոչիւր պօղոսի լեառն ։ Ընդ եկաց Անտոն միակե-

ցաւ

ցական վարուք իբրև զճգնաւոր կատարել
տուեալ զանձն յանդադար աղօթս և 'ի
խոկմունս, ոչինչ տուեալ նշան հեշտութե
գրոց, այլ սպաս կալեալ 'ի խոնարհեցուցի և
'ի սեննեակս եղբարց ըստ ցածութե. Գնեց
եղև նմա երթալ հանդերձ քանի մի ընկե-
րօք և մեծաւորաւ տեղւոյն 'ի քաղաքն Փու-
լի ( որ և Փուռում լինի ) մի ձեռնադրութե.
ուղեկից զտամն և ոմանք 'ի դասընկերանց և
յայլ ևս կարգաց. և 'ի մտանել նր 'ի տուն
ութեք մի ճաշելոյ՝ բանք եղեն 'ի մէջ ժո-
ղովելոցն, զի մի ոմն 'ի նոցանէ խօսեսցի
բանս մխիթարութե 'ի շինութի լսողաց.
և 'ի հրաժարել ամենեցուն՝ պատճառելով
զանպատրաստութիւն, մեծաւորն անտանի
ակնարկեաց նմա ասել ինչ, ոչ զի կարծէր
զնա ատողակ 'ի բանս, այլ պարզաբար փոր-
ձել կամելով զհնազանդութի նր: Նա և
անտանն ցմեծաւորն. գիտես հայր զիմ զօրծ
'ի վանս. և զիա՞րդ իշխեսցէ յետնեալս խօ-
սել յանպատրաստից առաջի այսպիսի գիտ-
նաւոր հարանց: Այլ իբրև բռնադատե-
ցաւ 'ի հնազանդութե յանձին կալաւ ա-
սել, զոր ինչ տր տացէ: Եւ սկսեալ պարզ
և մեկին զբուցաբանութ՝ երթալով երթայր
և խորամուխ լինէր յամենեղէն վիպութիւն
անգր՝ հրաշալի բանիւք և իմաստիւք, մինչև
յակճիռս կալ լսելեաց. և այնչափ առա-
ւել՝ որչափ կարծէին զնա հետեակ 'ի դըրպ-
րութե: Հնչեաց այնուհետև համբաւ քա

րու

բողոքութե անտանելի . մինչև եւ հրաման յա-
ռաջնորդաց լինել նմա քարոզել հրապարա-
կաւ ։ Յայնժամ երևեցաւ անտոն՝ նոր հե-
զիաս նախանձաւոր փառացն այ՝ 'ի յանդի-
մանել պտղաբերել ընթացս որդւոց մարդ-
կան՝ կօրաւոր քարոզութե՛ 'ի քաղաքս քա-
ղաքս . զի և երևելի քարոզիչք կանխեալ
յունկնդրութի բանից նր՝ զարմանային ը
համարձակութի նր, և ը հոգին՝ որով խօ-
սէր ։ Իսկ այնչափ քաջ յաղթահարէր զհա-
կառակորդս ճշմարտուե, մինչև կոչել նմա
կռան գլխահար հերեսիովտաց . յորոց և
զբազումս դարձոյց, ոմ և զաղանդապետ
ոմն յարիմինեան քաղաքի ։ 'Ի քարոզել նորա
երբեմն յանդիմանան կարդինալաց և հայրա-
պետին հռովմայ, սքանչացաւ հայրապետն
ը յորդութի բանից՝ զորս 'ի մէջ առնոյր
'ի գրոց սրբց, մինչև կոչել զանտոն՝ արկղ
կտակարանաց ։ Նա կարգեցաւ և նախկին
գասատու աստուածաբանութե 'ի կարգի Փրան-
չիսկեանց 'ի բոլոնիա իտալիոյ ։ Առնէր և
զշնորհս սքանչելեաց և մարգարէութեան ։
Յայնժամ եղև անտոն տեսուչ վանաց 'ի
բոտա քաղաք, կայր անդ նօտար ոմն՝ որոյ
անուն ոչ բարի համբաւէր . զսա քանիցս և
տեսանէր անտոն զճանապարհայն՝ ոչ միայն
ողջունէր սիրով, այլև յարգելով իմն ծունր
դնէր ը անցանել նր . ը որ դժուարեալ նօ-
տարին՝ ոմ թէ այպն առնիցէ զնովաւ ան-
տոն, 'ի միում նուագի ասէ ցնա 'ի լուր ըն-

կե.

կերաց ուրոց. եթէ չերկնչէի յայ, մեռէի
զսուր իմ 'ի կողս քո. զի մի՛ եւս յաւելուցուս
ծառայել զիս: Պղնձի եմ անտոն. բազում
անգամ բազում փափաքանօք խնդրեցի յայ
զպարգեւ մարտիրոսութեան, եւ չեղէ արժա-
նի. այլ յայտնեցաւ ինձ տր վս քո՝ զի մար-
տիրոսանալ ունիս. եւ վս այն առնեմ քեզ
զառանձին մեծարանս. որդ աղաչեմ յիշել
զիս 'ի ժամ ընդունելոյ քո զպսակն վկայութե:
Ծիծաղեցաւ նոտարն ը այս. բայց կատա-
րեցաւ բան սրբյն. քանզի 'ի գնալ եպսին
բոտայ յեֆէմ՝ տարաւ ընդ իւր եւ զայն նո-
տար. եւ իբրեւ անցանէին ը մաւրիտանիա՝
'ի քարոզել եպսին առ անհաւատս, պնդա-
գոյն քարոզիչ գտաւ նա ինքն նոտարն. եւ
արժանի եղեւ նահատակութե. յորում ժա-
մու յիշեաց զբանն անտոնի, եւ պատմեաց
'ի լուր հաւատացելոց: Իսկ անտոն եւս քան
զեւս յառաջադէմ լինէր 'ի քարոզութեան
բանին այ, անձանձիր եւ անխոնջ քրտամբք
ընթանալով յամ տեղիս. եւ զի էր մնեղ եւ
թանձրամարմին՝ առաւել կրէր նեղութի,
այլ յոչինչ դրէր զամ աշխատութի 'ի փառս
այ եւ յօգուտ հոգւոց: Բազում փորձանս
յարոյց ըդդէմ սրբյն բարխատեաց բանսար-
կուն, բայց ինչ ոչ շահեցաւ: Ի գիշերի
միում յայտնապէս 'ի վր վազեաց նր դեւն.
եւ այն ինչ թուէր բուռն հարկանել զպա-
րանոցէ նր եւ խեղդել, գոչեաց անտոն առ
տր ամենածնին՝ բանիւ երգոյն. Մի փառա-

ւորեալ տիրուհի. և առժամայն անհետ
եղև չարն: 'Ի խուռն ընթանալ ամբոխին
'ի լուր քարոզութեան անտոնի՝ առ չքաւելոյ
եկեղեցւոյն ելանէր երբեմն 'ի հրապարակս
և 'ի պաշտօս. և խօսէր նց զբանն այ այնպի-
սի հոգւով, մինչև բազմաց դառնալ 'ի չար
ճանապարհաց, և ամենեցուն յորդորիլ յեր-
կիւղ և 'ի սէրն այ: Այլ առաւել 'ի պատ-
ուհա քաղաքի հանդիսացաւ քարոզութիւն
սբյն. ուր հարկ լինէր 'ի գնալ նորա ը փո-
ղոցս՝ շուրջ պատել զնա արանց զօրաւորաց,
զի մի 'ի խռնիլ ժողովրդեան՝ որք զեղուլին
զնովաւ 'ի համբոյր ձեռաց և հանդերձից
նր, հեղձուցանիցեն զայրն այ: 'Ի քարո-
զել նր 'ի հռովմ առաջի ժողովելոցն յամ
ազգաց և 'ի լեզուաց՝ զարմանք կալաւ զա-
մենեսին, զի ուր նա իտալայի բարբառէր՝
ունկնդիրք առ հասարակ 'ի միտ առնուին
ոմ յիւրեանց բարբառ, իբր ոչինչ ըհատ
'ի շնորհէ առաքելոց: Օրաւոր էր ձայն
սբյն. այլ ոչ առանց սքանչելեաց արդեօք
լսելի լինէր անհամար բազմութեան յերեաս
դաշտաց: 'Ի միում նուագի՝ յորժամ այս-
պէս քարոզէր 'ի բացի յՃին դաղղիացւոց
առ բիտուր քաղաքաւ, սկսան երկինք փայ-
լատակել և որոտալ. և 'ի խորհիլ ամբոխին
մեկնիլ անտի և մնանել ընդ յարկաւ՝ ասէ
սբն. հանդարտեցէք 'ի տեղւոջդ, զի և ոչ
շիթ մի անկցի 'ի վր ձեր. և եղև այնպէս,
ուր արտաքոյ այնր դաշտի յամ տեղիս ան-

ձրևեաց յորդութք ։ Նորկու մղձնաւ հեռի ՚ի տեղւոջէն կայր ՚ի գիւղ մի՝ հիւանդ այր , որոյ վ՚ծ և կէին նորա արգելու յերթալոյ ՚ի քարոզ սրբյն . այլ առ տենչանաց սրտին նստաւ կէնն ՚ի պատուհան տանն՝ որ հայէր ՚ի դաշտն . և եստես՝ զի լսէ զքանս սրբյն յստակութք . և ՚ի պատմել զայն առն իւրում խնդութք՝ նա ևս յարեաւ և եկն տկարութիւք առ պատուհանն , և լսէր նոյնպէս և զքանչանայր ։ Սռ մին յունկնդրաց ընթանայր բօթաբեր ՚ի ձև ծառայի , ոչ թէ մեռեալ իցէ զաւակ նր ՚ի տան . զոր իմացեալ սրբյն հոգւով ծանուցյամպիոնէ անտի , թէ դևն իւքնին հայրն սուտ թէ կերպարանեալ ՚ի ծառայ՝ բերէ զայն գոյժ առ ՚ի խռովել զունկնդիրս բանին այ . և այնպէս յամօթ եղև չարն և կորեաւ ՚ի միջոյ ։ Յորժամ ՚ի պատուհա էր սբն անտոն , յայտնեցաւ նմա յայ , զի ՚ի լիապոնա հայրն իւր պարտաւորեալ է ՚ի մահ ոչ մարդասպան յերեսաց սուտ չարախօսաց . յայնժամ հրաման խնդրեալ անտոնի ՚ի մեծաւորէն երթալ ՚ի քաղաք իւր՝ որ է Յաւ հեռի , ՚ի միում գիշերի ձեռամբ հրեշտակաց ածաւ ՚ի պատուհայն իտալիոյ ՚ի լիապոնա փորթուգալու . ուր խնդրեաց ՚ի դատաւորաց բերել առաջի իւր զմեռեալն՝ զորմէ ասէին սպանեալ ՚ի հօրէ իւրմէ . և յանուն այ եհարց զմեռեալն , թէ հա՞յր իւր իցէ սպանող նր . և ետ մեռեալն զպարզաւ կենդանի , թէ անպարտ

է

է նա յարենէ իմմէ ։ Ու այնպէս զահի հայ-
րաւն և արձակեցին զատաւորք զհայրն ան-
տոնի ։ և նա յետ կալոյ զմի գիշեր ևս ընդ
հօր իւրում՝ ՚ի վաղիւն անդր դարձաւ սքան-
չելապէս ՚ի տեղի իւր ՚ի պատուհա ։ ՚Ի խօ-
սել երբեմն սմին քարոզ ՚ի վ՛ր ուրուք մե-
ռելոյ ՚ի մեծատանց՝ բանս ՚ի մէջ առեալ
ընդդէմ արծաթսիրութե՛ , ասաց ։ լցեալ է
յայրդ յայդ բան աւետարանին , թէ ուր
գանձն ձեր է , անդ և սիրտք ձեր եղիցին ։
և եթէ կամիք իմանալ , բացէք զարկղ գան-
ձուց նր՛ , և անդ գտանիցէք զսիրտ մեռե-
լոյն ։ և եղև այնպէս ։ զի ընթացեալ բա-
ցին զարկղ մեծատանն այնորիկ մեռելոյ , և
ահա սիրտ նր՛ թարմ կայր ՚ի մէջ արկեղն
ընդ դրամս ։ և եղև ահ մեծ ՚ի վ՛ր ամենե-
ցուն ։ Սմն ՚ի պատուհասւոց խոստովանեալ
սմին անտոնի զմեղս իւր՝ ասաց և զայս , թէ
աքացի հարի զմայրն իմ ։ և սրբն ՚ի յանդի-
մանել զնա՝ ասէ ։ արժան է հատանել զոտն՝
որ աքացէ զծնողս ։ ՚Ի բանից աստի այնչափ
շարժեցաւ սիրտ առն , մինչ զի դարձ արա-
րեալ ՚ի տուն՝ ինքնին կտրեաց կացնով զոտն
իւր զայն ։ Լու եղև բանս այս յունկն ան-
տոնի ։ ետ բերել առ ինքնին զայրն , և ըդ-
հատեալ ոտն նր՛ ։ և նշանաւ սբյ խաչին եդ
զոտն ՚ի տեղի իւր , և ողջացոյց զնա ։ Ի՛մ
և այլ սքանչելիս արար , որք գրեալ կան ՚ի
լիակատար պատմութե՛ նր՛ ։ Արժանի եղև
սմն անտոն տեսանել և զողջայացեալսն ո՛ծ

մեր զյս ՚ի կերպարանս մանկութե դեղեցիկ տեսլեամբ քան զամ որդիս մարդկան , և խօսակից լինել ընդ նմա սիրով ընտանութե։ Կանխագէտ եղեալ անտոնի իւրում մահն օրհանի՝ առանձնացաւ ՚ի խուց մի արտաքոյ քաղաքին պատուայու . և յետ ամ պատրաստութե՝ նուաղեր զերգն առ տիրամայրն . ով փառաւորեալ տիրուհի . և սոյնպ վերակներ յերկինս ։ Հարցին որք անդն կային կրօնաւորք , թէ զի՞ ՚ի վեր հայիս . և նա ասէ . հայիմ ՚ի տրն իմ յս քս . և այնպէս աւանդեաց զհոգի իւր առ ած ՚ի ձեռն հրեշտակաց յամի տն 1231 . ՚ի յունիսի 13 . և մինչչև էր գիտացեալ ուրուք արտաքոյ , սկսան մանկտին՝ որ ՚ի պատուա , աղաղակել այսր անդր . սբ հայրն մեռաւ . անտոն փոխեցաւ ։ Իսկ եղև հինգ օր վէճ ՚ի քաղաքին վն տեղւոյ թաղման սբյն , զի ոմանք աստ՝ և ոմանք անդ կամէին . ապա միաբանեալ թաղեցին ՚ի տաճար սբ ածածնի . և յետ ժամանակաց շինեցին խորան հոյակապ յանուն սբյն անտոնի յեկեղեցւոջ անդ , և անդր փոխադրեցին ՚ի ներքոյ բեմի զմարմին սբյն . յորմէ և եկեղեցին այժմ կոչի՝ սբ անտոն . կմ պարզապէս՝ սբ . զի պատուացիք սբ ասելով զանտոն իմանան ։ Անչափ յաճախեցին սքանչելիք նշանագործ սբյն ընդ ամ տեղիս յետ փոխման նր , մինչ զի ՚ի յաջորդամի իսկ և իսկ դասեցաւ ՚ի կարգս սբց տօնելեաց յարեւմուտս . իսկ հրաշք նր անպա-

կա

կասնէլիք յամ ժամանակի հաշակեալ են և
յարևելս ։ Լ . յունիս . 13 ։

Լոնտոնէնէ սրբուհին 'ի նեկերոյ բիւթանաց-
ւոց առ ղիոկղետիանոսիւ մատնեալ վն 'ի
քս հաւատոց 'ի ձեռս պրիսկիղիանոսի իշ-
խանին՝ յետ գանից արկաւ 'ի բանտ . ապա
քերեցին զմարմինն 'ի կախաղանի և խան-
ձողեցին հրով . և հրացեալ շամփրօք ծա-
կեցին զթաթս ձեռաց և զպձղուն ոտից .
և 'ի գոհանալ նր զնե՝ բուրեալ 'ի նմանէ
հոտ անոյշ խնկոց , և եկն ձայն յերկնից 'ի
քաջալերել զնա ։ Ի միւսանգամ բանտար-
կիլն՝ բժշկեցաւ ապաքինելեօք . և մնաց 'ի
բանտի անդ զամս երկու . և զկնի արկաւ
'ի լիճ . կմ ը ոմանց կատարեցաւ սրով ։ Յ.
մայ . 10 . և յունիս 13 , կամ 15 ։ Յ . Լ .
յունիս . 12 ։

Լոնտոնէնէ կոյս 'ի կարդամայ կմ 'ի կորոդա-
մայ գեղջէ ('ի սահմանաց բիւզանդիոյ) առ
մաքսիմիանոսիւ , հարցափորձեալ 'ի փեա-
տոսէ դատաւորէ , և հաստատուն գտեալ
'ի քս , արգելաւ 'ի տուն պոռնկութե ոմ 'ի
բանտ . ուր անարատ պահեցաւ՝ կացեալ
զաւուրս երիս անսուաղ . և 'ի չորրորդում
գիշերի ծագեաց լոյս յերկնից , և տուաւ
նմա կերակուր 'ի հրեշտակէ ոյ ։ Յետոյ
հանեալ զաղախինն քնի՝ բրածեծ և սրա-
ծեծ արարին . և դարձեալ արկին 'ի պոռն-
կատունն ։ Յայնժամ երիտասարդ մի 'ի
քաջ զօրականէն Լէշֆանդրոս անուն՝ հրա-

ժամաւ հրեշտակին նորին եմուտ ’ի բանտն առնողք ։
և արկեալ զկուսին զքղամիդ իւր՝ քաջա-
լերեալ եհան զնա ’ի դուրս, ոչ թէ ինքն
իցէ ելեալն. և ինքն եկաց ’ի ներքս ’ի տե-
ղի նր. ապա ’ի գալ այլոց յանպատակ զին-
ուորաց ’ի վեր եւ բանին ։ Կոչեաց դատաւ-
որն զաղեքսանդրոս առաջի իւր. և ’ի խոստ-
ովան լինել նորա զքն՝ կախեցին զնա, և
սրով կտրատեցին զմարմինն. և նր զօրա-
ցեալ յերկնաւոր ձայնէ՝ արիաբար տարաւ
տանջանաց ։ Յետոյ միանգամայն դատեալ
փեստոսի կանտոնինէ և զաղեքսանդրոս՝
եւ հատանել զմատունս ձեռաց և ոտից
նց, և զնս ընկենուլ ’ի հուր. որով և կա-
տարեցան իսկ. և մարմինք սոցն եղան ’ի
կոստանդնուպօլիս. Հ. յունիս. 9 ։ Յ.
յունիս. 10 ։ Լ. մայիս. 3 ։
Ս. Նոփոնէնոս վկայ կրկին. տօն ’ի տօնեկլիս. հռ.
Գ. 361 ։ տօն և ասա ՟Է մեկլասիպոսի ։
Ս. Նոփոնէնոս երէց, ըստ ոմանց քահանայ, և ըստ
այլոց այր ծեր՝ ’ի կեսարիոյ պաղեստինոյ
առ մաքսիմիանոսիւ, դատեալ վն քրիստո-
նէութեն ’ի փիրմելիանոսէ իշխանէ՝ կատա-
րի սրով, հանդերձ երիւք մանկագոյն ըն-
կերօք, որ են Սեկեւերոս, Օբելեոս, և
Գրեբմանոս ։ Ընդ սոսա ըմբռնեցաւ և Ա՝ա-
նտեա (ըստ այլոց Ա՝անեթոն, կմ Ա՝ննաթա)
կոյս ’ի սկիւթուպօլսոյ. զոր մերկ շրջեցու-
ցին ընդ քաղաքն, և բազում չարչարանօք
փորձեցին. յորոց պահեցաւ մեծամեծ ըս-

քան

քանչելեօք. և դարձոյց զբազումս յանհա-ւատից մեծային վիճպութե. և ապա արկեալ ՚ի հնոց հրոյ՝ աղօթիւք աւանդեաց զոգին։

Հ. հոկտ. 31։ Տր ԻԷ. նոյեմբ. 7։ Յ.

Ի. նոյ. 13։

Անտոնինոս եպիսկոպոս փլորենտացի յիտալիոյ՝ ծնեալ յամի Քր 1390, յազնուական ծնո-ղաց. անուն հօրն Նիկողայոս, և մօրն Թով-մասա։ Սա անտոնինոս յանմեղութեան և ՚ի մէջ վարս՝ աղօթասէր և ծառայեաց, հեզ և հանդարտ և ուսումնասէր։ ՚Ի հասակի ԺԵ ամաց առաքինեալ զնոյն ուսմունս, և զհետ կրթեալ կանոնական գիտութե՝ կա-մեցաւ կրօնաւորիլ ՚ի կարգ դոմինիկեանց քարոզչաց։ Իսկ հայր վանիցն տեսեալ զհա-սակ նորա փոքր և զվտիտ կերպարանս՝ չկամե-լով զնա ընդունել, ասէ. երթ ՚ի տուն քո, և յորժամ սերտ ՚ի բերան ուսուցիս զգիրս վճռոց՝ ապա եկ առ մեզ։ Իսկ նա պարզ միտօք հնազանդեալ՝ նմա ձգամբք սերտեաց զդժուարին զայն գիրս ողջոյն. և յետ տար-ւոյ եկեալ ՚ի վանսն՝ ասէ. արարի հայր ըստ բանի քում, արդ տուր ինձ զքո խոստմանդ զձև կրօնից։ Իսկ նա զարմացաւ, մանա-ւանդ յորժամ ստուգեաց հարցփորձիւ. և առեալ զգեցոյց նմա զսքեմն. և եղև անտո-նինոս յառաջադէմ յոյժ յամն կարգս կրօ-նից առաւել խստամբերութե, որ անբերելի թուէր այնպիսի տկար մարմնոյ. քանզի էր պահեցող յոյժ և տքնող յաղօթս, խարազ-

նաւղեաց 'ի վերայ մերկ մարմնոյ, և գօտի ածեալ երկաթի. խշտի նորա տախտակ չոր, և երբեմն քուրձ մի յարդալից. այլ առաւել խոնարհ էր հոգւով, և ընթերցասէր յոյժ. և անպարապ 'ի դրելոյ զհոգևոր բանս քաղցր և հոգեշարժ ոճով: Յետ քահանայանալոյն՝ արար պտուղ բազում 'ի քարոզութեան և 'ի խոստովանահայրութեան: Նոյն և առաջնորդ վանաց 'ի Հռովմ, 'ի Նէապօլիս, 'ի Փլորենտիա, 'ի Սենա, 'ի Կայետա, 'ի Գորդոնա և 'ի Ֆիէսօլ: Այնչափ պարկեշտ և համեստ գնացս ցուցանէր, մինչև չխօսել ընդ կանայս՝ արտաքոյ հոգևոր պաշտամանն: Երբեմն անցանէր ընդ գետ մի փոքրիկ, ետես զայլախին ոմն՝ զի լայր. Եզի խորտակել էր զանօթ մի մեծ կաւեղէն, և երկնչէր անկանիլ 'ի ցասումն տիկնոջ իւրոյ. իսկ սրբոյն գթացեալ 'ի նա՝ եառ զբեկորս անօթոյն, և նշանաւ խաչի ամբողջացոյց զայն՝ որպէս զառաջինն. և անցեալ գնաց: Ի մեռանիլ եպիսկոպոսին փլորենտիոյ՝ ընտրեցաւ յայն աթոռ Անտոնինոս յեւգինէոսէ դ հռովմայ հայրապետէ ըստ խնդրոյ ամենայն քաղաքին. նա բազմօք հնարեցաւ ընդդէմ կալ և փախչիլ. այլ չեղև հնար, մինչև սպառնալ նմա պապին բանադրանօք. ապա հարկեցաւ յանձն առնուլ: Իսկ յաւուր օծութեանն 'ի մտանել 'ի քաղաքն՝ ոչ եկն երիվարաւ որպէս զայլսն, այլ հետիոտս արտօսրալից աչօք. և այս խոնարհութիւն նոր ևս քան զևս կա-

պեաց

ղեաց զմիրս ժողովրդեան ը ընտրելոց հով-
ուէին ։ Հովուեաց երանելին զհօտ իւր զամս
ժը՝ ամ արթնութե՛ և իմաստութե՛, պա-
հելով միշտ զխոնարհ ընթացս իւր, և ըստ
կարի զտմ նշանակս կրօնաւորութե․ մինչև
երբեմն լռեալ և զսկտեղս՝ ոչ երբեմն ՚ի
վանս․ իսկ զուքնութի աղօթից առաւել ևս
յաճախէր․ սակայն այց առնէր միոյ միոյ յե-
կեղեցեաց, և փոյթ տանէր ամ բարեկար-
գութեց ։ Այց արար երիցու գեղջն մոգել-
լենի՝ որ անկեալ էր ՚ի մահիճս․ և կարգաց
՚ի վր աւետարան հանդերձ քանի մի աղօ-
թիւք․ և նոյնժամայն յարեաւ երէցն ող-
ջացեալ ։ Իբրև անցանէր ը գետն բիավէ,
ուղեկից նորա կանոնիկոսն անկաւ ջուրսն
հանդերձ ՚ի գետ անդր․ և ՚ի կարգալ նր
յօգնութի զտր եպսն՝ գտաւ իսկոյն յափն
գետոյն անթաց զգեստուք ։ Ի գնալ սբյն
՚ի հռովմ՝ տեսել զճանապարհայն զոմն աղ-
քատ մերկ՝ եհան յանձնէ զպաղաբողոնն, և
ետ նմա․ այլ իբրև եմուտ ՚ի քաղաքն՝ գը-
տաւ պաղաբողոնն սբյն յանձին իւրում, ոչ
թէ ՚ի վերուստ տուեալ նմա փոխանակաւ ։
Տեսեալ սբյն անտոնինոսի զհրեշտակս ՚ի
դուռն աղքատին տան միոյ, ՚ի վր եհաս՝
զի բնակիչ տան էր կին մի այրի երեք դստե-
րօք ՚ի յետին աղքատութե, որք վտատակօք
ձեռաց իւրեանց հազիւ հոգային զաւուրն
պարէնս․ յայնժամ ետ նց ողորմութի առա-
տապէս․ բայց յայլում նուագի անցել առ-

աւե.

տեղեաւն՝ եւտես անդ զդևս. և խմբացաւ՝ զ
'ի պատճառս առաւելութե ընչից յուլացել
ելին բնակիչք տանն այնորիկ, և յաւելոյր
զդեստս և 'ի վարդս տունեն զանձինս. ուսու
ցի ուսաւ չափով առնել զողորմութիւն՝ որոյ
կայցէ վտանգ չարաչար վախճանի նոսա:
Աղքատ ոմն եր գուեհիկ 'ի փլորենտիա, որ
օրհնութե երթայր 'ի տաճար աւետումին ո
ամածնի, և աղաչեր զնա մօ երկուց զաւակ
րաց իւրոց 'ի չափ հասելոց. և 'ի միում աւուրց
լուաւ զխօսել երկուց մուրացիկ կուրաց 'ի
խորշ մի եկեղեցւոյն՝ ով թե զանխուլ 'ի
մարդկանե, մօ տրոց ողորմութե՝ զոր ժա
ղովեալ եր նց. մին ասեր, երկերիւր ոսկի
դահեկանք են իմ 'ի քսակի աստ, որ կա
խեալ է զպարանոցես. միւսն ասէ, ես ու
նիմ զերեքհարիւր ոսկի կարեալ 'ի գլխար
կի իմում: Զայն լուեալ գուեհիկն այն՝
ընթացաւ և բռնի կորզեաց 'ի նոցանե ըզ
քսակն և զգլխարկն. և տարեալ եդ առա
ջի անտոնինոսի եպսի՝ պատմելով զբանս
կուրացն: Յայնժամ կոչեաց եպիսկոպոսն
զկոյրսն. և յետ կշտամբելոյ զնս՝ ետ միում
'ի նոցանե դահեկանս քսանևհինգ, և միւ
սումն երեսուն. և զմնացեալսն պարգևեաց
առն կարօտելոյ՝ հարսնացուցանել զերկո
սին դստերս իւր: Այլ ոմն եր շինական
փլորենտացի, որ եբեր սբյ եպսին ուղերձ
զկողով մի լի պտղովք յերախայրեաց, ակն
ունելով փոխարինաց լիաձեռն դրամով. իսկ

սբն

ոքէն զայս եւեթ ստացանեմ. Ած լիցի քեզ վարձահատոյց: Բայց իմացեալ զդժկամակութի չինականին, հաճեցոյց զնա հրաշալի օրինակաւ. գրեաց 'ի վր թղթոյ միոյ զկերպ մնաղթանս, Ած լիցի քեզ վարձահատոյց. եւ եդ զայն 'ի թաթ մի կշռոց. եւ 'ի միւսն եդ զընծայն չինականին զպտղալից կողովն. եւ իսկոյն 'ի վեր առին զկշիռն՝ ծանրեր յոյժ կողմն թղթոյն քան զկողովոյն. յայնժամ ասէ ցայրն եպսն. տես զի չկրկեմ զքեզ, ուր աւելի տուեալ է իմ քեզ՝ քան զոր ընծեալն առ 'ի քէն: Որչափ հեզ էր եւ անբարկացող տնտեսներս, նոյնչափ եւ նախանձաւոր օրինացն այ եւ ազատութե եկեղեցւոյ: Ընդ բանիւ ասեր եւ զքաղաքապետն փառն իշխելոյ նր տալ ըմբռնել զնուիրակ պապին. եւ իսկոյն տպաւորեցաւ նմա իշխանն, ասէ եպսն. ստուգութն գիտեմ, զի դու ոչ ունիս պատճառանել զիս. վն զի ես չեմ արժանի մարտիրոսութե. այլ եթէ զքեզ կամիցիս զիս յաթոռոյ արքեպսութե քաղաքիս, շնորհ մեծ առնես. եւ ձգեալ զձեռն 'ի մենաստանն կոյս՝ ասէ. կայ իմ անդ սենեակ, ուր կարող եմ նստիլ 'ի հանդարտութե, եւ ազատանալ 'ի հոգոցս՝ զոր յակամայս յանձին կալայ: Յաւուրսն յայնոսիկ երեւեցաւ 'ի փլորենտիա աղանդաւոր ոմն մեռելահմայ, որ եւ բարբանջէր բանս հակառակ ամենայնը կոյս ածածնի. քննեաց զնա եպսն դատաստանաւ, եւ դատեալ ան-

զեղջ.

զերծ ՚ի չարիս՝ եւ կենդանութին այրել հրա
պարտակաւ յանհարկուն ամենեցուն : Այն
չափ էր զգօնութիւն անտոնինոսի ՚ի խորհր
դեան, մինչեւ կոչել զնա բազմաց՝ այր խոր
հրդոց : Ի փլորենտիա անպակաս էին խու
վութիք եւ աղէտք պատերազմաց եւ այլ եւ
արկածք. այլ յորմէ հետէ նստաւ անտոնի
նոս յաթոռ եպսուն, կարծեցաւ այն ժմ :
Յետ շարագրելոյ սրբյն եւ զբազմապատիկ
գրեանս լի հոգւով այ՝ փոխեցաւ յերկրէ
յերկինս յամի 1461. ՚ի մայիսի 2 : եօթա
նասուն ամաց. առաջինկայ զտար թաղման
նր եւ պապն պիոս բ. որպ եւ ինքն անտոնի
նոս լեալ էր տուօղ վերջին թոշակի եւգի
նէոսի պապին : Մարմին սրբյ եպսին մնաց
անթաղ աւուրս ութ ՚ի տաճարի սրբյն մար
կոսի՝ յերեսաց խուռն ընթացից ամբոխին
մն առնելոյ զօրհնութի նր. յորմէ եւ բուրէր
հոտ անուշից. բժշկեցան եւ ոմանք ՚ի հի
ւանդաց մերձեալք ՚ի նա հաւատով. որպ եւ
յետ թաղմանն եւս բազմագոյն սքանչելիք
եղեն բարեխօսութբ նր ՚ի փլորենտիա եւ
յայլ տեղիս. որք մն դասակարգեալ եղե
բ սբս յամի 1623 : Ի. մայիս. 2 :

Աշակերտաց պօղոսի՝ տօնելիք. հտ. Ի. 269 :
տես եւ ատտ Արքիպպաս եւ Փիլիմոն. Յա
սոնն եւ Սոսիպատրոս :

Աջնոյն տիկին տօնելի. հտ. Կ. 460 :

Աշոտ Բագրատունի՝ առաջին թգր հայոց ՚ի ցե
ղէ բագրատունեաց, որդի սմբատայ սպա

րա

րապետի խոստովանող կոչեցելոյ, եղև այր ընտիր ամ ձրիւք հոգւոյ և մարմնոյ, գովելի առաջի այ և մարդկան. խաղաղարար էր և եկեղեցւոյ հայաստանեայց 'ի ձեռն ժողովոյն շիրակվանու առ զաքարիա կաթողիկոսին. և յետ պսակելոյ կրկին Թագաւ` յամիրապետէ այլազգեաց ; և 'ի կայսերէն յունաց 'ի վասլէ արշակունւոյ` առաւել պայծառացոյց զազգ իւր աշխարհական և եկեղեցական բարեկարգութեք ամծաւալէր Թգրն. և փոխեցաւ ամծահաճոյ վարուք յերկնից Թագաւորութի` յամի 889. և 'ի Թուին մերում ՅԼԸ : . մայիս. 27 :

Աշոտ ողորմած` արքայ հայոց բագրատունի` որդի աբասայ և Թոռն սմբատայ նահատակի, Թող վայլ անձին լաւութիւս և զառաքինութիւս, շինեաց զբազմութի վանորէից և եկեղեցեաց. և առաւելաւ 'ի գործս ողորմութե և խոնարհութե. զի ոչ միայն շինեաց աղքատանոցս, այլև սեղանակից իւր առնէր զախտաժետս յաղքատաց, ըզկաղս և զկոյրս, և իշխանս իւր փառաւորս անուանէր զնս. և զվէրս նց համարէր իւրև ակնս պատուականս. և զբաժակն իւր Թգրական մատուցանէր նց, և զմնացորդս նոյն բաժակին ինքն ըմպէր. և այնքան առատաձեռնութբ բաշխէր կարօտելոց, մինչև զատարկել զգանձս իւր. և այսպիսի կատարեալ ածպաշտութբ փոխեցաւ յերկինս յամի. 977. նիզ. յաւուրս նարեկացւոյն :

ւոյն ։ Սոփոպէս և Երանելի կողակից աշտ-
տոյ՝ դշխոյն Հայոց խոսրովանոյշ՝ գործակից
պտաւ յամ բարեգործութիւն առն իւրոյ .
որ և շինեաց զերկոսին վանսն սանահնի և

Հաղբատու ։ ՌՃ. մայիս . 27 ։

Սողոմոն կմ' տղատար , այն է աճբաշ օղ , էր մին
յերևելի հարց Ջգնաւորաց՝ պատկառելի
ծերութ. և խստակրօն վարուք . որ ունէր
Ռ իբրև հազար կմ' տասն հազար միաբանս .
և առանց դպրութե խելամուտ էր գրոց .
ունէր և զշնորհս բժշկութե . ոմն յայտ է
՚ի հարանց վարուց ։ Ս.ՅԼ թէ ոմանք բամ-
բասեցին զսա ոմն կուսակից որոգինեանց ,
կամ այլ ոք էր համանուն , և կմ' սխալմամբ
պարզմտութե . զի ոչինչ ստուգութ. մարթ
է քաղել ՚ի հակառակ բանից գրչաց ժամա-
նակին . այսպ թէ ոչ՝ ոչ գտնէին յոյնք պատ-
ճառակ ինչ ՚ի ժամանակս իւրեանց , և հայք
՚ի յայսմաւուրս ։ ՌՃ. ապր . 28 ։ Յ . ժմ .

օգոստ . 7 ։

Սոփրոն եղբայր եւգինեայ կուսի՝ տօնելի .

հտ . Ս. 467 ։

Սողոմոնէս կոյս մկայուհի՝ էր օրինաւոր պար-
կեշտ և անարատ վարուք յաղէքսանդրիա ե-
գիպտացւոց . զոր կալեալ դատաւորն անօ-
րէն ՚ի հալածանս զեկոսի՝ սովոր էր երկիր-
պագանել կռոց . և յոչն հաւանել՝ ետ բռնա-
նաւորին քարշել զնմ առաւօտուն ինք . և ոչ
այնու կարացեալ խախտել զնա ՚ի հաւա-
տոյ՝ հրամայեաց հուր բորբոքել և արկա-
նել

Ճնեալ ՚ի նոյն ։ Յայնժամ կոյսն խաչակնքեալ զերեսս իւր, և լուսեղէն աղօթիւք յանձն առաքելինեալ՝ իւքնին յառաջեաց ՚ի հուրն առ սէր փրկչին․ և այնպէս կատարեցաւ ՚ի քն յամի իւր 260 ։ Նա է զօրաւոր բարեխօս ատամնացաւաց, որք կարդան առ նա հաւատով ։ Լ․ փետր․ 9 ։

Ս․ Ապողոնիոս կմ Ապողինիոս վկայ՝ էր ՚ի սարդիս քաղաքէ լիւդայեցւոց․ որ շրջեալ ընդ բազում տեղիս՝ դարձուցանէր յանհաւատից ՚ի քն․ վերջ կալեալ եղև յիկոնիոն, և կապանօք կացեալ յատենի պերենիոսի իշխանին՝ խոստովան եղև զանձն ծառայ քի ։ Ստիպէր զնա իշխանն երդնուլ ՚ի բախտ արքայի․ և ոչ կարաց հաւանեցուցանել․ վերջ յետ հարուածոց բանից և տանջանաց՝ ՚ի խաչ հանին զերանելին, և գեղարդեամբ խոցեցին․ և այնպէս աւանդեաց զոգին ։ ⁘ յուլ․ 22․ կմ 27, կմ 28 ։ Յ․ 9 ։ Լ․ 10 ։

Ս․ Ապոն․ տես Նուգինէոս ապուն ։

Ս․ Ապոնիսիոս, որ և Ս․ Ապոնեսեսս եպս իտալացւոց առ դիոկղետիանոսիւ վն հալածանաց ժամանակին գնաց ՚ի բիւլթանիա․ ուր ընակեալ ՚ի գիւղն սիւրէ առ կոռնելիոսի առն ծածուկ՝ քարոզէր և դարձուցանէր զբազումս․ մինչև շինել եկեղեցի յանուն հրեշտակապետին՝ ձեռնադրեաց զկոռնելիոս նախ սարկաւագ, և ապա քահանայ և եպս ։ Նա մինչդեռ մատուցանէր զպտ պատարագ յիւրաշէն եկեղեցին՝ հասին ՚ի վերայ կռապաշտք

պաշտք սուսերօք և բրօք և քարամբք . ցրուեալ զժողովուրդն՝ սպանին զսրբն առա-ջի սեղանոյն . որ և թաղեցաւ 'ի գեօղ-վանքլուր . և առ կոստանդիանոսիւ շինե-ցաւ վկայարան 'ի վերայ նր : Ն . ԺԳ . Ս.

սեպտ . 12 : Ն = ԺԳ . 13 :

ԱՊՓԵԱ կին փիլիմոնի . տես ը ԱՐՔԻՊՊԱՅ: ԱՊՓԻԱՆՈՍ ( որ և ապիանոս կամ ամփիլրիոս կիմանփիրրիաս ), և եղբայր նր ԱԴԵՍԻՈՍ՝ էին 'ի քաղաքէն լիւկիայ առ մաքսիմիանոսիւ . և եկեալ 'ի բիւրիտոն՝ աշակերտեցան սբյն պամփիւղոսի կմ պամփիլեայ վկային : Կա-լան հեթանոսք զապփիանոս հրամանաւ ուր-բանոսի իշխանի . և տեսեալ զնա՝ զի 'ի ձայն ցնծուն երգոյ խոստովան լինէր զքս , խոշ-տանգեցին զանիւք . օծին զմարմինն ձի-թով , և հրով խանձողեցին , և քերեցին մինչև 'ի բանալ կողիցն . և ապա 'ի ծով ըն-կեցին . կմ ընդ այլոց 'ի տանջանս աւանդեաց զոգին : Իսկ զեդեսիոս արտաքսհմանեցին յաղեքսանդրիա 'ի մետաղս պղնձոյ . ուր տեսեալ նր զհերակլէոս իշխանն՝ զի անօ-րէն տանջէր զքրիստոնեայս , ապա ժոյժ եղեալ՝ յարձակեցաւ 'ի վր իշխանին , և զգետնեալ զնա՝ գանեաց . վս որոյ և զօրա-կանքն այնչափ հարին զեդեսիոս , մինչև ե-հան զոգին . կամ կենդանւոյն 'ի ծով ըն-կեցին : ԸՆԴ սոսա գրի և ՍԵՆՈՆ վկայ , զորոյ ծակեցին կռապաշտք զպնգունս , և կախեալ գլխիվայր՝ տանջեցին մինչև 'ի մահ :

Հ. ապր. 4: Յ. 2: Լ. 8:

Ռոէստոփէոս կամ Սեբէստոփէոս բժիշկ ի տիեզերականն քաղաքէ կապադովկիոյ առ դիոկղետիանոսիւ ըմբռնեալ ի մաքսիմոսէ կամ ի մաքսիմիանոսէ դատաւորէ՝ յորժամ անարգեաց զղկուռս, և զքն նծ դաւանեաց, հարին զնա դալար բրօք, մինչև տրորել զամ մարմնոյն, և երևել աղեացն: Զկնի բանտարկութե դարձեալ փորձեալ զվկայն՝ հարին բևեռս յոտս նր, և կապեալ ը ձի ամեհի՝ վարեցին ը քարինս և ը թուփս, մինչև աւանդեաց զոգին. և զմարմինն ի գետ ընկեցին. որ գտաւ սքանչելեօք, և թաղեցաւ ի լերին: Հ. յուլիս. 12, կամ 13: Յ. Լ.նոյ. 9:

Ռոտէ մարգարէ և երգիչ՝ որդի քարաքեայ իշխան զլատայեոյ կարգեալ ի դաւթայ գլլուխ սաղմոսերգուաց յանդիման խորանին և տապանակին ի սբն սիոն. յորոյ անուն վերագրին և ոմանք ի սաղմոսաց: Հ. ձեռ. փետր. 3: ըր լինել. մարտ. 2:

Ռոնոսա կամ Ռոնոզա վկայ ի թեբայիդայ եգիպտոսի՝ տանջեալ գանիւք և քերանօք յարրիանոս դատաւորէ՝ արկաւ կիսամահ ի բանտ: Ի նաւել դատաւորին յայն աւուրս ը գետն՝ աղօթէր սբն վս նր, չհասանել ի ցամաք՝ մինչև զրով տացէ վկայութե ճշմարտութե. յայնժամ արգելան գնացք դատաւորին ի վր ջուրց. և գիտացեալ զզօրութին քի՝ գրեաց առ սբն, թէ ճըշ-

մարտապէս մեծ է ա՜ծն քրիստոնէից, և ոչ
գոյ այլ ա՜ծ բաց 'ի նմանէ: Օ այս արարէն
յաջողեցաւ նմա ելանել 'ի ցամաք. յայն-
ժամ համարեալ անօրինին զնա կախարդ-
գող կապօղ ջրոյ՝ ետ այրել զկողս նր. և
ապա կապեալ վէմ յոտս նորա՝ ընկէց 'ի
գետն. իսկ մարմին վկային գտաւ 'ի ցամա-
քի, և ամփոփեցաւ 'ի ձեռն հաւատացե-
լոց: Հ. Յ. մայ. 20: | յունվր. 23:
Մ ոփէոս եպս զխուռակիոյ 'ի Մակեդոնիա՝ էր
առ Տրայիանոսի լուսաւոր վկյ. ճշմար-
տութե. զոր կալեալ էարկ 'ի բանտ ագրի-
կողայոս դատաւոր. և ապա զնա հարեալ
կապարեայ գնտովք՝ ետ օծանել մեղու, և
կախել զփայտէ 'ի վր պարսպին 'ի տօթա-
ժամու, ուր մեղուք և պիծակք կրծեցին
զա՜մ մարմին սբյն, մինչև աւանդեաց զո-
հութ̃ կոգին: Հանդիսատես եղեն քաջ
նահատակութեան ոմանք 'ի հաւատացելոց
իտալացւոց, որք փախուցեալ էին անդր 'ի
հալածանաց արևմտից, Պերեգրինոս, Պո-
նկիանոս, Պոմպէոս, Հեսիքիոս, Պապիոս, Սա-
տուրնինոս և Գերմանոս. յայնժամ և սք յայտ-
նեցին զքրիստոնէութի իւրեանց. վյ չա-
րաչար զան հարեալ՝ ծովահեղձոյց եղեն.
որք և երևեալ յետ ինն ամսոց 'ի տեսլեան
աղեքսանդրոսի եպսի՝ ցուցին զմարմինս իւ-
րեանց ծածկեալս 'ի ծովեզերին. և նա ամ-
փոփեաց է մարմնոյ սբյն աստիոսի. և զկնի
շինեցաւ վկայարան 'ի վր նց: Հ. յունիս.

3.

3 . և յուլիս . 6 , կմ 11 ։ Յ. յուլ . 6 , և 7 ։
Լ . յուլ . 7 ։

Ա. ծառուր վկայ , որ և Յեղուէնուսդ տօնելի . Հռ . Մ . 234 ։

Ա. գոմէանոս առաջին և երկրդ՝ տօնելիք . Հռ . Մ . 66 ։

Ա. տրներսեհ , որ և Ա. դրիանոս , որդի պրոբոսի կայսեր , վէմ և արքայ հռովմայ անուանեալ յամանց , ասի լինել քրիստոնեայ հանդերձ եղբարբ կմ հօրեղբարբ իւրով դոմետիոսիւ , որ եղև եպս բիւզանդիոյ . ում և յաջորդք նմ պրոբոս և մետրոփանոս կարծին լինել որդիք ատրներսեհի կմ դոմետիոսի ։ Ա. րդ ատրներսեհ եկեալ ՚ի նիկոմիդիա՝ խրատէր զհալածիչ կայսրն լիկիանոս՝ ՚ի բաց կալ ՚ի կոտորելոյ զքաջ զօրականս քնի . զի ՚ի պակասիլ ասէ քրիստոնեայ զօրուդ՝ զօրանան թշնամիք տրութեէ քո ։ Նա նմ բարկացեալ՝ ետ գլխատել զերանելին մն պաշտելոյ ըդքն . և դոմետիոս կմ դոմետիանոս եպս գողացաւ զմարմին սբյն ; և տարեալ ամփոփեաց յարգիւրոպօլիս ը նշխարս ադրիանոսի և կնոջ նորա անաստալյ , և եւստաքէի առաքելոյն բիւզանդացւոց ։ Յ. օգոստ . 23 , կմ 30 ։ Լ . օգ . 26 ։

Ա. րարադեան վկայք բիւր մի՝ յիշատակին աւանց իւրեք հանգամանաց վկայութե ՚ի Լ . յունիսի . 22 . այսպէս . * ՚Ի լերինն արարադայ նահատակութի սրբց վկայից տասն հազարաց խաչելոց ‖ ։ Սոյն զի ոմանք հա-

մարեցան զսոսա զօրականս լինել առ ադրի-անոս կայսերաւ, և այլք կրօնաւորս. և զի կարմեղականք զնմ միանձունս ցի դհենս 'ի կարգէ իւրեանց համարին լինել՝ սկսեալ յեղիայ մարգարէէ, կամեցան և զսոսա առ-դնել կարգակիցս իւրեանց. և այն՝ չորս բիւր, ու քառասուն հազար։

Արդալոն կմ արդաղիոն կատակօղն՝ միմոս էր ծաղրածու առ մաքսիմիանոսիւ. և ձևացու-ցեալ առաջի թգրին և մեծամեծաց նր ընդ խաղս զնահատակութն մարտիրոսաց՝ ինքն ձևացաւ իբրև քրիստոնեայ ածեալ յատեան դատաւորի։ Անդ փոխեաց տր զմիտս նր 'ի կատականաց 'ի ճշմարտութի. մինչև պնդ-դագոյնս հաստատէր՝ թէ այսուհետև ոչ է խաղս խօսիմ, այլ ճշմարտութբ խոստովան լինիմ զհաւատս քնի. զի շնորհք նորա ծա-գեաց 'ի սրտի իմում. վյ նզովեմ զկուռս հեթանոսաց։ Եւ այնպէս 'ի մահ վիրաւո-րեալ երանելւոյն զբելիար և զատեանն կռա-պաշտից՝ արկաւ 'ի հուր բորբոքեալ, և եղև ստուգապէս մարտիրոս։ Ն. ապր. 16։ Տր իէլ, և Յ. 17։ Լ. 14։

Արեւելեան վկայք ասիացիք տօնելիք ի Պօղի-կարպոսի. հա. Ա. 563։

Արէտոդոն կմ արէտոդնէ աղախին տերտուղոսի հեթանոսս իշխանի 'ի պրիմիս փռիւգացւոց՝ առ ադրիանոսիւ, ստիպեալ 'ի տօնի կռոց 'ի տնե իւրմէ գնալ 'ի մեհեանն, չէառ յանձն. զի քրիստոնեայ էր։ Ա՛ն որոյ յետ գանից և բան-

թանձրոտի և սովու՝ մատնեալ 'ի ձեռս դատաւորի՝ ընկալաւ և քերանս 'ի կախաղանի . բայց ժողովուրդն հայեցեալ 'ի համբերութն սրբուհւոյն՝ ետուն արձակել զնա . և նա եւ գնաց 'ի լեառն մօտակայ . իսկ 'ի դիմել զօրականաց զկնի նո՝ պատառեցաւ վէմն , և ընկալաւ զնա 'ի ներքս՝ լինելով գերեզման նմա ։ [symbol] . սեպտ . 19 , կմ 21 ։ [symbol] . 18 ։

Լ . 17 ։

Արիստակէս որդի լուսաւորչին՝ տօնելի . հտ . Գ . 481 ։

Արիստոբուլէս կմ Արիստոբուլէս քահանայ աւագեկեղեցւոյ 'ի դամաս քաղաք կիպրոսի , յետ թաքչելոյ յայրս վասն հալածանաց մաքսիմիանոսի՝ յայտնութ[եամբ] առեալ 'ի տնէ իջանել 'ի մայրաքաղաքն և մարտիրոսանալ , եկն 'ի տաճար սրբյն բառնաբայ՝ որ յեկեղրուս . և պատմեաց Դիոկղետիանոսի սարկաւագի , և Աւնատոսի դպրի զտեսիլն . և իջեալ նոքօք 'ի սաղամինա՝ դատեալ եղև 'ի սաբինոսէ դատաւորէ , և յետ սաստիկ գանից կատարեցաւ սրով . սոյնպէս և ընկերք նո զկնի այլոց տանջանաց կատարեցան . և եդան երեքին 'ի միում տապանի ։ [symbol] . յունիս . 27 ։ [symbol] . 23 ։

Արսէն կմ Արսենիոս հայր՝ տօնելի . հտ . Թ . 278 ։

Արտեմոն կմ Արտեմոնէս ծերունի քահանայ եկեղեցւոյն լաւոդիկեցւոց առ դիոկղետիանոսիւ , լցեալ հոգւով և միաբանեալ ընդ

սիսիանոսի եպիսկոպոսի՝ խորտակեաց զբա-
գինս կռոց . և 'ի դիմել կոմսի տեղւոյն
'ի վերայ նորա՝ ըմբռնեցաւ այրն 'ի խոխա-
ցաւոց ; և աղօթիւք եպիսկոպոսին բժշկեալ՝
ներեաց առ ժամն ։ Ս.ՅԼ վկնի տարւոյ դը-
տեալ կոմսն զքահանայն արտեմեան 'ի կե-
սարիա՝ եդ 'ի բանտ . և դատեալ յատենի՝
տոխպէր 'ի զոհ կռոց . իսկ նա աղօթիւք կոր-
ծանեաց զկուռս ասկղեպիոսի . և հալածեաց
զեօթն միշապս բռնեալս 'ի մեհենի նորա .
ուստի հաւատաց 'ի քս բիտալիոս քուրմն ։
Յայնժամ կոմսն ետ կորպանել պատառ-
պատառ 'ի մարմնոյ արտեմեանայ , և արկա-
նել 'ի հուր . և զնա հանել 'ի կատսայ եռա-
ցել . յորմէ ապրեցաւ սքանչելեօք . և յետ
բազում և մեծամեծ գործոց խաղաղութե
աւանդեաց զհոգին 'ի ձեռս այ ։ Հ . ապր .
11 ։ Յ . ապր . 12 ։ Ի . հոկտ . 8 ։
Սարգիս վկայ տօնելի . հտ . Ի . 511 ։
Սերգիոս և Փիլիմոն երին աշակերտք պօղո-
սի՝ կողոսացիք 'ի փռիւգիա . ուր առ նոքա-
նիւ 'ի կատարել հեթանոսաց զտօն արտե-
մեայ դիցն ( որ և անահիտ ) , և 'ի դիմել 'ի
վերայ քրիստոնէից ժողովելոց յեկեղեցի ,
փախեան ամենեքին , և մնացին միայն ար-
քիպպաս և փիլիմոն հանդերձ կնաւ իւրով
Ապփիա . զորս տարան կապանօք յատեան
անդրոնիկոյ դատաւորի . և յետ գանից ար-
կեալ զարքիպպաս 'ի գուբ մինչև ցգօտին՝
հրաման ետուն մանկանց դպրոցի ծակո-
տել

տեսել զգլուխ նր̄ երկաթի գրչօք, և ապա
քարկոծեցին ։ Նոյնպէս տանջեցան փիլի-
մոն և ապփիա. և 'ի բրածեծն լինել աւան-
դեցին զոգիս ։ ⁓ . Նոյ . 22 . և յունիս . 5 ։
{} . Նոյ . 23 ։ | . մարտ . 20 . և Նոյ . 22 ։
Աւագ նոր վկայն բաղիշեցի՝ 'ի մանկութենէ
եղև քսակակալ արուեստիւ 'ի սալամաստ
քաղաքի առ ոսս պարսկի ուրումն . յորմէ
'ի կարծիս եղեն ոմանք յայլազգեաց՝ թէ
յայլազգութի իցէ դարձեալ մանուկն . մինչ
կի յետ անցանելոյ իբր Ժ ամաց՝ տեսեալ
զնա 'ի բաղէշ այլ ոմն պարսիկ, պնդէր՝ թէ
դու այլազգի էիր 'ի սալամաստ ։ Ասէ ա-
ւագ . Ես քրիստոնեայ էի և եմ և եղէց,
ծառայ քր̄ի ա̄յ իմոյ օրհնելոյն 'ի բարձունս ։
Իսկ պարսիկն ձգեաց զնա բազմութե̄ հա-
մակդենից իւրոց յատեան ամիրշարաֆ ամի-
րային . և նր̄ չզտել 'ի նմա պատճառս՝ կա-
մէր արձակել . այլ 'ի հաճել զմիտս ամբո-
խին՝ յղեաց զնա առ գլխաւոր դատաւորին ։
Նա իբրև եհարց զաւագ, նա համարձակ
խոստովան եղև զքս̄ ա̄ծ, և զինքն ծառայ
նր̄ . և էր ինքն լցեալ հոգւով սր̄վ, և տե-
սիլ նր̄ լուսաւոր իբրև զհրեշտակի . վ̄ոյ ա-
ռաւել ևս կրճտէին թշնամիք զատամունս
'ի վր̄ նր̄ . մինչև կեղեալ բազմութե̄ զնա-
վաւ՝ հարին զգլուխ վկային կէսք փայտա-
կոճիւ, և այլք սրով և քարամբ . և այնպէս
կատարեցաւ յամի 1390 . պէթ . 'ի դշ̄բթի
երկրորդ շաբաթուն աղուհացից ։ ⁓ . փե-

տրվարի . 23 :

Աներ . տես Եղիսաբէթ :

Աբդոն և Սենենա պարսիկ վկայք . տես 'ի վարս Ս. Լաւրենտիոսի՝ ընդ Ժ. օգոստ . 12. որ 'ի Ս. . ուրոյն ևս յիշատակին՝ 'ի յուլ . 30 .

Աքղոն և սեննէն անուամբ :

Աֆրա էր կին պոռնիկ յարևմուտս յօգոստայ քաղաքէ՝ որ և աւկսպուրկ , յաւուրս հալածանաց կռապաշտից . զոր կալեալ՝ ատենապետին զոհել . իսկ նա ոչ հաւանեցաւ , քանզի ասէ՝ քրիստոնեայ եմ : Ահարց դատաւորն . որո՞յ բանսարկու ես , և ո՞րպիսի են վարք քո : Ափրա ասէ . չարի բանսարկու էի յառաջագոյն վն պիղծ գործոց իմոց՝ սատանայական խաբէութբ ծառայեալ պոռնկական գարշութեանց . այլ այժմ ազատ եմ . զի շնորհքն ծյ գործեցին զիս զգաստ և պարկեշտ : Ասէ դատաւորն . եթէ զգաստացար , մատի՛ր զոհեա՛ դից ընդ հրամանի թագաւորաց : Ափրա ասէ . պղծութի է պաշտել և զդիս , քան զորս ոչինչ է աղտեղագոյն . և իմ հայեցեալ՝ թէ որպէս ընթացակից են նք աղտեղի գործոց , հեռացայ 'ի նոցանէ , և ընթացայ առ փրկիչն քս՝ որ հատանէ և զարմատս մեղաց , մինչև ընդ շունս դատել և զորս հային 'ի կին ցանկութեամբ : Սպառնայր դատաւորն՝ չարաչար տանջանօք ապականել զգեղ նր , և կործանել 'ի կենաց . իսկ ափրա ասէ . հաւատամ 'ի քս , որ վասն բազում մարդասի-

րու-

ցուցէ իւրոյ հայեցաւ յիս , զի տացէ զօրու-
թիւն մարմնոյս իմոյ ժուժկալել տանջա-
նացդ քոց . որպէս զի բարի գործովք լցայց՝
լցեալս . երբեմն չարեօք , և հաշտեցուցից
զա՜ծ՝ զոր բարկացուցի , և ուրախ արարից
զհրեշտակս՝ զորս տրտմեցուցի : Բարկա-
ցաւ բռնաւորն , և ասէ . ապտակեցէ՛ք զե-
րեսս դորա սաստկագոյն . և ասացէ՛ք , թէ
մի՛ ը՜նդդիմանար հրամանաց թ՜գրին : Եւ այն-
չափ հարին զերանելի կինն , մինչև լալ տե-
սողաց : Ասէ դատաւորն . տեսանե՞ս ա՛փրա ,
զի լայ մ՜ք քո քաղաքս . այդքան սիրեն ըզ-
քեզ : Ափրա ասէ . 'ի բազում պոռնկութե՜
իմում արբանեակք սատանայի՝ որք էին իմ
գործակիցք , ուրախ լինէին , և հրեշտակք
տրտմէին . և այժմ ն՜ք լան , և հրեշտակք
յերկինս ցնծան . արդ զի՞նչ կամիս՝ արա՛ .
ես քրիստոնեայ եմ : Դատաւորն ասէ . ա՛յ
անամօթ զոհեա՛ դ՜ծոցն . ապա թէ ոչ՝ երդ-
ուեալ 'ի նս , առ սակաւ սակաւ հրով վառ-
նեմ զքեզ : Ափրա ասէ . և ես երդմնեցու-
ցանեմ զքեզ 'ի թագաւորն քո , զի հրա-
մայեսցես այրել զմարմինս իմ աղտեղեալ
մեղօք . զի ո՜պ անդր պղնձի բազմաժամա-
նակեայ հնացեալ և ժանգոտեալ՝ նորոգի
'ի ձեռն հրոյ և փայլէ , նոյնպէս և զիս հրա-
մայեա՛ հրով այրել , զի ամբիծ և անարատ
պատարագ մատիցէ մարմինս իմ 'ի ք՜ս : Եւ
զարմացեալ դատաւորին ը՜ պնդութե՜ խոս-
տովանութե՜ ն՜ր՝ հրամայեաց կապել զձեռս

և

և պատմեն, և քարշել արտաքոյ քաղաքին
մինչև 'ի գետեզրն. և անդ այրել զնա կեն
դանւոյն։ Եւ այսպէս կատարեցաւ հրով
նք կինն արիրա 'ի քս յս 'ի տր մեր. որում
փառք ընդ հօր և ամենասուրբ հոգւոյն յաւի-
տենանս յաւիտենից. ամէն։ Ճառընտր. Հյ.
Բ. Ֆեզ. և Օ. մէ։
Սա է, որ յիշատակի 'ի Լ. օգոստ. 5.
* Յօգոստոս վինդելինկայ կատարումն սրբ-
բուհւոյն աւիրայ վկայուհւոյ, որ գոլով կին
հեթանոս՝ դարձաւ 'ի քս վկայութե սբյն
նարկիսոսի եպսի, և տմ տամբ իւրով մկր-
տեալ, վս խոստովանութե քի մատնեցաւ
'ի հուր ։

# Բ

Բաբելաս հայրապետ տօնելի. հտ. Ա. 26։
Բաբելաս ծեր տօնելի. հտ. Բ. 109։
Բագարատ հայրապետ տօնելի. հտ. Գ. 130։
Բագոս ընկեր սարգսի տօնելի. հտ. Դ. 140։
Բագոս աբեղայ՝ նոր կմ կրտսեր բակքոս կո-
չեցեալ, էր 'ի կողմանց եգիպ 'ի կայսերութե
կոստանդեայ և եւլինեայ, մի յեօթն վա-
ւակաց առն ուրումն դալձելոյ յայլազգու-
թիւն. յորոյ 'ի մեռանիլն՝ մայր մանկանցն
ուսոյց նց անդրէն զքրիստոնէութի. և մի
'ի նոցանէ՝ դահակ կմ դելար անուն՝ չոքաւ
'ի վանս սբյն սաբայի, և մկրտեալ կրօնա-
ւորեցաւ ծը ամաց, և անուանեցաւ բա-
գոս.

դոս . և յետ կալոյ առ ժամանակ մի եկեալ
'ի տուն՝ մկրտեաց զհնգեսին եղբարս իւր .
իսկ վեցերորդն՝ որ մնաց յայլազգութե ,
մատնեաց զբադոս . զոր կալեալ այլազ-
գեաց՝ տարան զանիւք և թշնամանօք առ
ամիրայն . որ և ետ ապտակել զնա . իսկ նա
ասէ . ալէլուիա ալէլուիա , փառք քեզ ած .
և զոր ինչ ասէր ամիրայն , բադոս զնոյն եր-
կրորդէր օրհնութի . մինչև յետ բազում
խոշտանգանաց հատին զգլուխ երանելւոյն .
զոր բարձեալ թաղեցին քրիստոնեայք հան-
դէպ այն սիոնի և ոչ փրկչի վանացն և
ննջմանն ածածնին յարևմտից կուսէ : Հ .
դեկտ . 19 , կմ 18 : Օ . 17 :

Բառնաբաս առաքեալ տօնելի . հտ . Ն . 88 :

Բասոս կմ բասսա . տես Վասսա :

Բասիլեդես տօնելի ը բասոսի . հտ . Ա . 133 :

Բասիլիսկոս և Բասիլեոս տօնելիք . հտ . Ն .
546 . և 562 :

Բասիլիոս կմ Եարսեղ արշիմանդրիտ 'ի բիթ-
լապատայ պարսից՝ յերևելի տանէ , զկնի
մահու ծնողացն բաշխէ աղքատաց զինչս
իւր , և կրօնաւորեալ՝ կարգի հայր վանաց .
զոր կալեալ եօթն աշխերպոց՝ տարան առ շա-
պուհ արքայ : Նա յոյժ հաւանիլ նմա պաշտել
զարեգակն և զհուր՝ արկին 'ի բանտ . և
յետ չորից ամսոց տարան 'ի գլխատել . և
էր դահճին նկրտան մայլրաս սուրացող : Օր
տեսեալ 'ոս հօրն բասիլիոսի՝ զի այլադաւ-
նեալ էր յահեկն , սկսաւ պատուաւօք յիշե-
ցու-

ցուցանել նմա զահաւոր դատաստանն քնի
իսկ թշուառականն այն ոչ եկն 'ի զղջումն
այլ դողալով եհար չորիցս զպարանոց սրբյն
բասիլմոսի , նոյնպէս և զեօթանց աբեղայ-
ից . և այնպէս կատարեցան 'ի քս յամի տն
իբր 375 . իսկ ներսան ընդունեալ 'ի գործ-
չարութէ իւրոյ՝ որամահ կորեաւ : ✝ . ապր.

4 : Յ . 9 :

Նաւաս տօնելի . հտ . Յն . 13 :

Նաւփ կմ բաղոս ձգնաւոր՝ էր յաջգէ պար-
սիկ 'ի պերգամ գեղջէ , զաւակ քրիստո-
նէից՝ սնեալ բարեպաշտութբ . և վս քնի
թողեալ զամ ինչ՝ եմուտ 'ի վանս խստա-
կրօն միանձանց 'ի բիզագաղոն . և կկնի ե-
րեսնամեայ ձգնութե յանկացեալ մաքրու-
թե , յորժամ փախեան վանականքն
յերեսաց հալածչաց՝ ինքն միայնիկ եկաց
'ի վանս . և ըմբռնեալ ածաւ առ յուլիա
քաղաքապետ . և յոչ առնուլ յանձն զեր-
կրպագութիւն արեգական և հրոյ՝ տասն
արք քարշեցին զերկոսին ձեռս բաստայ՝ հինգ
յաջմէ և հինգ 'ի ձախմէ , մինչև փրթուցին
յանձնէ զերկոսին բազուկս թևօքն հան-
դերձ . և յորսայս արկեալ՝ եսուն զայլ և ս
քստմնելի տանջանս . և 'ի վախճանի հա-
տին զգլուխ սբյն . զորոյ զմարմինն յափշ-
տակեաց դանիէլ քահանայ , և տարաւ 'ի
մծբին . և տր աբրահամ եպս քաղաքին եդ
զնա պատուով 'ի տապանի . յորմէ եղև ա-
սել ումանց՝ թէ 'ի մծբին իցէ նահատակել :
✝ .

Հ ․ տար ․ 29 ։ Ք ․ մայ ․ 1 ։

Նաւրաղամ անտիոքացի տճնէլի ․ Հռ ․ Բ ․ 124 ։

Բաւրճաւշլին եպիսկոպոս պարսից 'ի սղանկ և 'ի տխրաբերն՝ քեռորդի և յաջորդ սորին շմաւոնի , ածաւ յատեան շապհոյ իբրև դիմակայ դենոյին պարսից ․ խոստանայր նմա Թագըն ինչս բազումս՝ եթէ յանձն առցէ դառնալ 'ի մոգութի ․ և յանարգել սորին զնա՝ մերկացուցին զնա , և չարաչար տանջեցին , և արկին կապանօք 'ի բանտ՝ սովալլուկ նեղեալ զամիսս մետասան ․ մինչև գլխատեցին զերանելին հանդերձ վեշտասան աշակերտօք կամ ընկերօք , յամի իբր 346 ։ Հ ․ յունիս ․ 10 ։

Սոփ ․ ան ․ Եւոդիոսի ։

Բարդիշա կամ Բարդէս եպս պարսից 'ի նոյն հալածման շապհոյ՝ դաւանեալ զքս յատենի արքային՝ հարաւ յերկար փշալից բրօք ․ զորոյ և զվերս շփեցին խորգով ․ յետոյ եդին զոտս նր 'ի մամուլս հիւսանց , և խորտակեցին ։ Եդին խունկ 'ի ձեռս նր՝ արկանել 'ի հուր , զոր պաշտէին պարսիկք ․ և 'ի ցրուել սորին զխունկն յերկիր՝ եւ Թագաւորն քայքայել զմատունս ձեռաց նր ։ Երեք երէցտասարք յարքունեաց տեսանելով զհամբերութի եպսին՝ դարձան 'ի քս ․ և բանտարկեալ՝ գաղտ կատարեցան 'ի մր ։ Իսկ վսյ եպսին զլեզուն ը ծոծրակէն հանին վս համարձակ յաղթահարելոյ զԹգըն ․ և իբրև եկն առ նա ձայն յերկնից՝ հաւատացին անչէնք յնք ․ և մկրտեցան արեամբ իւրեանց ․

'ի գաւառէն Հռովմայ 'ի Նորկիա քաղաքէ , ծնեալ յամի տն 480 . յազնուական և 'ի բարեպաշտ ծնողաց , և սնեալ ժուժկալ վարուք : Յետ կալոյ առ ժամանակ մի 'ի Հռովմ յուսումն՝ եթող զն և զծնօղս իւր 'ի դեռաբոյս հասակի , և առանձնացաւ յանապատն Սուբլակ , օգնական իւր գտեալ զմիայնակեաց ոմն Ռոմանոս անուն , որ ըստէպ այց առնէր , և բերէր նմա կերակուր . Անդ զաղարեալ 'ի խորափիտ այրի միում սքանչելի ճգնութբ և ընտանութբ ընդ այ՝ անծանօթ էր 'ի մարդկանէ զամս երիս . մինչև երէց մի ազդեալ 'ի տնէ յաւուր զատկի՝ եբեր առ նա 'ի խորտկաց իւրոց . և յայնմ օրէ զային առ նա մարդիկ 'ի գտանել զհոգևոր մխիթարութիւն : Երևեցաւ նմա երբեմն դեւն 'ի կերպարանս ագռաւու , և զարթոյց 'ի միտս նր խորհուրդս աղտեղիս . յայնժամ բենեդիկտոս մերկացաւ և թաւալեցաւ 'ի մէջ տատասկաց , մինչև խոցոտել զամ մարմինն և արեամբ շաղախել . և յայնմհետէ ազատ գտաւ 'ի չար խորհրդոց : Էր յայնժամ իե ամաց . և եկաց 'ի նոյն ճգնութե նոյնչափ ևս ամս : Եկին առ նա աբեղայք ոմանք , և հարկեցուցին զնա լինել իւրեանց առաջնորդ . այլ ոչ կարացեալ տանել խստակրօնութե նր և անաչառ յանդիմանութենն՝ մատուցին նմա դեղ մահու . և 'ի խաչակնքել սրբյն նխքան ըմպելն՝ հերձաւ ամանն , և հեղաւ մահադեղն :

դեղն ։ Ապա և դարձաւ անդրէն յայրն իւր , թագուհիք ընթացան առ նա՝ աշակերտիլ նմա ․ որով 'ի սուղ ժամանակի կանգնեաց երկոտասան վանս ․ և հիմնարկեաց յայրե-մնուտս զկարգ կրօնաւորութե̃ ո̃մ բարեկար-գութե̃ , սահմանեալ լուսաւոր կանոնօք ։ Ապա եկեալ 'ի կասսինոն՝ կործանեաց ըզ-բագինն ապողոնի , և այրեալ զանտառն՝ շինեաց անդ մատուռն յանուն սրբոյն մար-տինոսի , և զլարկն կոչեցեալ սրբոյն յովհան-նու ․ և զբնակիչս տեղեացն կրթեաց յա̃ծ-պաշտութի̃ ․ ունէր և զշնորհս մարգարէութե̃ ։ Լուաւ զհամբաւ սրբոյն՝ տոտիլաս թագաւոր արքայ գոթաց ․ և 'ի փորձել զնա՝ յղեաց առ նա յանուն իւր 'ի ձև զարդուց իւրոց ու̃մն թ̃ր զզինակիր իւր թիկնապահօք համ-դերձ ․ զոր տեսեալ սրբոյն՝ ասէ ․ 'ի բաց հան որ-դեակ , 'ի բաց հան յանձնէդ զայդ ձև , զի չէ քո , այլ տ̃ն քո ։ Գուշակեաց տոտիլա-սայ և զմահ ն̃ր զկնի իննն ամաց և պէսպէս անցից ։ Արար և զայլ բազում գործս սքան-չելիս ․ մինչև յարուցանել և զմեռեալ ։ Պատ-մեաց յառաջագոյն և զփոխումն իւր ․ և վեց աւուրբք յառաջ ետ բանալ իւրեան գե-րեզման ․ և յաւուրն վեցերորդի մտեալ յե-կեղեցին , և հաղորդեալ 'ի ս̃բ խորհրդոյն՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս ա̃յ 'ի նմին կա-սինեան լերինն յամի ․ 543 ․ կ̃մ 536 ։ Նոյն յա-ւուր վախճանի ն̃ր որ էր հաստարակած զար-նոյնոյ , տեսին երկու միաբանակեացք ն̃ր 'ի

ժամանակաւն տեղիս տեսիլ, զի յերկրէ յեր-
կինս կազմեալ էր թափոր լուսազգեաց ա-
րանց՝ ոսկեհուռն հանդերձիւք և պայծառ-
լապտերօք. և եղև ձայն՝ որ ասէր. այս է
ճանապարհն, զոր յերկինս ընթանայ սի-
րելին ծառայն այ բենեդիկտոս: Եւ յայնմ
հետէ կարգն բենեդիկտեանց փայլեալ միշտ
երևելի արամբք ՚ի սրբութե և յիմաստութե.
յորոց և բազմք ընտրեցան յեպսուհ կողմանց
կողմանց, ոմ և ոմանք յաթոռ հայրապե-
տութե հռովմայ. զոր օրինակ է և յաւուր
յայսմիկ պիոս Ե՝ այլն աքանչելի, որում ե-
ղէ արժանի և ես երբեմն լինել պաշտօ-
նեայ: Իսկ երանելին հայրն մեր մեծ աբ-
բայն միխթար ՚ի կանգնել անդ զմերս միա-
բանութի յանուն կարգի սբյն անուանի աբ-
բայի՝ ընտրեաց և զկանոնս սբյն բենեդիկ-
տոսի աբբայի, զորս և վաղագոյն թարգ-
մանեալ էր սբյն ներսեսի լամբրոնացւոյ:
Հ. մարտ. 22: Յ. Ի. մարտ. 21:
Ընդ սբյն բենեդիկտոսի յիշատակի և սրբ-
բանկրօն քոյր նր Սխոլաստիկէ կուսան ճգնա-
ւոր՝ ծաղկեալ նմ առաքինութբ. առ որ
միանգամ ՚ի տարւոջ գայր եղբայր նր, և
պարապէր ՚ի հոգևոր խօսակցութիս և ՚ի
քննութի նր գրոց ը նմա: Ի միում նուա-
գի աղաչէր սխոլաստիկա զեղբայր իւր ար-
տասուօք՝ մնալ զգիշերին զայն, և խօսել ը
նմա զերկնայինն ուրախութեց: Իսկ սբն բե-
նեդիկտոս. արտաքոյ խղճին իմոյ ոչ կարեմ

օթել քո՛յր իմ ։ Եւ կոյսն աղաչեաց զԱծ և պարզութի օդոյն փոխեցաւ 'ի կարկուտ և 'ի յորդ անձրև ․ որով արգելաւ յերթալոյ սբ հայրն և որ ը՟ նմա եղբարքն ․ և ասէ ․ զի՞նչ է այս՝ զոր արարեր քո՛յր իմ ։ Նա ասէ սրբուհին ․ աղաչեցի զքեզ, և ո՛չ լուար ինձ եղբայրդ իմ ․ աղաչեցի զԱծ , և լուաւ ինձ փութապէս ։ Յետ կատարելոյ այնուհետև զգիշերն ողջոյն 'ի բանս հոգևոր մխիթարութե , դարձաւ Բենեդիկտոս 'ի տեղի իւր ․ և իբրև աւուրք երեք անցին 'ի վ՟ր , տեսանէր զհոգի քեռն իւրոյ թռուցեալ յերկինս իբրև զաղաւնի ․ և իմացեալ զփոխումն նո՟ր ետ բերել զմարմին նո՟ր սբ , և թաղեաց 'ի գերեզմանի՝ զոր վ՟ն իւր էր պատրաստեալ ։

Ն․ մարտ ․ 22 ։ Ի ․ փետր ․ 10 ։

Բենիզեանն սարկաւագ տօնելի ․ Հտ․ Բ․ 216 ։

Բենիզէ , որ և Բենիզիոս ֆիլիպպոս փլորենտացի՝ այն ինչ էր նորածին մանուկ հնգամսեայ խօսել սկսաւ սքանչելեօք առ մայր իւր՝ տալ ողորմութի ծառայից ա՟ծածնի ։ 'Ի պատանեկութե կրթեալ յուսումն գիտութեց 'ի փարէզ գաղղիացւոց՝ բանիւք և օրինակօք յորդորէր զնս յա՟ծպաշտութի ։ Եկեալ 'ի հայրենիս՝ ընկալաւ յայտնութի 'ի սբ ա՟ծածնէ մտանել 'ի կարգ ծառայից իւրոց , որ դեռևս էր կառուցեալ ․ և յետ ճգնելոյ խստամբերութբ 'ի լեառն սենարեայ , և առաւել՝ մտածութբ չարչարանաց փրկչին , շրջեցաւ 'ի քարոզութի 'ի բազում

տե-

տեղիս . և սահմանեաց վերակացուն եօթնն
ցաւուցն որ ածամօր : 'Ի տալ պհանդերձ իւր
յողորմութիւն մերկ աղքատի բորոտի՝ իսկ
և իսկ բժշկեցաւ այրն : Յետ բազում երկե-
լի գործոց սրբութե և առաքինութե կասկած
առեալ՝ եթէ կամին զնա ընտրել 'ի հայրա-
պետութի հռովմայ , թաքեաւ և ոչ երևե-
ցաւ ուրեք , մինչև լուաւ զնստիլ գրիգորի
տասներորդի : Ննջեցաւ յամի 1285 ,
գիրկս արկեալ զխաչելութե ոն , 'ի դու-
տերբղօն քաղաքի , որ և դօտի . և 'ի տապա-
նէ նր եղեն և լինին սքանչելիք 'ի վր ամ
ախտաժետաց , կուրաց և կաղաց . պատմի
և յառնել մեռելոց : Ն . օգոստ . 23 :
Բեռնարդոս աբբայ պայծառաձորոյ՝ էր զաղ-
ղիացի 'ի պուրկոնեայ գաւառէ՝ ծնեալ 'ի
փոնտանոն . հայր նր տեսկեղինոս զօրա-
կան , և մայրն աղկիդիա . որոց եղեն վեց
ուստերք՝ առ հասարակ կրօնաւորեալք . և
մի դուստր՝ որ յետ մտանելոյ 'ի կարգ ձի՝
առանձնացաւ 'ի վանս կանանց : Մինչև
ծնեալ էր բեռնարդոսի՝ թուեցաւ մօրն տե-
սանել յերազի զշաւակն հաչել ոմ սկունդ .
և ապա լուաւ յառնէ սբյ ասել , թէ՝ շաւակ
քո լինիցի պահապան տանն այ հալածեմ թշր-
նամեաց եկեղեցւոյ , և հզօր քարոզ բանին
այ : 'Ի մանկութե ցաւ գլխոյ կալաւ զբեռ-
նարդոս . և ոմն 'ի պառաւանց եկեալ՝ առ-
նէր շշնջիւնս և կարդայմունս 'ի վր նր . 'ի
բաց ուտեաս մնաուկն . ոչ կամիմ ասէ այդ-

զխօսի դեղ մնոտի և չիմարական. և ինքն զիմեալ յաղօթս՝ փութապէս առողջացաւ։ 'Ի Զորագայլուցի ծննդեանն 'ի հսկել բեռնաւորոսի յեկեղեցւոջ՝ յանկարծակի երևեցաւ նմա զհասարակ գիշերաւ մանկացեալն Յս. յորմէ լցեալ անպատում ուրախութբ՝ ստէպ յիշէր զայն խորհուրդ անճառ։ Տասնամեայ էր բեռնաւորդոս, յորժամ փորձել կամեցաւ զնա դեւն՝ մուծանելով 'ի սենեակ նր զկին մի. իսկ սբն գոչեաց, գո՛ղք գո՛ղք. յայնժամ ընթացան ընտանիք տանն, և կինն կորեաւ ամօթով։ Յայլում նուագի կրեալ զփորձութի մարմնոյ 'ի տեսոյ կնոջ՝ ընկէց զանձն 'ի լիճ մի սառնասառոյց 'ի ձմեռայնի. և այնպէս յաղթեաց։ Եւ զի ինքն իսկ բեռնաւորդոս էր դեղով վայելուչ, եդ 'ի մտի մտանել 'ի կրօնս՝ զի հեռի լիցի 'ի տալոյ և յառնլոյ զգայթակղութի. և նախ աւանձնացեալ 'ի տան լռութբ, աղօթիւք և ընթերցուածովք, զկնի վախճանելոյ մօրն գնաց եմուտ 'ի կարգն կիստերսական կոչեցեալ, զոր հնգետասան ամօք յառաջ հիմնեալ էր տր աբբայն հռուբերտոս ը կանոնաւ սբյն բենեդիկտոսի՝ յաւելուածով երից երից բարեկարգութեց. իսկ բեռնարդոս առաւել պայծառացոյց զայն՝ որպս երկրորդ հիմնադիր։ Որև կամեցաւ և աւագեղբայր նր գու՛իտոն մտանել 'ի նոյն կարգ, ասէ ցկրտսերն յեղբարս՝ որ խաղայր ընդ մանկունս. մի՛նարդէ ( զի այս էր անուն նր),

նի̃ր ), ահա մեք մտանեմք 'ի կրօն , և ա̃մ ինչ,ք մեր քե́զ մնասցեն ։ Պիտի եւս մանուկն գգօն . և ո՞ր իրաւունք իցեն այս , ձեզ աւնուլ զերկինս , և ինձ զերկիր Թողուլ . և այնպէս յետ ոչ բազմաց հրաման առեալ 'ի հօրէն՝ հետևեցաւ և մինարդոս զկնի եղբարց իւրոց 'ի վանս ։ Իսկ սո̃ն բեռնարդոս էր ամաց քսան և երից 'ի կրօնաւորիլ իւրում յամի տ̃ն 1113 ։ Այնչափ միացաւ երանելին ընդ ա̃յ , մինչև 'ի վեր լինել քան զզգալիս և պզգայութիս . զի զկնի տարւոյ նորընծայութեն իբրև հարցաւ , թէ ո՞րպիսի իցէ յարկ սենեկի իւրոյ , ո́չ գիտաց պատասխանի տալ անգամ , արդեօք ընդ յարկա̂ւ նստի , եթէ յանյարկ խղկան . որ̃պս և ո́չ զայն գիտաց , եթէ երե՞ք իցեն պատուհանք եկեղեցւոյ , եթէ և ո́չ աւելի քան զմի ։ Այսպէս էր բոլորովին յա̃ծ պարապեալ . և ստէպ հարցանէր զանձն . բե́ռնարդէ առ ի՞նչ եկիր 'ի կրօն . որով և ս քան զևս կրթէր 'ի կատարելութի անդր . կանխէր յա̃մ գործս վանաց , և դնէր 'ի մտի , թէ ինքն ոչինչ առնէ , այլ այլք առնեն զա̃մ ։ 'Ի հրաժարիլ յԾէ նաև Ծականն եղբարց բեռնարդոսի՝ մտին և կանայք նոցա 'ի վանս կուսանաց ։ Եւ 'ի բազմանալ վանորէից 'ի կիստերսեան կարգէ՝ ձեռն արկ հաւուբերտոս աբբայ շինել և վանք մի 'ի տեղին կոչեցեալ քլարավալլիս , ո̃ր պայծառաձոր , 'ի լինգոն նահանգի՝ կեղտ անուանեալ

դաղղիոյ. և կայոյց առաջայ տեղւոյն զՀեռնարդոս. ուր բազում աշխատութի կրեալ նա իւրովքն համգերձ յերեսաց աղքատութե մինչև 'ի լրումն շինուածոյն. այլ ապթուն հսկողութի նր և համբերութիւն և ճգնութի էր առաւել շինութիւն կրօնիցն:

Ոմն թեթև պակասութիս եղբարց յանդիմանէր և ուղղէր՝ 'ի ննջել և 'ի յառնել. և ասէր. ոմն պակասութի յառաջ գայ յանհոգութե: Իսկ որ ոք ցանկայր մտանել 'ի վանս նր, ասէր ցնա. տես, զի 'ի կրօնսն անի մտանել հոգի նեթ՝ թողլով զմարմինն արտաքոյ: Ոսվէր զգեստս խոշորս և հնատիս, այլ կշտամբէր զորս զգենուին պատառատուննս և աղտեղիս, ասելով. աղքատութիւնն է ոչ հաճոյական, և ոչ անվայելչութիւն: Իսկ քարոզութի սրբյն առ անձին և հրապարակաւ՝ էր լի հոգւով, խորին վարդապետութք, և համեղ բանիւք. մինչև կոչիլ նմա մեղրածորան վկպ՝ 'ի գիր և 'ի բան: Հարցեալ՝ թե ուստի է այդ քո իմաստութի, Ետ պնի, յաղօթից և 'ի մտածութեց՝ ակնարկելով 'ի դաշտս և 'ի մայրիս. զի և ոչ գոյր ասէ իմ վրդպ այլ, բայց միայն ածաշունչ գիրք: 'Ի միում նուագի հոգևոր կրաւցաց անկաւ 'ի միտս նր բան իւնչ գեղեցիկ, և կամէր պահել զայն այլում երևելի պահու քարոզից. այլ լուաւ 'ի ներքուստ ասել, եթէ ոչ խօսեսցիս ըղաոճեալն 'ի ժամուս, և ոչ յայլում ժամու

տա.

տուացի. և իսկոյն խօսեցաւ: Ի քարոզելն
երբեմն եանց ԺԷ ամաս նր խորհուրդ ամբար-
հաւաճութե, թէ տեսանէ՞ս զանթիւ բազ-
մութեան ունկնդրաց քոց. յայնժամ ընդհա-
տեաց առ վայր մի զբանն, մինչև կամէր
կարճել իսպառ. այլ 'ի միտս եկեալ՝ եթէ
'ի դիմէն է այն 'ի թշնամւոյ բանին այ, ա-
սէ. ոչ վն քո սկսայ, և ոչ վն քո թողում.
և յառաջ տարաւ զքարոզն: Հայրն բեռ-
նարդոսի լսելով և տեսանելով զյառաջա-
դիմութի զաւակաց իւրոց 'ի նր վարս՝ հրա-
ժարեցաւ և ինքն յԾէ. և մտեալ 'ի կրօն՝
անդ կատարեաց զկեանս սրբութե: Մինն
յեղբարց բեռնարդոսի գերարդոս անուն
տնտես վանայն ասէ ցնա վարանմամբ. չու-
նիմ ինչ այսօր 'ի պէտս կերակրոյ եղբարց
և այլ իրաց կարևորաց. պխնսի եւ սՔն. մի
ինչ հոգար, յուսամ յԱծ՝ որ ոչ թողու զծա-
ռայս իւր. և ինքն առանձնացաւ յաղօթա-
րանն: Իսկ ահա եհաս 'ի դուռն վանիցն տէ-
կին մի մեծ. եւ կոչել զաբբայն բեռնար-
դոս, և ասէ ցնա. առ զօրհնութիս զայս,
և աղօթս արա հայր վն առն իմոյ հասելոյ
'ի դրունս մահու. և նա ասէ. երթ 'ի տուն
քո, և ՔՍ հաւատոյ քոց գտցես զայր քո ող-
ջացեալ. և եղև այնպէս: Գուլիելմոս եպս
սերոտ քարեկամ բեռնարդոսի տեսեալ զնա
տկարացեալ յոյժ հիւանդութե յերեսաց
բազում ձգնութեց՝ եւ տանել զնա 'ի գիւղ
մի դիւրել անձին փոքր մի. և կարգեաց

նմա զոմն 'ի գեղջկէից 'ի սպասաւորութիւն
որ հանդիպեցաւ շինականագոյն 'ի գեղ-
ջուկս. բայց բեռնարդոս հնազանդ լինէր
նմա յամի իբրև մեծաւորի: Այդ իբրև եկն
եհարց զբեռնարդոս ոմն 'ի բարեկամաց, թէ
ո՞րպէս կեաս հա՛յր. պինդի ես ա՞յն, յո՛յժ
բարւոք. զի որ ցայսվայր հնազանդէի բա-
նաւորաց, ուսայ հնազանդ լինել և անբա-
նի. և թերևս պակասեալ է իմ 'ի նմանէն,
վասն այն կամք եղեն այն՝ զի այժմ զթերին
լցից: Իբրև դարձաւ 'ի վանս, ոչ թէ համ-
գիստ եգիտ 'ի շէնս, եա զանձն յառաւել
ձգնութի, 'ի պահս, և յոտնակացութիւն
աղքատութե. մինչև երբեմն անկանիլ յերկիր
իբրև զմեռեալ. ունէր և ցաւ ստամոքաց,
և 'ի տանջանս էր նմա ամ կերակուր. այլ
ինքն յամի զուա՛րթ. զգենոյր 'ի ներքոյ և
խարազն խոշոր. բայց իբրև եղև այլոց տե-
սանել զայն, 'ի բաց եհան յանձնէ վաղվա-
ղակի: Հասել ոմանց՝ թէ խիստ ձգնութին
բերէ զխօթութի, ասէր. լա՛ւ է կրօնաւո-
րաց լինել երբեմն հիւա՛նդ. զի բազում
շահ տեսեալ է իմ 'ի հիւանդութե. ըստ
այնմ, յորժամ մարմինս տկարանայ, հոգիս
զօրանայ: Ստէպ յղէին առաջնորդք եկեղե-
ցեաց զբեռնարդոս 'ի ծանր ծանր պէտս ժո-
ղովրդեանն այ. որով առաւել ևս հանդի-
սացաւ սրբութի և իմաստութի նորա: 'Ի
գնալ երբեմն գրաստու յուղի երկար ը եղ-
բարս՝ իբրև խօսէին նքա զձէն, ան որով
ան-

ամնցանկալին զօրն ողջոյն , բեռնարդոս հայր-
ցանէր , կո՞ր լեռ՛ ասէ ․ զի ցայնժամ խոր-
հուրդք նր էին առ ած , և չէր նր տեսեալ
զլեռն ․ և յայսր ամի մր գանգատէր ստէպ
զցնդմանէ մտաց իւրոց յաղօթս , և զան-
հաստատութէ սրտից մարդկան ։ Զայն
լուեալ ուրումն 'ի շինականաց՝ ասէ ․ զի՞նչ
ցնդումն իցէ մտաց , զի ես յորժամ յաղօթս
կամ , ո՛չ խորհիմ ինչ այլ ։ Ասէ ցնա սբն ․
եթէ կարասցես զմի հայր մեր ասել՝ առանց
ցրուելոյ մտացդ յօտար խորհուրդս , քեզ
տաց 'ի պարգև զձորին՝ որ է ը իմև ։ Ուրա-
խութբ սկսաւ այրն ասել զհայր մերն ․ այլ
չև 'ի կէսն հասեալ՝ ասէ ը մտս , արդեօք
'ի տալ ինձ զձորին՝ տացէ՞ և զզարդս նր ․ և
այնչափ զբաղեցան միտք նր յայս խորհուրդ ,
մինչև խոստովան եղև զարդարին ։ Բերին
երբեմն առ բեռնարդոս զկին մի դիւահար ․
և նա ասաց տանել 'ի տաճար սբյն սիրոսի ․
և իբրև չեղև ինչ օգուտ , ածին անդրէն առ
բեռնարդոս ․ իսկ դևն սկսաւ այպանել զսբ-
սն , և ասել ․ ո՛չ սիրիկն և ոչ բեռնարդիկն
կարէ հանել զիս ։ Յայնժամ ասէ սբն ․ ո՛չ սի-
րոս և ո՛չ բեռնարդոս հանէ զքեզ , ա՛յլ հանե-
լով հանցէ տր յս քս ․ և զայգ ը բանիւն տանե-
ջեալ՝ ել այսն չար ։ Սմն յազգականաց սբյն
ել 'ի կրօնս նր , և գնաց յայլ թուլացոյն
վանս ․ զայս լուեալ սբյն՝ մինչդեռ էր բա-
ցօթեայ 'ի դաշտի , գրեաց առ նա դիր յոր-
դորական՝ 'ի ժամուն , յորում տեղայր անձ-
րև

րև յորդ. այլ զփրն մնաց անեթաց։ Ը. ՅԼ ումն
կրօնաւորեալ 'ի վանս նր̃. կամէր դառնալ
յն̃ առ սէր խաղաղոյ դրամովք ըն̃ չար. առ.
վորութեն առաջնոյ. կոչեաց զնա բեռնաւր.
գոս, և տուեալ նմա դրամս առատապէս՝
ասէ. ա՛ռ է՛րթ խաղա՛ առ մի նուագ, բայց
պայմանաւ բաժանելոյ զշահն 'ի մէջ մեր.
և ինքն աղօթեաց՝ զի կորուսցէ զմին. ո՛չ
և եղև իսկ. վ՞ս դարձաւ այրն կորանօք.
և յայնմհետէ ազատ եղև 'ի փորձու Է̃ ան.
տի, և դտաւ կրօնաւոր ընտրեալ։ Ի բազ.
մաց անտի երևելի աշակերտաց բեռնարդո.
սի եղև եւգինէոս Գ̃ հայրապետն հռովմայ։
Հրաւիրեցաւ և ինքն բեռնարդոս յերիս ա.
թոռս եպսուն. բայց և ո՛չ զմին էառ յանձն։
Իսկ յաւուրս իննովկենտիոսի պապին երկ.
րորդի բազմօք աշխատ եղև բեռնարդոս հա.
ւանեցուցանել զիշխանս և զթագաւորս 'ի բաց
կալ յանհարազատ պապէն՝ որ նստաւ հա.
կառակաթոռ՝ անակղետոս երկրորդ ան.
ուամբ. միայն խոստանիրա գտաւ դուքսն
աքուիտանիոյ կամ կուանդոնեայ 'ի գաղ.
ղիա. վ՞ս յորժամ կամէր սա գալ երբեմն
խօսել ը̃ բեռնարդոսի, իմացեալ զայն սր̃յն
'ի վ՞ր խորանի 'ի ժամ պատարագի, յղեաց
ասել նմա, զի կացցէ առ դրան, և մի՛ իշ.
խեսցէ մտանել յեկեղեցի՝ ո՛չ բանադրեալ.
և ինքն մտա 'ի կատարումն պատարագի ա.
ռեալ զամենասուրբ խորհուրդն մարմնոյն՝
ել 'ի դուռն եկեղեցւոյ. և հրամայէր դիմօք

գաւառս, և զիրս բազումս լի հոգւով այ և համեղ բանիւք ։ 'Ի քաղցրութե վճիտութե սորա և յառաւել ջերմեռանդութե առ Տր ածածինն՝ եւ աւանդութիւն այն, ոչ թէ զկաթն կուսին իցէ դիեցեալ . զի և հոգեկիր Հռետորն մեր ասաց . * ահա կաթիլ մի կաթին քումդ կուսութե յանձն իմ անձրևեալ՝ կենաց ինձ զօրէ ‖ ։ Այլ է և տեսիլն, որ երևեցաւ բեռնարդոսի մօտ 'ի վախճանն իւր . քանզի տեսանէր զինքն ածեալ յատեանն այ, ուր բանսարկուն չարախօսէր վս նմ դուզնաքեայ բանի . յայնժամ գոչեաց բեռնարդոս . գիտեմ, զի ես ինև չեմ արժանի կենացն յաւիտենից . այլ Տր իմ Յս Քս՝ կրկին իրաւամբք փրկէ զիս . զի է որդի այ, և զի եհեղ զարիւն իւր վս իմ . և ոչ ինքն է Տր և ժառանգ արքայութե, յաղագս մարդասիրութե իւրոյ կամի և զիս առնել իւր ժառանգակից . և 'ի բանից աստի հալածական եղև չարախօսն ։ Լ . օգոստ . 20 ։

Բեռնարդինոս սենացի՝ այր ցանկալի զուարթնոց, պտուղ աղօթից բարեպաշտ ծնողաց՝ տուղղիոսի և ներայ, ծնաւ 'ի նահանգին մասսայ մօտ 'ի սենա քաղաք իտալիոյ՝ յամի 1380 . 'ի տօնի ծննդեան տիրամօրն . և եռամեայ որբացեալ 'ի մօրէն, ոչ և վեցամեայ 'ի հօրէն՝ սնաւ ը հովանեաւ մօրաքեռ իւրոյ դիանայի ։ Նա եղև մանուկն բեռնարդինոս ուսումնասէր և փոյթ 'ի վարս առաքինութե . ստէպ կանխէր յեկեղեցիս և 'ի

քա

'ի ձեռս առին զքօրս իւրեանց, զի թերևս նմ̃ լուիցէ. բայց Թովմաս ևս քան զևս հաստատեցաւ 'ի կոչմանն իւրում. մինչ զի և մին 'ի քերցն հայեցեալ յօրինակ նր̃՝ եմուտ 'ի վանս կուսանաց։ Մինն իւր յարեան եղբարքն ցատմամբ 'ի վ̃ր Թովմայի, և յետ բազում թշնամանաց՝ պատառեցին զսքեմն նր̃ 'ի բազում ծուէնս. մինչև մնալ նմա մերկ։ Իսկ պատանին սքանչելի լուութե̃ տարեալ ամ̃ի, 'ի մեկնիլ եղբարցն ժողովեաց զծուէնս, և կցկցեալ՝ արկաւ անդրէն զանձամբ։ Յայնժամ և մախացող բանսարկուն գրգռեաց զեղբարս նր̃ յայլ չարութի̃. գտին կին մի գեղեցիկ 'ի կանանց անզգամաց, և զարդարեալ զնա՝ մուծին 'ի սենեակ Թովմայի. իսկ Թովմաս գոչեաց 'ի սրտէ առ ա̃ծ և առ տիրամայր կոյսն. և գտեալ խանձող մի փայտի՝ պհետ պնդեցաւ փորձողին որպս 'ի մտանել և 'ի խանձողել զնա. մինչև կորագլուխ փախչել նմա 'ի տեղւոջէն։ Յայնժամ փակեալ ոե̃ն զդուրս խցին՝ արար նովին խանձողիւ փայտի զնշան խաչի յորմն. և ծունր եդեալ առաջի՝ խնդրէր 'ի ա̃յ բազում արտասուօք շնորհել նմա զձիրս մշտնջենաւոր մաքրութե̃. և իբրև յերկարեալ յաղօթս՝ 'ի քուն մտ̃էր թմբութե̃, երևեցան նմ̃ հրեշտակք երկու, և ասեն. լուեալ եղեն աղօթք քո, և ա̃ծ առաքեաց զմեզ՝ ածել ը̃ մէջ քո գօտի անխախտելի մաքրութե̃, և անդէն գօտի ածին նմա պնդապէս զսպելով. մինչև

վարժնուլ նմա մեծաձայն աղաղակաւ . ՚ի ներքս վաղեցին պահապանք ՚ի ձայնէն , այլ նա ոչ եհան զբանն ՚ի վեր . և ինքն երանելին յետ այնպիսի շնորհաց ևս ք̃ զևս անձնապահ լինէր յի̃մաւթից ցանկութե և ՚ի խօսակցութե̃ կանանց : Յետ երկուց ամաց արգելանացն Թովմայի՝ մայր նր̃ հարեալ ՚ի խղձէ և ՚ի գթոյ՝ թոյլ ետ նմա իջանել ՚ի ծածուկ սանդղով ընդ պատուհանն , ուր սպասէին նմա ոմանք ՚ի դոմինիկեանց կրօնակցաց . որք փութապէս առեալ տարան զնա ՚ի Նէապօլիս , և անտի ՚ի Հռովմ , և ապա ՚ի փարէզ . ուստի էանց նա ՚ի կողմնս գերմանացւոց , և աշակերտեցաւ մեծին ալբերտի . և ապատայել ՚ի հոգւոց սրտին՝ ետ զանձն հանդարտութե̃ ՚ի ցանկալին իւր ուսումնասիրութի , գերազանցեալ զի̃մ դասակցօք . և զի էր սիրող լռութե և ծանր ՚ի խօսել , ո̃պ և մարմնով դէր , կոչէին զնա աշակերտակիցքն եզն անխօսուն : Իսկ մեծն ալբերտ՝ որ գիտակ էր առաքինութե և ուշիմութե նր̃ , ասէ ցընկերսն նր̃ . եկեսցէ ժմ՝ յորում այնպէս հզօրագոյն գոչեսցէ եզնիկդ այդ , մինչև լսելի լինել ը̃ ամ̃ . զորոյ և զփորձ իմաստութեն տեսեալ ամենեցուն հանդերձ յետին խոնարհութե̃ , պատկառէին ՚ի նմանէ : Յետ կատարելոյ զա̃ծաբանութի՝ գնացեալ ՚ի փարէզ հրամանաւ ալբերտի՝ եղև դասասաց գրոցն վճռոց . և իբրև կամեցան տալ նմ̃ պատիւ վ̃դպականն ,

նա

նա հրաժարէր առ խոնարհութեան՝ պատճառելով և զհասակ իւր, զի չև էր երեսնամեայ. մինչև ետես 'ի տեսլեան զոմն ծերունի՝ որ ասաց նմա հնազանդ լինել առաջարկութեան առաջնորդաց, և դնել բնաւեան 'ի բեմասացութեան իւրում զաւածն դաւթեան. արբուցանէ զլերինս 'ի շտեմարանաց (կամ 'ի քարձանց) իւրոց: Դէպ եղև սմին գալ 'ի կողմանս հռովմայ առ մտերիմն իւր կարդինալ հռիքարտոս. որոյ առաջի յայլ թահարեալ զերկու օրէնսգէտ հրէայս, և դարձոյց զնոս 'ի քս: Նա էր յոյժ յաջողեալ 'ի վրդպութեան բանիւ և գրով. և այն առաւել զօրութեամբ աղօթից, յոր տքնէր հանդերձ այլովք ճգնութեամբք. և ստէպ յափշտակէր յաղօթս. և սկիզբն ամ բանից և գործոց նր էր աղօթք հանդերձ արտասուօք, որով և քարոզք նր էին զօրաւորք յոյժ: Ի մերձենալ կնոջ տեռատեսի 'ի քղանցս սմին՝ առժամայն բժշկեցաւ 'ի նէապօլիս քաղաքի: Ի գրել սմին զմեկնութի եսայեայ՝ երևեցան նմա սրբն պետրոս և պօղոս, և յայտնեցին զիմաստ բանին՝ զոր աղօթիւք խնդրէր յայ: Ի հիւանդանալ հռէգինալտոսի՝ որում յայտնէր թովմաս զամ խորհուրդս իւր, գնաց 'ի տես նր. և աղօթս արարեալ 'ի վր նորա՝ հանդերձ նշխարօք սբյ կուսին ագնեսի՝ առողջացոյց: Ի գրել զպաշտամանց սբյ հաղորդութեան՝ յորժամ ծունր եդեալ կայր թովմաս առաջի խաչելոյն, խօ-

սեցաւ առ նա խօսելեալ փրկիչն . բարիոք գրեցեր զինէն Թովմաս , արդ զի՞նչ վարձ խնդրես յինէն . և նա ասէ . զքեզ միայն տ՟ր իմ : Մինչդեռ 'ի սեղանի էր լուդովիկոսի ը՟ Թ՟գրին գաղղիոյ ը՟ կարդինալի միում, յանկարծ բախեաց աջովն զսեղան Թովմաս՝ ասելով, գտի զձեռնարկութի՟ն՝ զոր խնդրէի ը՟դդէմ այս ինչ մոլորութե՟ . և յապշել նմա մեծաւորին՝ որ նստէր առ նմա, թէ գիտեա՛ զի 'ի սեղան Թ՟րի ես , ասէ . Թո՛ղ ինձ հա՛յր՝ զի ոչ գիտէի : Նա և առաւել 'ի ժամաղօթից պէտք լինէին դարձուցանել զնա 'ի զգայութի՟ , զի երբեմն այնչափ վերանայր , մինչև հազի՟ հուր կա՟մ ճրագ մերձեցուցանելով ուշաբերէին զնա : Կամեցաւ պապն կղեմէս դ՟ առնել զնա արքեպ՟ս նեապօլսոյ . այլ նա չէառ յանձն . նոյնպ՟ս փախչէր յա՟մ փառաց : Յաւել ուրումն զփարէզ քաղաքէ , քանի՞ մեծ է մեծութիւն սորա , պ՟խնի ետ Թովմաս . առաւել է քան զայն՝ մի և եթ ճառ ոսկեբերանի 'ի մեկնութեան մատթէի : Սքանչելի են և ա՟մ գրուածք նորին Թովմայի՝ մանաւանդ ա՟ծաբանականք , հրեշտակային նրբութ՟բ և պարկեշտութ՟բ . և ոչ միայն անձամբ գրէր , այլև երբեմն երից և չորից նօտարաց բանս 'ի բերան դնէր 'ի վ՟ր զանազան խնդրոց : Երկուք ումանք տեսին աստղ լուսափայլեալ 'ի վ՟ր գլխոյն Թովմայի . և ինքն ետես զհոգի քեռն իւրոյ վախճանելոյ՝ որ խնդրէր առնել

նել զյիշատակ նր 'ի նոյն պատարագի , որպ և զմիւս քեռ իւրոյ · իսկ միւս քոյրն մեր ասէ՝ եհաս յօԹևանս արքայութե երկնից ։ Այս յետ տարւոյ փոխեցաւ յերկինս և ինքն երանելին Թովմաս՝ մինչդեռ էր 'ի վր ճնպհի 'ի վանս կիստերսեանց , հանդերձեալ գնալ 'ի ժողովն լուգդունի , 'ի հասակի ծ ամաց՝ յամի 1274 · և եղեն պէսպէս նշանք և սքանչելիք յետ վախճանի նր · որպ և ի ժմկս ժմկս 'ի բանալ զգերեզմանն սրբյն՝ բուրէր հոտ անուշութե ։ 'Ի դասակարգել զնա ընդ սրբս յամի 1323 · տեսաց պապն յովհաննէս իբ · այնչափ հրաշս գործեալ հրեշտակային վարդապետս՝ որչափ պրակս գրեաց ածաբանականս ։ Ի · մարտ · 7 ։

Թովմաս Եպիսկոպոս Վալենտինացւոյ , ծն 'ի նոր գեղջէ , էր 'ի վիճակէն տոլէտայ սպանիացւոց՝ ծնեալ յամի 1488 · և մնեալ 'ի նոյն վարս՝ առաւելեալ ողորմածութբ , զի և 'ի տղայութե տեսեալ զաղքատս՝ մերկանայր զհանդերձս իւր , և արկանէր զնոքօք ։ Մինչդեռ յուսմունս էր 'ի դպրատան կոմպլուտոնի , լուեալ զմահ հօրն՝ եկն և բաշխեաց զամ ինչս 'ի սնունդ աղքատաց կուսից · և ինքն դարձ արարեալ յուսումն՝ ներհուն գտաւ , և կարգեցաւ դասատու փիլիսոփայութե և ածաբանութե 'ի նմին համալսարանի · այլ վս առաւել փութոյն 'ի հոգևորս՝ գնաց և եմուտ 'ի կարգ օգոստինեանց անապատաւորաց յամի իբր 1517 ։ Այս յառաջադէմ ե-

ղեալ յամ առաքինութիւն կրօնի՝ ոչ նորո-
գիչ ցուցաւ կարգին: Հրաժարեալ յարք-
եպսուէ Կրանատայ՝ հարկեցաւ լինել եպս
Վալենցայ. և ոչ նուաղեալ ՚ի կարգաց բա-
րեաց ձգնութե և աղօթից իւրոց՝ հանդի-
սացոյց զաղքատասիրութի, մինչև զմահիճս
իւր ևս տալ աղքատաց. մինչ զի յանկանիլ
իւրում ՚ի մահիճս՝ ՚ի փոխ էառ զտուեալն
յիւրմէ յողորմութի: Մեռաւ յամի 1555.
կէ. ամաց. և արար ած նովաւ բզմ սքանչե-
լիս ՚ի կենդանութե և ՚ի մահուան. մանա-
ւանդ ՚ի լնուլ զշտեմարանս նր ՚ի պէտս աղ-
քատաց. կենդանացաւ և մանուկ մեռեալ՝
՚ի մերձենալ ՚ի տապան սբյն: Ի. սեպտ.

18:

Թովմաս Եպիսկոպոս ընկտուղաց մփ ընկլուզաց,
այն է Թովմաս պեքետ՝ արքեպս կանտուա-
րիոյ կմ կանտորբերայ անգղիացւոց, ծնն-
դեամբ ՚ի լոնտուայէ: Սա էր յաւուրս կիռ-
մանուէլ կայսեր և չնորհալւոյն, այր զօրա-
ւոր հոգւով, և հովիւ քաջ. որ առ նախան-
ձաւորութե օրինացն այ և իրաւանց եկեղեց-
ւոյ՝ ըդդէմ եկաց անարժան գործոց արրի-
գոսի երկրորդի անգղիացւոց արքայի. և
հրամանաւ աղեքսանդրի գ հռովմայ հայրա-
պետի՝ ընդ բանիւ արար զկթփրն և զհամա-
խոհս նր. և ինքն իբրև հալածական շրջե-
ցաւ արտաքոյ աթոռոյ իւրոյ. այլ ՚ի ցուցա-
նել արքայի կզղջումն՝ դարձաւ անդրէն ՚ի
եպսն. զոր ընկալան ժողովուրդքն այմ մե-
ծաւ

ծաւ ցնծութ՟ : Բայց թգ՟րն յետ սակաւուց
միւսանգամ գրգռեալ ընդդէմ եպ՟սին՝ եւ
սպանանել զնա 'ի ձեռն չորից իշխանաց իւ-
րոց , մինչդեռ կայր երանելին 'ի վ՟ր բեմի
առաջի ս՟բ սեղանոյն . և եղեն յայնժամ
սքանչելիք մեծամեծք , մինչև ապաշաւել և
թգ՟ւորին , և տալ թաղել զնա պատուով 'ի
ներքոյ խորանին՝ ուր հատաւ գլուխ ս՟բյն .
և բազում ևս նշանք գործեցան 'ի տապանէ
նորա . վ՟ոյ և աղեքսանդր հայրապետ կար-
գեաց զնա 'ի թիւ ս՟րց վկայից . և եղև կա-
տարումն ն՟ր յամի 1170. ոժթ . ( կմ՟ ըս՟ յայս-
մաւուրաց . ոժգ.) 'ի հասակի ծ՟ը ամաց :
յուլ . 9 : Ի . դեկտ . 29 :

# Ի

Իգնատիոս ա՟ծազգեաց Հայրապետ տօնելի .
Հո . Ի . 72 :

Իգնատիոս լոյոլայցի հիմնադիր կարգին յիսուսեանց
էր սպանիացի , ծնեալ յամի 1492 . 'ի լոյո-
լա կանդաբրիոյ . և էր զինուորեալ 'ի դուռն
արքունի . և եղև նմ՟ վէրս առնուլ 'ի մարտ-
կոցին պամպելոնայ , և յանկանիլն 'ի մա-
հիճս՝ 'ի դիպուածով կարծեցեալ ընթերց-
ուածոյ գրոց վառեցաւ զհետ երթալ ք՟ի
և ս՟րց ն՟ր : Իբրև եկն 'ի լեառն սերրատոն՝
կախեաց զզէնս իւր առաջի խորանի սուրբ
ա՟ծածնին , և զհանդերձսն պատուականս
տուեալ մուրողի՝ ինքն զգեցաւ քուրձ , և

գնաց

գնաց 'ի մամրէսա . ուր մուրողութ̅բ կե-
ցեալ՝ հացիւ և ջրով շատանայր , գետնա-
խշտի լինէր , շղթայ գօտի ը̅ մէջ ածէր 'ի
ներքոյ քրձին , երկաթի խարազանօք զանձն
ձաղկէր արեամբ չափ . և ներքին լուսաւո-
րութ̅բ մխիթարէր յԱ̅յ՝ խորհրդազգած լի-
ներ վերին տեսութ̅եց . և յայնպիսում ժա-
մանակի դեռ հետեւակ 'ի գրոց՝ յօրինեաց
զհոգեւլից գիրս կրթութ̅ե : Սա քանզի տըն-
կեաց ա̅ծ 'ի սիրտ նր̅՝ հոգեւոր գիտութ̅բ սա-
տար լինել հոգւոց , զհետ եղև այնուհետև
կատարեալ դպրութ̅ե՝ սկսեալ 'ի քերակա-
նութ̅է , կրելով յայնմ վայրի բազմադիմի
հալածանս և նեղութ̅իս , բանտս և կապանս,
գանս և խոշտանգանս . այլ տակաւին ու-
րախ էր և փափաքող կրել զառաւելն 'ի մե-
ծագոյն փառս ա̅յ : 'Ի լուտետիա , այն է
փարէզ գաղղիացւոց , ընտրէր իւր գործա-
կիցս իննս 'ի գիտնաւոր արանց և 'ի վ̅րդպաց
յայլևայլ ազգէ՝ անդ 'ի լեառն վկայից կո-
չեցեալ՝ զառաջին հիմն էարկ կարգին իւրոյ,
որ կոչեցաւ ընկերութ̅ի յս̅եանց . և եկեալ
'ի հռովմ և հաստատութ̅ի ընկալեալ՝ յա-
ւել 'ի վե̅ր երից կրօնաւորական ուխտից ըզ-
չորրորդն վս̅ առաքելական քարոզութ̅ե ը̅
հնազանդութ̅բ սր̅յ գահին . և սկսաւ սփռել
զաշակերտեալսն ը̅ ամ̅ տիեզերս՝ 'ի դարձ
անհաւատից և հերետիկոսաց մինչև 'ի հըն-
դիկս . քանզի և յայնու ժամանակաւ բո-
կենէր սերմն ժանտ աղանդոյն լութերի ,

որոյ

որոյ գլխաւոր եղեւ սրբն իգնատիոս ։ Նաեւ
փոյթ նորա եւ իւրոցն 'ի հոգեւոր կրթութն հա-
ւատացելոց էր անձանձիր ։ մինչեւ նոր հոգի
զգենուլ ամենեցուն, եւ եռալ 'ի գործս ած-
պաշտութեն՝ ջերմեռանդն կարգօք ։ Նորա
իգնատիոս եւ դպրոցս մանկանց 'ի հռովմ եւ
յայլ տեղիս, եւ պարգեւացոյց զգիտունս ածմ
ղոյգ Է հոգեւոր կենաց ։ շինեաց վանորայս
եւ հիւրանոցս եւ կրթարանս արանց եւ կա-
նանց ։ եւ որ էր Է նմա 'ի յաջողել զգործն
ոյ 'ի շահ հոգւոց ։ յոր այնչափ էր անձնա-
տուր երանելին, մինչեւ զանձն մոռանալ եւ
դնել 'ի վն փրկութե այլոց ։ Ո՛. հաւատ էր
եւ Է դէմ գիճայ 'ի հալածել զնա, որք եւ այ-
լովք սքանչելի նշանօք փայլեն ։ մինչեւ տե-
սանել երբեմն սրբյն փիլիպպոսի ներեան այ-
լովքն հանդերձ՝ լոյս երկնային փայլատա-
կեալ յերեսս իգնատիոսի ։ Նոտես եւ ինքն
իգնատիոս զհոգի միոյն յընկերացն իւրոց վե-
րաթեւեալ յերկինս փառօք ։ որք եւ 'ի կառա-
սնեան լերին եսես զհոգիս ոմանց ոմանց
յիւրոցն թռուցեալ Է հրեշտակս յերկինս ։
Նրեւեցաւ եւ ինքն կենդանւոյն միում յըն-
կերաց իւրոց՝ որ էր 'ի հեռաւոր քաղաքի,
եւ անձկայր տեսութե նր ։ Նաեւ յետ բազմա-
պատիկ մեծամեծ գործոց՝ լի արդեամբք
փոխեցաւ առ տենչալին իւր քն յամի 1556 ։
եւ որ արար նորաւ հրաշս բազում են յետ վախ-
ճանի նր ։ Յ. յունվ. 31 ։

Իլարիոն կամ հիլարիոն՝ սր հայրն՝ էր 'ի գա

ղայ

ղայ պաղեստինոյ առ մեծն կոստանդիանո-
սի՛ և որդւովք նորա, զաւակ հեթանոսաց, եկեալ յաղեքսանդրիա վասն ուսման, և անդ հաւատացեալ 'ի ք̅ս և մկրտեալ. որ և աշակերտեալ նմա հօրն անտոնի աբբայի 'ի հասակի ժէ ամաց՝ ուսաւ զամենայն կարգս կրօնի. և եկեալ 'ի գազա՝ իբրև եգիտ զծնօղս իւր մեռեալ, բաշխեաց աղքատաց զամենայն ինչս նոցա. և ինքն չոգաւ յանապատ մայեղինաւ՝ ճրգնեալ 'ի պահս և յաղօթս յանձուկ խցի. մինչև յաղթել զամենայն փորձանաց դիւին, և առնուլ շնորհս սքանչելեաց։ Շինեաց վանս 'ի պաղեստին և յերկրին ասորւոց, եղեալ առաջնորդ բազմութեան եղբարց, և հայր հարանց. այլ փախուցեալ 'ի փառաց մարդկան՝ սկսաւ շրջիլ այսր և անդր. մինչև վախճանեցաւ 'ի կիպրոս ութսունամեայ՝ յամի 371. և յետ ժ̃ ամաց աշակերտ նորա իսիւքիոս եբարձ զմարմին նորա անապական, և տարաւ յառաջին վանս նորա 'ի պաղեստին։ ⁘

Ի. հոկ. 21։

Իլարիոս կամ հիլարիոս եպիսկոպոս պիկտաւիոյ գաղղիայւոյ՝ ժամանակակից նախընթացին, եր ծննդեամբ յակուիտանիոյ՝ որ և գուասկոնիա, այր հզօր բանիւ և գրով. որ նախ մտեալ 'ի կարգ Ջի, այլ ոչ յանապատի քաղաքավարեալ առաքինութ̅՝ ընտրեցաւ յեպիսկոպոսութ̅. և 'ի ժամանակս հալածանաց կոստանդեայ կայսեր՝ պարիսպ ամուր եղև ուղղափառաց և ախոյեան ընդդէմ ա-

րիա-

ըրանոսայ , և արտասահմանեցաւ 'ի Փռիւ-
գիա . ուր և յարոյց զմեռեալ մի , և գրեաց
զգիրսն յաղագս երրորդութեան : Զկնի չո-
րից ամաց հարկ եղև նմա գտանիլ 'ի ժո-
ղովս Սելևկիոյ Իսաւրացւոց . և անտի ան-
ցեալ 'ի Կոստանդինուպօլիս՝ պապանձեցոյց
զարիոսեան եպ̃կոպոսն . մինչև եղև նմա
հրաման դառնալ յաթոռ իւր . ուր անա-
րատ պահեաց զհօտն , և յետ բազում հո-
գևոր և գրաւոր վաստակոյ՝ փոխեցաւ առ
Տ̃ր յամի 369 : Ի . յունվար . 14 :

Ինդոս և Դոմնա տօնելիք . հտ . Ա . 158 :

Իսահակ Նահապետ տօնելի . հտ . Գ . 229 :

Իսահակ պարթև . տես Սահակ :

Իսահակ կմ̃ Սահակ պարոնէն՝ նոր վկայ , որոյ առա-
ջին անունն յուսուփ , էր 'ի շահաստանայ
դավրիժու , երիտասարդ չարաճճի՝ դաւան
թշնամի քրիստոնէից . այլ զղջացեալ
տեսլեամբ տանջանաց դժոխոց և փառաց
արքայութեան՝ եղև քրիստոնեայ . և ուսեալ
զհայերէն դպրութի՝ խելամուտ եղև հին և
նոր կտակարանաց . և զի քաջ գիտէր և ըզ-
գիրս այլազգեաց՝ վիճէր և յաղթահարէր
զնս̃ . նմին իրի կրեաց բազում չարչարանս
'ի բազում տեղիս . մինչև հասեալ 'ի շամա-
խի շիրուանայ , և դատեալ յատենի՝ ասէր
ցդատաւորն . մեծ երախտիս ինձ առնես ,
եթէ հրով այրես զիս 'ի նշանակ սիրոյ իմոյ
բորբոքելոյ 'ի քս̃ած : Ապա հարին զգլուխ
վկային հաստ բրով , մինչև վայթիլ ուղղոյն

Է

ԷՌ ամեան. և ապա քարկոծեցին, և զմար-
մինն արկին 'ի հուր. և ծագեաց լոյս յերկ-
նից 'ի վր նշխարաց սրբոյն՝ ականերև ամն այլ-
ազգեաց, յամի 1417. պկզ: Հ. ապր. 18:

տես և Սահակ:

Իսիդորոս աղեքսանդրացի զօրական առ դե-
կոսիւ գնաց 'ի քիոն կղզի ԷՌ նաւական զըն-
դի. և հարիւրապետն յուլիոս իմացեալ
զքրիստոնէութի նր՝ մատնեաց նումերիա-
նոսի հազարապետի. և 'ի խոստովան լինել
վկային քաջութե զքն ամծ՝ յետ պէսպէս
խոշտանգանաց հատին զգլուխ նորա. զոր
բարձեալ թաղեաց ամոնիոս եր քահանայ.
որ և զկնի մարտիրոսացաւ 'ի հելլեսպոն-
տոս: Հ. մայ. 14, կմ 15: Յ. մայ. 14:
Լ. փետր. 5. և մայ. 15. իսկ երկու վկայ
համանուն:

Իսիդորոս եպս հիսպաղայ 'ի սպանիա՝ ծնեալ
'ի ձեռս երկուց եղբարց իւրոց որք եպսաց
լեանդրոսի և փուլգենտիոսի, և վարժեալ
հռովմայեցի՝ հելլենացի և եբրայեցի դըպ-
րութեամբ, եղև զօրաւոր քարոզ բանին և
յաղթահարող արիանոսաց գոթացւոց. և
դեղեցիկ առաքինութե զարդարեալ՝ փայ-
լեաց գրով և բանիւ և օրինակաւ. շինեաց
և վանորայս 'ի սպանիա, և ծաղկեցոյց ըղ-
միականեցական վարս. կառոյց և դպրատունս,
և աշակերտեաց զբազումս. Ջոխեաց և ըզ-
գլուխս անգլուխ հերետիկոսաց. և լի ար-
դեամբք փոխեցաւ յերկինս՝ յամի 636: Լ.

ապրիլ. 4:

Ուրայէփա կին երուսէ կոյս միանձնացեալ ժէ ամաց՝ էր աղեքսանդրացի դուստր քահա-նայի. և յելանելն երբեմն ՚ի ճգնարանէ հրամանաւ մօր վանից բերել ջուր ՚ի մեր-ձակայ աղբերէն, ետես՝ զի կուսկրանոս իշ-խանին ատանէր ՚ի քարշ կապանօք զքրիստո-նեայս, զայրս և զկանայս, զկրօնաւորս և զկուսանս, զքահանայս և զսարկաւագունս. և մատուցեալ առ կուսանն՝ հարցանէր ըզ-պատճառն. և նք ասեն. ՚ի նահատակութի երթամք՝ ընդունել զպսակ փառաց յարքայու-թե երկնից: Յայնժամ թողեալ իւրայինսայ զսափոր իւր՝ աղաչեաց զմն ՚ի գլխաւորաց զօրուն՝ արկանել և զինքն ՚ի շղթայս. քան-զի և ես քրիստոնեայ եմ ասէ, և աղախին քո. և այնպէս խառնեցաւ ՚ի թիւս կա-պելոցն: Ապա և տարան զնն նաւու ՚ի քա-ղաքն անտոնինուպօլիս, կոչեաց կուսկրա-նոս առաջի իւր զկապեալսն. և տեսեալ զի-րայինսա մատաղ հասակաւ և գեղեցիկ՝ հրա-մանն ետ ՚ի բաց արձակել. իսկ կոյսն ասէ. մեռանիմ և ես վն անուանն քնի ով պզա-սա. զի և ես անարգեմ զկուռս ձեր, և պաշտեմ զմն երկնից զճշմարիտ. և այնչափ բանս խօսեցաւ ընդ հոգւով սրբով, մինչև պա-մծթի հարեալ բանաւորին՝ նախ զնա ետ գլխատել, և ապա զայլ բազմութի երանե-լի կապելոցն: Հ. Յ. սեպ. 23: Ի. 22.

Սրբատօնաց տօնելի. հա. Ծն. 228:

Իա

Իւղաբեր կանայք տօնելիք . Հա . Ն . 24 : և Ն . 393 :

# Լ

Լաւրենտիոս , որ և Լօրենցէոս պերճապայծառ
վկայն Քրիստոսի, նախասարկաւագ էր սրբոյն Քսես-
տոսի աթենացւոյ` արժանաժառանգ յաջոր-
դի սրբոյն ստեփաննոսի հռովմայ հայրապե-
տի : Նա եղև 'ի դառնալ դեկոսի կայսեր 'ի
պարսից Յէն 'ի Հռովմ, ընկեց անդ առաջի
գազանաց զերկուս վկայս` զորս կալեալ էր 'ի
պարսս . և անուանք նց Աւդոնոս և Սէն-
նոս , կմ ՟բ այլոց` Աբդոն և Սեննէն . և յոյժ
մերձիլ գազանաց 'ի սոսա` սպան զնս սրով :
Յետ այսորիկ բորբոքեալ զհալածանս գա-
հակիցն և յաջորդն դեկոսի վաղերիանոս`
ետ ունել զսբ հայրապետն քսեստոս , և
ստիպէր յուրացութի . և 'ի խոստովանն լի-
նել նր արիաբար կքն մծ , և 'ի յանդիմա-
նել զմոլորութի կւոց , հատին և զգլուխ
նորա . զոր թաղեաց լաւրենտիոս գործակ-
ցութբ հաւատացելոց : Ըմբռնի ապա և
ինքն սբ սարկաւագն լաւրենտիոս . և 'ի պա-
հանջել կուռնելիոսի քաղաքապետին հռով-
մայ 'ի նմանէ զգանձս եկեղեցւոյ , խըն-
դրեաց նա սայլս , զի բարձցէ 'ի նս և բեր-
ցէ . և տարեալ` եդ 'ի վր զաղքատս և զցա-
ւագարս , որոց բաշխեալ էր զինչսն ՟բ հրա-
մանի հայրապետին , և էած 'ի պալատն .

 Ընդ

Ընդ որ բարկացեալ բռնաւորին՝ ետ գան հարկանել զնա և խոշտանգել, և 'ի բանտ արկանել. ուր նա բժշկեաց զբազում հիւանդս և զախտաժէտս անուամբն քի. մինչ բանտապանն Դիոդորոս կին Դոզիթոսի հաւատաց 'ի քս, և մկրտեցաւ ։ Յետ կրկին դատելոյ զլաւրենտիոս և չարչարելոյ ազգի ազգի կտտանօք, իբրև գտին զնա հաստատուն 'ի քս, տարածեցին զերանելին 'ի վՐ հրացեալ կասկարայի. և կայր առաջի նՐ մայր իւր՝ աւետարան 'ի ձեռին, և քաջալերէր զորդին. իսկ նա վկայն առէ ցիշխանն. աւասիկ մի կողմն մարմնոյս խորովեցաւ յերկար, մղէ դարձո զկս 'ի միւս կողմն, զի և այն խորովեսցի, և եղեց ողջակէզ կատարեալ տն այ իմոյ. և այսպիսի արութբ աղօթելով աւանդեաց զհոգին քաջ նահատակն՝ յամի տն 258 ։ Իսկ 'ի թաղել բանտապանին զմարմինն սբյն, կալան և զնա. և յետ քերանաց կապեցին ընդ ձի խստերախ. յորմէ ձգեալ ընդ քարս և ընդ թուփս՝ կատարեցաւ 'ի քս, և թաղեցաւ ընդ լաւրենտիոսի ։ Ձ. օգոստ. 12 ։ Յ. օգ. 10 ։ Լ. օգ. 6. 10, 13 ։ և յուլ. 30 ։

Լաւրենտիոս յուստինեան վենետկեցի 'ի Ջիւստինիանի ազատ տանէ՝ 'ի մանկութէ փոյթ 'ի հոգևորս, եղև այր ճգնաւոր յոյժ. և խոյս տուեալ 'ի պատրաստութէ հարսանեաց՝ եմուտ 'ի միաբանութի կանոնիկոսաց սբյն գէորգեայ 'ի կղզին ալկայ. և յաւել

'ի խստակրօն վարս և յա̃մ առաքինութիս՝
առաւելեալ խոնարհութ̃ և արհամարհութ̃
եի և անձնուրացութ̃ ։ Յամի 1424. կար-
գեցաւ ը̃ հանուր առաջնորդ կարգին. և 'ի
1451. ընտրեցաւ 'ի պապէն՝ առաջին պատ-
րիարգ վենետիկոյ. այլ տակաւին պահէր
զկրօնաւորական աղքատութի̃ իւր. և էր
աղքատասէր յոյժ, և հայր աղքատաց, որ-
բոց և այրեաց. շինեաց բազում վանս կու-
սանաց, արար և զայլ բա̃մ բարեկարգութիս ։
Ունէր զշնորհս արտասուաց. և արժանի
եղև 'ի պատարագի ծննդեանն քի̃ տեսա-
նել զմանկացեալն ա̃ծ. լսելի եղև երբեմն
և ձայն յերկնից, թէ տ̃րութն վենետկեց-
ւոց կայ յոտին աղօթիւք պատրիարգին իւ-
րոյ ։ Նաև և զշնորհս մարգարէութե և նշա-
նագործութե. գրեաց և զհոգելից գիրս
պարզ ոճով. և փոխեցաւ յերկինս յամի
1455. հ̃ը ամաց. և եղեն պէսպէս սքան-
չելիք 'ի ժամուն և զկնի ժամանակաց յա-
նուշահոտ և յանապական նշխարաց սր̃յն ։

Ն. սեպտ. 5 ։

Մ Եւսեբիոս կմ. Լիճերոնինոս, այն է Ն. Իրպեր-
դինուս՝ աշակերտ սր̃յն ծնորատոսի սքան-
չելագործ աբբայի, և գործակալ նորա 'ի
փոնտեան վանս կամպանիոյ՝ էր յաւուրս տա-
տիզայ արքային գոթացւոց ։ Նա եղև 'ի
գնալ Լիճերոնինոսի երիվարաւ 'ի պէտս ինչ
վանաց՝ զօրք գարդայ կոմսին գոթաց յափշ-
տակեցին 'ի նմանէ զերիվարն. այլ 'ի կա-
միլ

մին իւրեանց անցանել ընդ գետն մուլտաւր-նոն՝ կապեցան աներևոյթ զօրութեամբ, մինչև դարձուցին զձի առն նոյ : Իսկ ՚ի գալ աւազակաց ՚ի փանս՝ աչօք բացօք ոչ կարացին տեսանել զնա, որ կայր առաջի նոյ, և ոչ կարացին գողանալ և ոչինչ : Սա ինքն ընծերաւորնոս սախպեալ երդմամբ ՚ի կնոջէ ումեմնէ յարուցանել զորդի նոր, զոր տանէին ՚ի թաղել, եհան ՚ի ծոցոյ իւրմէ զհողաթափ վիճակին իւրոյ սրբոյն անորդատուսի, և եդ ՚ի վերայ մեռելոյն . և յաղօթելն առ Աստուած՝ նոյն ժամայն կանգնեցաւ մեռեալն . և այսպիսի վարուք կեցեալ՝ փոխեցաւ երանելին առ անձկալին իւր Քս : Հ . օգոստ . 23 : Վր . պրապ . տրամնտխոս . ա . 2 : Բարոնիոս յամի 543, և 555 :

Եւսեբիոս և Սաղղինիկոս նահատակակիցք սրբոյն Թէոփիլոսի վկայի . զոր գտցես ՚ի տօնակին . Հոկ . Ծն . 221 :

Լուդովիկոս Սբ. Թագաւորն զաղղիացւոց, որ և լուիզ իններորդ, այր առաքինի ՚ի մանկութէ, և հզօր ՚ի պատերազմունս, յետ բազում և մեծամեծ գործոց յարևմուտս՝ դիմեաց յեգիպտ . և զկնի վանելոյ զսարակինոսս առ մի նուագ՝ յանկարծ ժանտախտ ՚ի զօրս իւր՝ յաղթեցաւ և ձերբակալ եղև . և ապա դաշամբ ուխտի հաշտութեան արձակեցաւ : և զամս հինգ յամեալ յարևելս՝ զբազում քրիստոնեայս ազատեաց ՚ի գերութէ, և զբազումս յանհաւատից դարձոյց ՚ի

քն ։ Նա 'ի լսել զմա՛հ մօրն դարձ արարեալ 'ի գաղղիա, և առանձին նստեալ յաթոռ-թագւորութեն՝ արար բզմ բարեկարգութիւնս. շինեաց և եկեղեցիս, վանորայս, աղքատանոցս և հիւանդանոցս. ծառայէր և անձամբ հիւանդաց. և ինքն խոշորս զգենոյր, և ճնշէր զմարմինն քրձով և պահօք ։ Նա 'ի միւսանգամ խաղալն յարևելս յազատութիւն սբ երկրի յամի տն 1270. վախճանեցաւ 'ի մահտարաժամէ անկելոյ 'ի բանակն, ծե ամաց, յետ տիրելոյ նաւահանգստին թունիզու ։ Իսկ մարմին նր բերեալ 'ի փարէզ՝ եդաւ 'ի տաճար սբյն դիոնեսիոսի, և գլուխն յարքունի մատրան. և պայծառացեալ սքանչելեօք՝ դասակարգեցաւ ընդ սբս յետ իբր երեսուն ամաց ։ Լ. օգ. 25 ։

Լուկիա, կմ Լուչիա՝ (որ թարգմանի լուսաւոր) մեծանուն կոյս և վկայուհի, էր 'ի սիրակուսայ հռչակաւոր հին քաղաքէ սիկիլիայ կղզւոյն՝ 'ի հալածանս դիոկղետիանոսի. և զի ծնօղքն էին հեթանոսք, խօսեցան զնա առն հեթանոսի. բայց ինքն ծանուցեալ զճշմարտութիւն և հաւատացեալ 'ի քն՝ յանկայր սիրով սրբութե նմանօղ լինել սրբուհւոյ կուսին ագաթեայ նահատակելոյ 'ի նմին կղզւոջ ։ Նա քանզի մայր իւր էր տեռատես, առեալ տարաւ զնա 'ի կատանիա քաղաք 'ի տապան ագաթեայ կուսի յաւուր տօնի նր, և խնդրէր 'ի նմանէ զբժշկութիւն մօրն. և ագաթի երևեալ նմա

'ի

'ի տեսլեան երկու հրեշտակաց՝ ասէր․ քո՛յր իմ լուկիա զի՞ է քեզ խնդրել յինէն զայն ինչ՝ զոր դու հանդերձեալ ես այլոց առնել․ և զարթուցեալ լուկիայ՝ եգիտ զմայր իւր առողջացեալ ամենևին․ և հաստատեալ'ի հաւատս՝ մկրտեցաւ մայրն հանդերձ․ և իբրև դարձան 'ի տուն, բաշխեցին զինչս իւրեանց աղքատաց։ Իմացեալ խօսնաւն լուկիայ զքրիստոնէութիւն նորա, և ոչ կարացեալ խափանել զնա, մատնեաց պասքասիոսի դքսին սիրակուսայ․ և նա իբրև փորձեաց և եգիտ զնա հաստատուն 'ի սէրն քի, հրամայեաց տանել զնա 'ի տուն պոռնկութե․ այլ ոչ ոք կարաց քարշել զնա և տանել՝ մինչդեռ կայր 'ի գաւթի ապարանից յեցեալ 'ի սիւն մի կճեայ․ զի հոգին նորա անշարժ հաստատեաց զնա 'ի տեղւոջն․ մինչ զի թէպէտև բազմութիւք զօրականաց պարանօք ձգեցին զնա, ևս և բազում լուծս եզանց բերեալ՝ նոքօք քարշէին, այլ չեղև հնար խախտել զնա 'ի տեղւոջէն։ Ապա հրաման ետ բռնաւորն հուր բորբոքել զնովաւ նաւթիւ և ձիթով, և կենդանւոյն այրել զկոյսն․ բայց և ո՛չ հուր ազդեաց 'ի նա։ Իսկ յործամ էլ հրաման գլխատելոյ զնա, ինքնին կամաւորութբ մատեաւ, և ձգեաց զպարանոց իւր, և այնպէս կատարեցաւ սրով․ և մայր նորա թաղեաց զնա 'ի նշանաւոր տեղւոջ։ Արժանի եղաք և մեք տեսանել զսիւնն զայն սրբուհւոյն լուկիայ, և

համբարուել յամի 1809, ՚ի մէջ տաճարին՝ որ շինեալ է յանուն նր՟ հանդերձ մեծաստանաւ կրօնաւորաց․ որ է հետի յայժմու մնացուածոյ քաղաքին սիրակուսայ իւր կէս ժամու ։ Հ․ դեկտ․ 14 ։ Յ․ Լ․ 13 ։

Լուկէս՝ միւս ևս երջանիկ կոյս՝ էր ՚ի կամպանիայ գաւառէ մերձ ՚ի Հռովմ․ զոր կալաւ վն՟ ՚ի քն՟ հաւատոց աէքսիոս ատտիկան տեղւոյն․ և ոչ կարացեալ տանջանօք հաւանեցուցանել՝ հրապուրէր զնա բազում պարգևօք ամուսնանալ ը՟ իւր ։ Իսկ սրբուհին մերժեաց զպարգևս նր՟, և ասէ․ ես հանդերձեալ եմ քս՟ի հարսնանալ ։ Յայնժամ եարկ ա՟ծ զուլթ ՚ի սիրտ իշխանին ՚ի վր՟ աղախնոյն քս՟ի․ մինչ զի ետ նմա տուն առանձին մօտ յապարանս իւր՝ կարգեալ նմա աղախնայս, զի համարձակ լիցի պաշտել զհաւատս իւր պահօք և աղօթիւք․ և ինքն յերթալն ՚ի պատերազմ առնոյր զաղօթս կուսին, և նովաւ յաղթող լինէր․ մինչև աղօթիւք կուսին հաւատաց ՚ի քս․ և փափաքեալ նահատակութե՛ թողեալ զիշխանութի՛ իւր․ և կացեալ յատեան դատաւորին կամպանիոյ հանդերձ լուկիայիւ, և այլ ևս քսանևմի նահատակօք՝ կատարեցաւ ը՟ նս՟ ։ Հ․ յուլ․ 25, կմ՟ 30, կմ՟ 31 ։ Յ․ Լ․ յուլ․ 6 ։

Լուկիա տիկին հռովմայեցի և այրի՝ էր առ դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի, անցեալ զաւուրբք․ որ ՚ի ջանալն մայրենի խնամով

մով դարձուցանել զկռապաշտ որդի իւր ըղ-
պրոքոս 'ի հաւատս քնի, մատնեցաւ 'ի նմա-
նէ յատեան կայսեր. և քաջութբ դաւա-
նեալ զՔնի մարտութիւն՝ արկաւ 'ի կաթսայ
եռացեալ. և իբրև ինչ ոչ վնասեցաւ, շըր-
ջեցուցին զնա ընդ քաղաքն ծաղանօք և ծաղ-
կանօք : Սրում ընդ սմա ելեալ Գեմինիա-
նոս կին զերամանոս ոմն 'ի հեթանոսաց՝ զար-
մացաւ ընդ համբերութիւն նր. և գնացեալ
զհետ նր՝ հաւատաց 'ի քն և մկրտեցաւ. և
կոչեցաւ հոգևոր որդի լուկիայի. և ընդ նմա
ել յատեան, և չարչարակից լեալ նմա՝ ինքն
կատարեցաւ սրով. իսկ սրբուհին լուկիա
յափշտակեալ ձեռամբ հրեշտակի՝ եդաւ
'ի լեառն տաւրոմենայ սիկիլիացւոց. ուր խա-
ղաղութբ հանգեաւ 'ի քն : Հ. հոկտ. 19 :
Ց. սեպտ. 17 : Յ. սեպ. 16 :

Սուլփանոս կմ լուկիոյ լիանոս քաղաքմեր կարոց
'ի կողմանս նիկոմիդեայ առ աւրելիանոս
կայսերաւ, 'ի ծերութեն իւրում հաւատա-
ցեալ 'ի քն. վասն կալաւ զնա սիղոնանոս
կոմսն, եւ խորտակել զկզակսն քարամբ,
և գլխիվայր տանջել 'ի խաչաձև կախաղա-
նի զանձինք և քերանօք, և 'ի բանտ արկա-
նել : Նոյն անկան յոտս նր չորս մանկունք՝
Ալոզիոս, Նիպատիոս, Պօղոս և Դիոնէ-
սիոս, և խնդրեցին զաղօթս նր՝ պսակակից
լինել նմին. տեսաք ասեն զքեզ 'ի խաչին,
զի եդ ձեռն մեր 'ի գլուխ քո պսակ պայծառ՝
երևեալ բազում հրեշտակօք. և սրն ուրախ

եղև, և քաջալերեա՛ց զնոսա 'ի հաւատս : 'Ի վաղիւ՛ անդր կացուցին զնա և զողջոյն միանգամայն առաջի կոմսին. և նա ետ ար-կանել զնոսա 'ի հուր. և 'ի շրջանիլ հրոյն յանձրևոյ` հատին զգլուխս ո՛ր մանկանցն. և զսբ͞ն լուկիանոս տարեալ 'ի բիւզանդիոն` անդ խաչեցին գլխիվայր : Յետ կատարման սոցա ամբաստանեալ եղև առաջի կոմսին բարեացապարտ և ծ͞ծասէր կոյս ո͞մն Պաւ-լա անուն, թէ նա եղև պատճառ դարձին լուկիանոսի, և յորդորիչ մանկանց 'ի նա-հատակութի՛, և դարմանիչ ն͞ց 'ի բանտի. և 'ի խնդրել զնա զօրականաց` եկեալ գտին զնա յաղօթս 'ի տեղին, ուր զլուկիանոս խաչե-ցին. և արկե՛ շղթայս 'ի պարանոց սրբուհ-ւոյն` տարան 'ի քարշ առ կոմսն. յորմէ հար-ցեալ` արար պ͞խնի. Ես աղախին եմ ք͞սի, և դուստր հոգևոր հօրն իմոյ լուկիանոսի. և զպատուհասս մահուն ինձ երախտիս հա-մարիմ, զի զերծեալ 'ի մշտաբեր կենացս` զանմահականն հանգիստ ժառանգեմ: Ա͞յ հարին զնա դալար բրօք, և հրով փորձե-ցին. և հրեշտակ ա͞յ պահեաց զնա, և ծա-նոյց նմա` թէ, բարեխօս են վ͞ս քո լուկիա-նոս և մանկունքն` զորս դու հաւուցեր այն-պիսի փառաց. ապա տարան զպաւլա, և գլխատեցին 'ի տեղի կատարմանն լուկիա-նոսի :

Ը · Յ · Լ · յունիս · 3 :

Լուկիոս. տե՛ս Պուկիոս :

# Խ

Ամառ. Եպս տօնելի. Հո. Պ. 375։
Խաղնեռաշ. տես Է Ա. Թանասի։
Խաչի տօնք. տես 'ի տօնական հատորն.
ԽԱ. 205 = 238։

Խաչատուր Նոր վկայն Ամդեցի, որ 'ի Տիգրանակերտէ՝ որ և Տիարպեքիր, եր պատանի քսանամեայ՝ աղօթասէր և ընթերցասէր. որ 'ի լրոյ վարուց սրբոց վկայից վառեալ 'ի սէր մարտիրոսութեան՝ տեսանէր յանուրջս զնահատակութիւն իւր. և յաւուր միում յելանելն 'ի տանէ՝ ասէ. երթամ 'ի շուկայն, և կարծեմ թէ ոչ ևս դարձայց 'ի տուն. զի Տէր կոչէ զիս։ Եւ յայնմ աւուր Թշնամանէր յայլազգւոյ ումեմնէ՝ ոչ այլ ինչ ասաց, բայց միայն պախարակեաց զգէնս նորին սուտ։ Յայնժամ կուտեցաւ բազմութիւնն, և ձգեցին զնա 'ի դատաստան ոմն հայհոյիչ. և դատաւորն խրատ տայր նմա ուրանալ զհաւատս և ապրիլ. իսկ նա ասէ. թէև քերթեսջիք զիս, ես ոչ դառնամ 'ի ճշմարտութենէ. վասն որոյ յետ բազում ողոքանաց և սպառնալեաց ել վճիռ սպանման։ Եւ դահիճքն նախ քերթեցին զմորթ նորա մինչև 'ի լանջս և 'ի քամակն. և ապա խորտակեցին կայնով 'ի վերայ միմի զբազուկսն և զոլոքսն, և թողին զնա այնպէս ոգեսպառ մինչև ցերեկոյ. և ապա ակնարկելոյ նորա յղեցին առ նա ծածկապէս քահանայք զՏէր Հա-

զոր-

ղորդութեն եղեալ 'ի մէջ հայոց . զոր ընկալեալ գոհացաւ զայն . և 'ի մէջ գիշերի աւանդեաց զհոգին . և էջ լոյս պայծառ 'ի վերայ մարմնոյ նորա 'ի տեսիլ պահապանաց : Սա հրամանաւ դատաւորի բարձին զնա , և թաղեցին միաբան ամ ազգք քրիստոնէից եղելոց 'ի քաղաքին . յամի 1652 . ռՃա . յօգոստ . 20 : Ն . մարտ . 10 :

Խաչիկ կամ Խաչատուր վրդպ հոգետես՝ մի յաշակերտաց սրբոց թարգմանչացն սահակայ և մեսրոպայ , յետ կատարմանն նոցա շրջէր առաքելաբար , և ուսուցանէր զբանն այ զամ աւուրս իւր : Սա 'ի տօնի յայտնութե զանեղի առեալ 'ի գիւղն ակոռի յատն մասնեաց՝ ետես 'ի գիշերի տեսիլ , զի ժողովք բազմութե ննջեցելոց կենդանացեալ՝ բազմեալ էին փառօք 'ի կոչունս անպատում ուրախութե 'ի սպարապատ միում . յորոց և զոմանս ճանաչէր յանկանէ յանուանէ : Սա տես և զոմն ղազար անուն ակոռեցի՝ զի կայր տխուր տաքոյ դարպասին . և հարցել զպատճառն՝ 'ի միոյ էառ , զի այլք միշտատկաւ աղօթից և ողորմութե փոխեալ էին 'ի հանգիստ երանութե . իսկ ինքն թէպէտև բզմ ինչս եր թողեալ , բայց ընտանիք նր անհոգանային կատարել զյիշատակ հոգւոյ նր , և ոչ տային ողորմութիս աղքատաց և քահանայից : Սա յարուցել ընդ առաւօտն՝ որ էր օր մեռելոց , պատմեաց զայն երանելին խաչիկ 'ի քարոզի . յայնժամ դաւիթ որդի ղազարու փախճա-

նե-

դեցին . յոր աչս արձակեալ դստեր պարսկի
ուրումն դրացւոյ , և ոչ կարացեալ որսալ
զնա , ապա զչարիսն՝ զոր գործեաց ը՟ եղբօր
իւրում , եարկ 'ի վերայ խոստովանող սրբասէր
մանկանն . վո՛յ կոչեցին զնա պարսիկք յա-
տեանն . իսկ նա համարձակ ետ պ՟խնի , թէ
օրէնք մեր զուրացութ՟ի քարոզեն . բայց ձերդ
ո՛չ այդպէս : Ընդ որ բարկացեալ՝ տանջե-
ցին զնա , և արկին 'ի բանտ , զի կամ ու-
րասցի զ՟քս և առցէ զաղջիկն , և կա՛մ չարա-
չար սպանցի : Այլ խոստովանողն հաստատուն ե-
կաց 'ի ք՟ս , և ոչ խոտորեցաւ զհետ բազմա-
պատիկ հրապուրանաց օտարաց և ընտա-
նեաց : Իսկ միւսանգամ յատեան ածեալ՝
զայս արար պ՟խնի . ես զ՟քս ո՛չ ուրանամ ,
այլ՝ պատրաստ եմ մեռանիլ վ՟ս անուան ն՟ր :
Յայնժամ տարան և կապեցին զնա հաստակն
'ի թթենի մի . և ա՟մ բազմութ՟ի պարսից հա-
րելով զ՟քարինս իբրև զտեղատարափ՝ քար-
կոծ արարին զնա . և զմնացեալսն 'ի հուր ըն-
կեցին . բայց ոչ այրեցաւ և ոչ մազ մի 'ի
գլխոյ ն՟ր , որպ՟ս և ո՛չ կապանքն չուանեայ :
Ապա ծնօղք ն՟ր բարձին և թաղեցին զերա-
նելին . և երկիցս լոյս ծագեաց սաստիկ 'ի
վերայ գերեզմանին . յամի 1399 . պ՟խր : ✤
յուլիս . 2 :

Խոսրովիդուխտ քոյր տրդատայ տօնելի . հա.
Պ . 460 :

Խոտաճարակք տօնելիք . հա. Ն . 41 :

Խորէն և Աբրահամ տօնելիք . հա. Ա . 210 :

Խոստովանողս, որ Թարգմանի Մխիթարէն, եր աղեքսանդրացի՝ որդի պտղոմէոսի հեթա-նոս իշխանի . Է որում մեկնեալ 'ի հռովմ յաւուրս նումերիանոսի կայսեր՝ հանդիպեցաւ կարպիփորոնի ՛ոք եպիսկոսի բնակելոյ յայրս միում . յորմէ ուսեալ զհաւատս քնի՝ մկրտեցաւ . վ՜րյ գանեաց զնա հայրն, և չարչարեաց բանտիւ և քաղցիւ . ապա Է խրատելոյ այլոց հանեալ զնա 'ի բանտէ՝ եդ 'ի պայծառ սենեակս փափկութեց Է աղջկունս, այլ աղօթիւք սրբասէր պատանույն անկաւ թմրութի 'ի վՐ աղջկանցն ; և ոչ եղեն նմա 'ի գայթակղութի : Յետոյ գտեալ հօր նՐ օրիորդ մի գեղեցիկ և իմաստուն՝ կիրթ յաթենական ուսմունս՝ Դարեհ կՇ դարիա անուն, ետ խռուսանթոսի 'ի հարսնութիւն, յաղթել նմա գեղով կամ գիտութբ . իսկ խռուսանթոս յաղթեաց դարեհի ածային բանիւ, և դարձոյց 'ի քն . մինչ զի ուխտ եդին կալ առ միմեանս անարատ կուսութի ո՛չ եղբայր և քոյր . և միաբան քարոզ եղեն ճշմարտութե և սրբութե : Այլ եղև ամբաստանութի յատեան կեղերիոսի եպարքոսի, թէ խռուսանթոս որոշէ զարս 'ի կանանց իւրեանց, և դարեհ զկանայս յարանց իւրեանց . և նա յետ փորձելոյ զնս՝ իբրև չկարաց խախտել 'ի հաւատոց, մատնեաց 'ի ձեռս կղոդիոսի տրիբունի . որ ետ բևեռել զսրբն 'ի փայտի . և գտեալ զնՆ անսասանս և անվնասելի, հաւատաց 'ի քն՝ ինքն և կին

իւր

իւր իլարիա , և երկու որդիքն յասոնս և մաւ-
ռոն կին մաւրոս՝ եօթանասուն զօրականօք
հանդերձ : Զայն լուեալ կայսեր՝ զկղո-
դիոս ընկղմեաց 'ի ջուր , և զայլսն ետ գլխա-
տել . իսկ զխրուսանթոս և զդարեհ յետ
այլոց տանջանաց հրամայեաց թաղել կեն-
դանւոյն : Նոյնպէս և զայլ բազմութի քա-
հանայից՝ որք կային յայրի միում ՌՃ թէոդո-
րոսի կին դիոդորի քահանայի , և մարիանոսի
սարկաւագի , 'ի ներքս արգելին՝ փակելով
զդուռն , և զայրն փլուցին 'ի վերայ նոցա՝ լինել
նոցա գերեզմանք : Հմ . Տմ . հոկտ . 17 : Յ . հոկտ .
25 . և դեկտ . 1 . և 3 :

Կ

Կազիմիր որդի կազիմիրայ արքայի պոլո-
նիացւոց մծ լեհաց , և եղիսաբեթի աւս-
տրիացւոյ , 'ի մանկութէ անտի աստուածպաշտութբ՝
ետ զփափկիկ մարմին իւր 'ի խիստ ձգնութեան
պահոց և ընձաղզեցութե և գետնատարած
անկողնոյ , և գիշերային տքնութե յաղօթս .
և յոյժ ջերմեռանդն ցուցանէր 'ի սբ խոր-
հուրդ պատարագին , և 'ի մտածութի չար-
չարանացն քսի՝ մինչև յափշտակիլ արտաքոյ
անձին . այնչափ աղքատասէր էր և , մինչև
կոչէին զպատանին հայր և պաշտպան կարօ-
տելոց . էր և զօրաւոր քարոզ ճշմարտութե , և
զխմանկաց հերձուածոց : Նարտու պահեաց
զկուսութիւն ; և ոչ յանձն էառ մտանել 'ի
կարգ

կարգ Հր, Թէպէտև հարկէին զնա բժիշկք անգամ իբրև 'ի պէտս առողջութե: Այլ յետ դուշակելոյ ինքնին զօր մահուն իւրոյ՝ փոխեցաւ յերկրէ յերկինս 'ի հասակի քսան և հինգ ամաց յամի 1482. և 'ի բերել զմարմին նր 'ի վիլնա լիդուանիոյ՝ տապան նորա պայծառացաւ սքանչելեօք. մինչև տալ յարութի աղջկան միում մեռելոյ, և բժշկել և զկոյր և զայլ ախտաժէտս. երևեցաւ և քաղաքացւոց յօդոյ անտի յաւուրս յարձակման թշնամեաց՝ որպ զօրավար, և շնորհեաց յաղթութի հրաշալի: Ի. մարտ. 4:

Աւլէնիկէ տօնելի Ը. քրիստափորի. հա. Դ. 406:

Աւլէնիկոս բարեյաղթ վկայ տօնելի. հա. Ա. 146:

Աւլերդոս կմէնսլլերդոս 'ի պերուգեայ պամփիլելիոյ՝ եր. որդի թէոկղեայ բարեպաշտ և մեծատուն տիկնոջ. որ 'ի հալածանս դիոկղետիանոսի առաքեաց զորդի իւր 'ի պոմպէուպօլիս կիլիկիոյ. ուր կալաւ զնա մաքսիմոս դատաւոր, և սպանեալ վծ 'ի քն հաւատոց՝ յետ դանից և խախտելոյ յօդից ոտից և ձեռացն՝ եւ հոլովել յանիւս, և 'ի հուր արկանել. այլ ազատեալ սքչն 'ի ձեռան հրեշտակի՝ արկաւ 'ի բանտ: Որ լուեալ մօրն՝ բաշխեաց զամ ինչս իւր աղքատաց, և եկեալ 'ի պոմպէուպօլիս՝ եմուտ առ որդին 'ի բանտն, և մխիթարակից լեալ նմա արտասուախառն խնդութբ՝ սրբէր զարիւն վէ-

րաց

բաց նր̃ . և 'ի սաղմոսել նց̃ 'ի մէջ գիշերի՝ լոյս ծագեաց 'ի բանտն , և եկն յերկնից ձայն աւետեաց ։ Ապա յաւուր մեծի հինգ-շաբաթուն 'ի խաչ հանեին զկալլիոպոս . և մայր սբ̃յն ետ դահճաց հինգ ոսկի դահեկան , զի մի խաչեսցեն զնա կանգուն , այլ գլխիվայր . և մնաց սբ̃ն կալլիոպոս 'ի խաչին մինչև յեր-րորդ ժամ ուրբաթուն կենդանի , և յայն-ժամ աւանդեաց զոգին ։ Իսկ երանելին Թէոկղեա յետ իջուցանելոյ զմարմին որդ-ւոյն՝ գիրկս արկեալ զնովաւ՝ աւանդեաց և ինքն զհոգին իւր առ ա̃ծ . և հաւատացե̃լքն Թաղեցին զերկոսեանն 'ի միում տապանի ։

Ն. ապր. 5 ։ Յ. Լ. 7 ։

Կալիստրատոս քաջազօր վկայ , և խմ̃բ զօրա-կանք տօնելիք . հտ . Օ . 570 ։

Կայետանոս 'ի Թիենեան տանէ վիճենցայու յիտալիա՝ հիմնադիր կարգի Թէատինեան կանոնաւոր կղերիկոսաց , ծնեալ յամի 1478, իսկևիսկ 'ի մօրէն նուիրեցաւ ո̃ր ա̃ծածնի . և այնչափ անմեղութբ̃ սնաւ , մինչև ո̃ր ա-նուն կարդային նմա ։ Վարժեալ ուսմամբ իրաւանց գրոց 'ի պատուա քղ̃ք՝ գնաց 'ի հռովմ, և կարգեցաւ ընդ արգոյ երիցունս պալատան պապին . այլ նա վառեալ 'ի սէրն ա̃յ՝ եւ անտի 'ի ծառայել աղքատաց և հի-ւանդաց . և իւրովք ընչիւք հիւանդանոցս կառուցեալ՝ սպասաւորէր ինքնին և յաւուրս մահտարաժամու . և զա̃մ փոյթ իւր ծա-խեալ վն̃ փրկութե̃ մերձաւորաց՝ կոչեցաւ

որոտորդ հոգւոց․ և 'ի նորոգել զկարգս ա՛ծ-պաշտութե՛ն՝ կանգնեաց զիւր կրօն՝ ապրիլ առանց մուրողութե՛ն՝ 'ի կամաւոր տրոց բարեպաշտից։ Յաւարհարուն հռովմայ կրեաց յանողորմ կօրականաց գանս և լլկանս և բանտարկութիս, կր տացէ նշ՛ զինչս ժողովեալս․ իսկ նա ասէր, թէ յերկինս կանձեալ է իմ։ Սառեալ զժողովուրդն յեռանդն ազգի ազգի բարեպաշտութե՛, առաւել առ խորհուրդ սբ՛ հաղորդութե՛․ և եղև զօրաւոր քարոզ ճշմարտութեան․ ունէր և զշնորհս աղօթից և արտասուաց, և զձիրս մարգարէութե՛։ Ստէպ յափշտակեալ լինէր յաղօթս․ մինչև 'ի գիշերի ծննդեան տն՛ ընդունել 'ի գիրկս 'ի ձեռաց սբ՛ ա՛ծամօրն զյս՛ մանկացեալ։ Նաւ յետ բազում ճգնութեց և արւեանց՝ վախճանեցաւ 'ի Նէապօլիս, և եդաւ 'ի տաճարի սր՛յն պօղոսի ։ յամի 1547․ պայծառացեալ սքանչելեօք 'ի կենդանութե՛ և յետ մահուան։ Յ․ օգոստ․ 7։

Այցենդոս փոխեգացի՝ այր առաքինի առ որեղիանոս կայսերաւ՝ եկեալ 'ի գաւառն ոլոնիդայ՝ առնէր ողորմութի կարօտելոց, և բժշկէր վ՛ս՛մ ցաւս անուանմբն քն՛ի։ Կալաւ զնա հաւուփինոս դատաւորն, և նեղէր վ՛ն հաւատոյ․ այլ իբրև հարաւ յայսոյն պղծոյ, և առողջացաւ աղօթիւք սր՛յն, արձակեաց զնա պատուով։ Յետոյ կալաւ զնա կղէարքոս իշխանն, և ետ խորտակել զսրունս նր՛․ իսկ հրեշտակ տն՛ ողջացոյց զկայծնդոս․ վ՛ն

'ի բաց արձակեաց զնա իշխանն. և խոստո-
վանող վկայն ճգնեալ 'ի տան իւրում զամս
Ժ, հանգեաւ 'ի ք̃ս : Հ. յուլ. 1 :

Կանդիդոս. տես ը̃ Կաղերիոսի :

Կապետոլինէ աղախինն ք̃ի. էր կապադովկա-
ցի յերևելի տանէ առ դիոկղետիանոսիւ.
և մատնեալ յատեան դատաւորին՝ իբրև
հարցաւ, ասէ, անուն իմ քրիստոնեայ է,
և հայր իմ ք̃ս, և քաղաքն իմ վերինն ե̃մ.
ո՞չ ուսայ 'ի փերմիլիանոսէ եպ̃կապետէն
կեսարու. վ̃յ արկին զնա 'ի բանտ. ուր
եկն առ նա աղախինն իւր Երոտինէ կամ
երովտէիս, և ցանկայր չարչարակից լինել
նմա : Ապա յետ վերստին հարցափորձի՝
կապետոլինէ կատարեցաւ սրով. իսկ զերո-
տինէ վ̃ առաւել համարձակութ̃ն նախ
քերանօք տանջեցին, և ապա արկին 'ի հուր.
յորում անկեզ պահեալ՝ գլխատի և նա : Հ.
Ց. Լ. հոկտ. 27 :

Կատարինէ աղէքսանդրացի, այն է՝ Եկատերինէ
կոյս փիլիսոփայ՝ տօնելի. հռ. Օ. 306 :

Կատարինէ սէնացի յիտալիոյ 'ի կարգէ դոմինիկ-
կեան կուսանաց, եղև պահեցող և ճգնա-
սէր յոյժ. և 'ի միում նուագի 'ի բուն բա-
րեկենդանէ մինչև 'ի համբարձումն ք̃ին ոչ-
ինչ ճաշակեաց՝ բաց 'ի ս̃բ խորհրդոյն. փայ-
լեաց ս̃մ առաքինութ̃բ, և էառ իշխանութ̃ի
բժշկելոյ զա̃մ ցաւս և հանելոյ զդևս. ընդ
որս ստէպ մենամարտեալ զօրութ̃բ ք̃ին՝ յա-
մօթ առնէր զն̃ս. կրէր յաճախ զխօթութիս
պէս

պէսպէս՝ սքանչելի համբերութ՟ն։ Մինչդեռ էր ՚ի պիղծ քաղաքի՝ յաւուր կիւրակէի զկնի ՚նք հաղորդութ՟ե եւտես զխաչելեալ փրկիչն, յորոյ ՚ի վիրացն հնգեցունց տպաւորեցին սպիք յանձին կատարինեայ. և յաղաչել նր՝ զի մի երևեսցին արտաքուստ, տպաւորութ՟ն եւեթ լուսոյ եղև ՚ի ձեռս և յոտս և ՚ի կողս կուսին՝ հանդերձ անբերելի ցաւօք. և այնպէս յանմահ եառ; կրէր զցաւս առանց արտաքին նշանի։ Սա էր կատարինէ ուսեալ յոյ, մինչև զմտմ խնդիրս դժուարինս լուծանել զառաջարկեալս յմ̃ծաբանից. բազում բարիս արար բազմաց, և հաշտեցոյց զթշնամիս ը̃ միմեանս. գնացեալ և յաւենոնին դաղղիացւոց՝ ուր էր յայնժամ հայրապետն հռովմայ, յետ միջնորդ լինելոյ մծ արձակմանն փլորենտացւոց ՚ի կապանաց, յայտնեաց և զկամն ա̃յ յաղագս դառնալոյ յաթոռ իւր ՚ի հռովմ. զոր և արար իսկ պապն։ Սա յետ այլ ևս մեծագործութ՟եց և սքանչելագործութ՟եց հանդերձ պարգևօք մարգարէութ՟ե՝ գնաց առ անձկալին իւր ք՟ս՝ իբր ամաց երեսուն և երից, յամի 1380. և եդաւ ՚ի սենա ՚ի վանս դոմինիկեանց. ուր եղև և մեզ այց առնել յամի 1810։ Ա. ապր. 30։

Ս՛ըլէ սրբն Կատարինէ բոնոնիացի յ̃ պոլոնիացի յիտալիա, ՚ի կարգէ սրբուհւոյն քլարայի, պայծառացեալ սքանչելի վարուք ՚ի կուսաստանի. որոյ մարմինն ցարդ ևս անապական պահի ՚ի վանս իւր. ողջ և ականատես իսկ

եղեւաք ։ Ի․ մարտ․ 9 ։

Կարոլոս՝ ՚ի պոռոմեան ազատ տանէ միդրու-լեցւոց ք միլանոցոց յիտալիա՝ ՚ի ժամու ծնն-դեան իւրոյ հրաշալի ցուցաւ, ՚ի ծագել գի-շերայն երկնային լուսոյ ՚ի սենեակ անդր․ և ՚ի մանկութենէ կարգեալ ՚ի սպասաւորութե եկեղեցւոյ՝ փայլեաց սրբութբ և իմաստու-թբ և աղքատսիրութբ․ և յետ աբբայական պատուոյ՝ ՚ի քեռւոյ իւրմէ ՚ի պիոսէ չորրոր-դէ ընտրեցաւ կարդինալ ՚ի հասակի իբ ա-մաց, և ապա արքեպս միլանու․ և եղև քաջ հովիւ և առաքինի յամի, և դարձոյց զբա-զումս ՚ի մոլորութեց, առաւելեալ ողորմա-ծութբ․ և ՚ի լինել ժանտախտի՝ յետ ցու-ցանելոյ զամ խնամս հոգւոյ և մարմնոյ առ հիւանդս, ել ՚ի հանդիսական պաղատանս՝ խաչ ՚յուսս և բոկ ոտիւք և պարան ՚ի պա-րանոցի ։ Զօրաւոր պաշտպան գտաւ ազա-տութե եկեղեցւոյ, և խրատիչ ստահակաց․ յորոց հարեալ հրացանութբ թնդանօթոյ՝ անվնաս պահեցաւ ։ Էր պահեցող յոյժ և քրձազգեաց և տքնող յաղօթս․ շինեաց ե-կեղեցիս, վանորայս, և եղբայրանոցս․ գրեաց և բզմ ինչ՝ առաւել ՚ի հրահանգութե եկեղեցականաց ։ Առանձնացեալ ՚ի լեառն վարալլի՝ ՚ի բազում ձգանց հիւանդացաւ․ և եկեալ ՚ի քաղաքն՝ ետ պատել զինքն խոր-գով և մոխրով, և այնպս փոխեցաւ առ քս՝ խէ ամաց, յամի 1584․ և պայծառացաւ սքանչելեօք ։ Ի․ ժմ․ նոյեմբ․ 4 ։

Կար

Ալորդոս եպս Թիւատիրայ, և Պօղիկոս կամ
պապիւլոս սարկաւագ՝ 'ի հալածանս դեկո-
սի կմ վերոսի մատնեցան վս անուանն քսի
'ի ձեռս բդեշխին ասիացւոց. որ կապեալ
զնս 'ի ձի, և ետ վարել առաջի իւր մինչև 'ի
սարդիս քաղաք. ուր յետ քերանաց՝ ետ թևե-
ռել զվկայսն ընդ միմեանս ։ Այլ 'ի ժպտիլ
սբյն կարպոսի՝ իբրև հարցաւ, ասէ. տեսի
զփառսն տյ և ուրախացայ. յետոյ արկին
զնս 'ի հուր. և այնպէս կատարեցան 'ի քս ։
Յայնժամ քոյր միոյն 'ի սբց Ագաթոնիկէ ա-
նուն՝ ինքնակամ ընթացաւ 'ի տանջանս,
ասելով. ճաշս այս և ինձ պատրաստեալ է.
և ինքնին մտեալ 'ի խարոյկն՝ երիցս կար-
դաց. տր տր տր օգնեա ինձ, և աւանդեաց
զոգին ։ Այնպէս և Ագաթոդորոս ծառայ
սբցն՝ որ եկեալ էր զկնի նց, հանդերձ այ-
լովք նահատակեցաւ զանազան տանջանօք
'ի սարդիս կմ 'ի պերգամոն ։ ∸. հոկտ. 12.
կմ 13 ։ Յ. հոկ. 13. Լ. ապր. 13 ։

Ալփաս. տես Պետրոս առաքեալ. Թող զի
ոմանք եդին և զայլ ոմն կեփաս անտիոքա-
ցի յեօթանասնից համարի. որ է անհիմն.
և ըստ այնմ յիշի 'ի ∸. սեպտ. 25. և Յ.
դեկտ. 9 ։

Ալէքսիւս կմ կիկլիա, այն է Ձէնչիւս կմ չէնչի-
լիա (ստուգաբանել՝ երգիչ) էր մեծանուն
կոյս հռովմայեցի՝ դուստր հեթանոսի մե-
ծատան՝ յաւուրս աղեքսանդրոսի կայսեր 'ի
Գ դարու, խօսեցեալ Վաղերիանոսի ազ-

Նմանական երիտասարդի։ Այլ մինչև լեալ էր
հարսանեաց, կիկիլիա հաւատաց 'ի քս, և
մկրտեցաւ 'ի սբյն ուրբանոսէ հայրապետէ.
այլ ոչ եհան զքանն 'ի վեր. մինչև 'ի կատա
րել անդ հարսանեաց՝ իբրև եղև կիկիլիա
առանձինն ընդ փեսայն իւրում վաղերիանո
սի՝ ասէ ցնա. գիտես՛, զի կայ երկնաւորն
այ հրեշտակ՝ որ այնչափ սիրէ զիս վն կու-
սութե՛ իմոյ, մինչ զի 'ի մերձենալ քո յիս՝
կորուսանէ զքեզ. ապա եթէ պահես զիս
անարատ՝ սիրեսցէ և զքեզ ոպ զիս, և ցուց-
ցէ քեզ զփառս այ։ Այլ 'ի խնդրել վաղե-
րիանոսի տեսանել զհրեշտակն՝ ասէ կիկի-
լիա. տեսցես, եթէ հաւատասցես 'ի քս և
մկրտեսցիս. և նա չոգաւ մկրտեցաւ յուրբա-
նոսէ. և եկեալ 'ի տուն՝ եգիտ զկիկիլիա
յաղօթս, և զհրեշտակն այ առ նմա բոցա-
փայլ և հրաթև. որ եդ մի մի ծաղկեայ
պսակս 'ի գլուխ կիկիլեայ և վաղերիանոսի։
Յայնժամ խնդրեաց վաղերիանոս 'ի հրեշ-
տակէն, զի և աւագ եղբայրն իւր Տիբուր-
տիոս լիցի քրիստոնեայ. և եղև այնպէս. զի
ընդ մտանել հրեշտակին՝ յորժամ եմուտ տի-
բուրտիոս (որ և տուբերտիոս) յողջոյն նո-
րոյ հարսին և փեսային՝ էառ զհոտ անու-
շութե՛ վարդի և շուշանի 'ի գլխոց նց. և ի-
մացեալ զպատճառն՝ դարձաւ և նա 'ի քս.
և մկրտե՛լ յուրբանոսէ՝ արժանի եղև և նա
տեսութե՛ հրեշտակի։ Յետ այսորիկ 'ի նոսա
հատակել ալմակիոսի եպարքոսի զատագում

վկայս՝

վկայս՝ Թաղէին զնս երկոքին եղբարք՝ ս̃րբն Ղաղերիանոս և ս̃րբն փէճտուրփիոս. վ̃սյ ըմբռնեցան և բրածեծ եղեն, և ապա կատարեցան սրով. որոց և դաՀճապետն մաքսիմոս, և այլք բազումք՝ որք նոքօք Հաւատացին: Արչեցաւ և սրբուՀին կիրկիլիա յատեան. և յետ դարձուցանելոյ ծ̃ծայրին բանիւ զբազումս յարանց և 'ի կանանց՝ արկաւ 'ի ջերուցեալ բաղանիս, ուր կրեաց զտապնոյս մաՀու. այլ յետ երից աւուրց տանջանացն կենդանին գտեալ՝ գլխատեցաւ: Հ. Նոյ. 27, կ̃մ 28:
Ց. Նոյ. 24: Լ. Նոյ. 22. և ապր. 14:

Աբնդէոս կ̃մ կենդիոս քաՀանայ պամփիւլացի 'ի դեղջէն տալմինոյ՝ երեց էր եկեղեցւոյն սրբայ. զոր առ դիոկղետիանոսիւ, կալաւ տորատոնիկոս դատաւոր վ̃ս դարձուցանելոյ նր̃ քարոզութ̃ր զբազումս. և ետ բևեռել յոտսն կօշիկս երկաթիս, և դան Հարկանելով շրջեցուցանել: Ապա իբրև կամէին այրել զնա, ոչ քաջ նաՀատակն ինքնին վձարեաց զգլին փայտին՝ զոր խլէին 'ի ձեռաց առն աղքատի. և բարձեալ զփայտն յուս իւր՝ տարաւ 'ի տեղի կատարմանն. ուր կայեալ 'ի մէջ բոցոյն՝ ուսուցանէր զՀեթանոսս դառնալ յած կենդանի. և ելեալ ան բողջ 'ի Հրոյն՝ յաղօթել իւրում աւանդեաց պՀոգին: Յայնժամ Հաւատաց 'ի քս̃ քուրմն կուոց Հանդերձ կնաւն և որդւովն. և առ փոխեաց պատուով զմարմինն որ քաՀանայն. Հ. յուլ. 24, կ̃մ 30: որ իէլ. օգոստ. 2: Ց.

Ի. յուլ. 11։

Սիղուանոս եպս տօնելի. հտ. Գ. 68։
Սերապիոն կմՊկէւրակոս ճանաչ տօնելի Ը յուլի-
տայ. հտ. Ռ. 170։

Սերապիոն անապատաւոր կորնթացի՝ առ մեծն Թէոդոսիւ, էր որդի յովհաննու երիցու, և ընթերցող եկեղեցւոյն կորնթոսի. և վաճառեալ 'ի սէրն քսի՝ եթող զՅ 'ի ժԲ ամաց հասակի. և յետ շրջելոյ յաղօթս յեկեմ՝ ընկալաւ զմիակեցական սքեմ 'ի վանս եւթիմիոսի. և յառաջադէմ գտեալ յամի՝ յաղթահարեաց զհետևօղս որոգայթնի. և ընկալեալ հոգի մարգարէութե և ծածկագիտութե՝ դարձուցանէր զմեղաւորս. և յետ ձգնելոյ յերկար 'ի փապարս վիմաց՝ փոխեցաւ առ տր 'ի խոր ծերութե՝ ձի ամաց։ Հ. հոկտ. 3, կմ 4։ Ց. սեպտ. 29։

Սերակոս և Պարթաքսէ (որ և գրին Սիրակէ և Սուրբաթ) աղեքսանդրացիք՝ էին 'ի Դ դարու։ Սիրակոս յետ մահուան ծնողացն թողեալ 'ի տան զքոյր իւր զպարթաքեա՝ կրօնաւորեցաւ 'ի սկիտէ. առ ոտս մեծին դանիէլի. և պարթաքեա ետ զանձն 'ի մեղս պոռնկութե. զոր լուեալ ծերոց՝ ստիպեցին զՍիրակոս երթալ և շահել զքոյր իւր. որ և յաջողեցաւ 'ի տնն։ Օր Ը լսել պարթաքեայ կհոգելիցս բանս եղբօրն իւրոյ՝ դարձաւ կատարեալ զղջմամբ, և հետևեցաւ զկնի սիրակոսի յանապատ զժուժարին՝ բոկոտն և բայագլուխ. մինչ զի 'ի ճանապար-

հէ

հի հերձան ներբանք ոտից նր̄ . և արիւնն իբրև զջուր հոսէր , ոմ̄ և արտասուքն յաչաց : Նա և իբրև անցանէին այլ ամսապատաւորք , խոստովանեցաւ պարապաքեւ 'ի կողմն մի ՟Ը հրամանի եղբօր իւրոյ . ապա իբրև եկն կիրակոս 'ի կոչել զնա՝ եգիտ վախճանեալ . և 'ի թաղելն անմխիթար սգով առ չգիտելոյ զմխիձակ հոգւոյ քեռն իւրոյ , յայտնեցաւ նմա հրաշալի տեսլեամբ , թէ երանելին պարապաքեւ մ̄ծ ճշմարիտ ապաշխարութ իւրոյ արդարացաւ յահեղ ատենին ա̄յ , և պսակեցաւ ծիրանազգեաց փառօք : ։–.

յունիս . 16 : Սարք հց :

Կիւրակոս կամ Կիւրոս և Յովհաննէս անարծաթ բժիշկք՝ էին յաւուրս դիոկղետիանոսի : Կիւրակոս էր աղեքսանդրացի , և երթեալ 'ի բաբելոն՝ բժշկէր զա̄մ ցաւս . և փոխանակ վարձուն դարձուցանէր զանհաւատս . և ապա խոյս տուեալ 'ի ձեռաց յաչալկոտաց՝ եկն յարաբիա , և յետոյ կրօնաւորական զգեստուք դարձաւ յաղեքսանդրիա : Իսկ յովհաննէս՝ որ էր եդեսացի , եկեալ յեդեմ , և լուր առեալ զսքանչելի գործոյն կիւրակոսի՝ եւ չոգաւ առ նա յաղեքսանդրիա . և եղև նր̄ մնակակից և գործակից յա̄մ առաքինի վաստակս : Յաւուրսն յայնոսիկ սիրիանոս իշխան քաղաքին չարչարէր մ̄ճ հաւատոց զսրբուհին Աթանասիա , և զդստերս նր̄ կոչեցեալս Թէոդորիա : Թէոկտիստա , և Եւդոքսիա . յայն-

ժամ

ժամ կիւրակոս և յովհաննէս եկին 'ի քաջալերել զնա · վ՛ոյ նաև ինքեանք ըմբռնեցան , և յետ կարծրագոյն տանջանաց՝ կատարեցան ընդ նորա սրով : Իսկ քրիստոնեայք թաղեցին զմարմինս սրբոյն կիւրակոսի և յովհաննու մօտ 'ի հանգիստ աւետարանչին մարկոսի · զորս յետոյ սուրբն կիւրեղ աղեքսանդրացի փոխադրեաց յեկեղեցին՝ զոր նուիրեաց յանուն նոցա , և պատուեաց ներբողական ճառիւք : Եւ արար Աստուած բազում սքանչելիս բարեխօսութեամբ անարծաթ բժշկացս · յորոց ինչ ինչ 'ի գիր անցոյց սոփրոնիոս հայրապետն երուսաղեմի , որ եկեալ 'ի տաճարն սրբոցս՝ ընկալեալ էր զառողջութիւն վտանգեալ աչաց իւրոց : Սա՝ որ զնոյնանուն վկայս 'ի հռովմ առնէ նահատակել : Հ · փետր · 6 : Տր ինքն · յունվ · 31 : Յ · յունվ · 31 · և յուն · 28 : Լ · յունվ · 31 :

Կիւրեղ աղեքսանդրացի տօնելի · հտ · Գ · 271 :

Կիւրեղ երուսաղեմացի , և միւս կիւրեղ՝ տօնելիք · հտ · Բ · 392 · և 429 :

Կիւրեղ սարկաւագ տօնելի · հտ · Բ · 198 :

Կիւրեղ եպիսկոպոս գորտինոյ 'ի կրետէ կղզին՝ այր ծեր , 'ի հալածանս դեկոսի կամ դիոկղետիանոսի՝ զատեալ վասն անուանն Քրիստոսի 'ի զուկինոսէ իշխանէ՝ կապեալ ոտիւք և ձեռօք արկաւ 'ի հուր · ուր յետ այրելոյ կապանացն , և անձիւնանալոյ հրոյն , ել սուրբն ամբողջ · Եւ որ սքանչացեալ իշխանին՝ արձակեաց զնա , մեղադիր լինելով թագաւորին վասն

հա-

հալածել տալոյ զքրիստոնեայս. բայց յե-
տոյ լուեալ, թէ 'ի ձեռն սրբոյն բազումք 'ի
կռապաշտից դառնան 'ի քս, առ ահի թա-
գաւորին եւ մերձաւորին ունել զնա և գլխա-
տել: Հ. յուլիս. 12, կմ 14: Յ. Լ. 9:

տես և Կիւրենոս:

Կեւրենոս կմ կիւրիանէ այգախնին քնոյ տալ-
տանցի՝ 'ի հալածանս մաքսիմիանոսի մատ-
նեցաւ 'ի ձեռս մարկիանոսի դատաւորի.
որ եւ գերծուլ զհերս գլխոյ նորա և պատ-
առեանոսն. և կախեալ 'ի ճակատ նր գիր
նախատանաց՝ նստոյց յէշ մի՝ ափածել զեն-
ջակաւ ևեթ. և եա շրջեցուցանել ծաղե-
լով և ծաղկելով ը մէջ տարասանի. այլ յա-
ղթել նր ոչ ոք 'ի կռապաշտից եւտես զմեր-
կութի նր. և այնպէս ածեալ 'ի առուսա կմ ուե-
դեստոն քաղաք՝ արկաւ երանելին 'ի հուր.
ընդ նմին և կին մի քրիստոնեայ Յուլիանէ
անուն ռուսացի: Հ. նոյ. 6, կմ 3: Յ. Լ.
նոյ. 1:

Կեւրենոս կմ Կիւրղոս եպս գորտինոյ կրե-
տացւոց 'ի հալածանս մաքսիմիանոսի՝ մինչ-
դեռ էր ծաղկան, 'ի գնալն Է երկուց ծա-
ռայից թէոփանեայ և թէոքարիստոնի 'ի
վանս ուրեք՝ տեսեալ զկռապաշտսն զա-
գեալ 'ի հանդէս զոհից կռոց, յորդւոց եհան
և անէծ զնա. վասն կալան զնա և արկին 'ի
բանտ. ուստի ելեալ սքանչելեօք՝ գնաց 'ի
վանս առ փելիքսիանոս ձգնաւորն. և լուաւ
'ի նմանէ՝ թէ առցես կրկին պսակս՝ զե-
պէս-

պիսկոպոսութեն և զմարտիրոսութեն ։ Սպա յազգամանէն Ճանապարհ արար 'ի Հռովմ, յաղթելով պէսպէս փորձանաց դիւին ․ և եղև զօրացուցիչ բանտարկելոց վասն անուանն քնի 'ի Հռովմ ։ Իբրև կամէր դնալ անտի յեւէմ, Հրամանաւ Հրեշտակի դարձաւ 'ի կրետէ, և օծաւ եպս ․ և յետ Հովուելոյ զՀօտն ոմ Հովլիւ քաջ մինչև 'ի խոր ծերութի, կալաւ զնա ադրիանոս դատաւոր կրետայ, և ոչ կարացեն որոշել 'ի քնէ եւ մՃիւ գլխատմամն ․ և զի էր յայնժամ ամն ղե ամաց, և առ ծերութեն չկարէր քայլել մինչ 'ի տեղի կատարմանն, եղին զնա 'ի վր սայլի, և այնպէս տարեալ 'ի տեղին ռաքսոն կոչեցեալ՝ անդ Հատին ըզգլուխ նր ։ Հ․ յունիս ․ 5 ։ տր իէլ ․ 17 ։

Յ ․ 14 ։

Կղեմէս Հռովմայ Հայրապետ տօնելի ․ Հտ ․ Ա ․ 102 ։

Կղեմէս եպիսկոպոս անկիւրիոյ՝ տօնելի կմ յիշատակելի ․ անդ ․ Հտ ․ Ա ․ 121 ։

Կղոդիա մայր եւգինեայ կուսի՝ տօնելի ․ Հտ ․ Մ ․ 467 ։

Կղոդիոս, Աստերիոս, և Նէոն կմ Նեմեսիոս՝ երեք եղբարք՝ երիտասարդք ընտիրք և առաքինիք, էին առ դիոկղետիանոսիւ 'ի խոռբանդոն քաղաքէ խաւրիոյ ․ զորս իբրև դըրկեաց 'ի Հայրենի ընչից կռապաշտ մօրու նց՝ եղին յատեան լիւսիայ դատաւորի 'ի մամեստիա ․ ուր պարտաւոր գտեալ մօրուն՝ մատ-

մատնեայ զնա մն քրիստոնէութեան . և 'ի տուիպել զատաւորին զնա՝ ուրանալ զքն, նորա առ ոչինչ համարեալ զինչս իւրեանց՝ մերժեցին զանօրէն հրամանն . մոյ փորձեցան մի առ մի դառն տանջանօք քերանաց և ջահից, խորտակման և քակման անդամոց, և պնդելոյ 'ի մոմուլս . և ապա 'ի փայտի բևեռեալ՝ աղօթելով աւանդեցին զհոգիս իւրեանց : 'Ի նոյն աւուրս անդ 'ի մամեստիա նահատակեցաւ և որբուհին Թէոդինէ. լա . զոր կախեալ զհերացն՝ գան հարին և տանջեցին յերկար մինչև ցաւանդումն հոգւոյն . Է նմին կատարեցաւ ասեն և որբուհին Գոնոստելլա : ✕ . հոկ . 27 : Յ . հոկ . 29 : Լ . օգոստ . 23 :

Սոստրատոս վկայ տօնելի . հտ . Դ . 182 :

Սողոմոն և Դամիանոս տօնելիք . հտ . Յ . 222 :

Սոնոնոս այսահարած , որ և կոնոն խասուրացի՝ ասի լինել 'ի ժամանակս առաքելոց՝ 'ի գեղջէն բիդանայ կիլ եղանիոյ՝ որդի ներսորինոսի և աթասայ հեթանոս ծնողաց . որք իբրև ածին նմա կին , կոնոն խրատեալ 'ի ձեռն միքայելի հրեշտակապետի , և ընկալեալ զկնիքն քնակտն՝ համանեցոյց զհարսն իւր՝ կալ անարատ որբուհի առ միմեանս ամ եղբայր և քոյր . դարձոյց և զծնօղս իւր 'ի քն . մինչև մարտիրոսանալ հօրն : Սրար և այլ սքանչելի գործս առաջի հեթանոսաց . կործանեաց բանիւ զբագինս նց , և զդևսն բնակեալս 'ի նս հնազանդեցոյց 'ի ծառայութի .

ուն . մինչև դաշել ամենեցուն , միայն անձն կանոնաւոր է յաղթող . և այնպէս դարձան բազումք յանհաւատից 'ի տր ։ Սոյ մատնե- ցաւ կոնոնաս 'ի ձեռս մագնոսի դատաւորի , և ձաղկեցաւ արեամբ չափ . և ապա արձա- կեալ՝ ածաւ 'ի տուն մի . ուր գոհանալով զա̃յ՝ աւանդեաց զհոգին ։ Հ . մարտ . 5 ։

Յ . 6 ։

Սոնոնոս պարսկազգեան այր բարեմիտ 'ի Նազա- րեթէ գալիլեացւոց առ դեկոսիւ́ , մինչդեռ աշխատէր 'ի պարտիզի իւրում՝ ըմբռնեցաւ դաւաճանութե̃ երկուց զօրականաց որոգի- նէսի և նաւուղորդի . և կապեալ ընդ ձի՝ ածաւ 'ի քաղաք առ պոպղիոս դատաւոր պամ- փիլիոյ . յորմէ հրամայեալ 'ի պաշտօն կռոց՝ յոգւոց եհան և ասէ . Իցէ՞ թէ ով դատա- ւոր դու ևս իբրև զիս պաշտէիր զքս , որ է ճշմարիտ ած օրհնեալ յաւիտեանս ։ Յայն- ժամ հարին բևեռս յոտս նր , և ընթացու- ցանէին առաջի կառաց իշխանին մինչև 'ի գիւղ մի . ուր փռանգեալ սրբյն՝ ծունր եդ յաղօթս , և փոխեցաւ առ տր ։ (Սա յո- մանց վրիպակաւ կիպրացի կարծեցաւ , զի պարտիզպանն յունարէն գիբուրոս ասի ։)

Հ . մարտ . 2 ։ Յ . Ժ . 6 ։

Սորբէ . տօն 'ի Պատերմութե̃ ։

Սորբէլս կմ̃ կիւպրիլլա աղախինն քնի կիւ- րեղացի՝ առ դիոկղետիանոսիւ́ , յետ կալոյ ԻԷ աւուր ամն երկու՝ մնաց այրի . և զի կրէր զգլխացաւ , ինչ ոչ օգտէր 'ի բժշկաց՝ գնաց առ

լինել : Հ. Հոկտ. 26 : Յ. Հոկտ. 28. և
3. ի ժամագր :

Յովհաննէս ողորմած՝ հայրապետն աղեք-
սանդրու, էր կիպրացի՝ որդի եպիփանու
իշխանի կղզւոյն, կին եղեւ, յաւուրս հե-
րակլի կայսեր. և մնեալ 'ի կարգ ծի՝ ու-
նէր զաւակս, և քաղաքավարէր ըմ ուսաւ
քինութբ, աուաւել աղքատսիրութբ. և
'ի մեռանիլ կնոջն և որդւոյն՝ կայր յծի ոչ
յանապատի. մինչև վկայութբ ամենեցուն
ընտրեցաւ պատրիարգ աղեքսանդրիոյ. և
նախ ք ընտրիլ յաթոռն տեսանէր 'ի տեսե-
լեան զողորմածութին ոչ գուստր թգրի և
իւրև հարսն պարդարեալ՝ ունելով 'ի ձե-
ռին ոստ ձիթենւոյ պտղալից. (զի և անուն
իւրոյ և ողորմութե է նմանաձայն 'ի յու-
նականն) : Սոյ յաւել յառաջին ողորմա-
ծութն իւր. և գրեալ 'ի կոնդակի զանուանս
աղքատաց քաղաքին էն, հոգայր զպէտս
նց. շինեաց և հիւանդանոցս, և գերեզ-
մանս օտարաց. արար բզմ բարեկարգութն
յեկեղեցականս. և փայլեալ նշանագոր-
ծութբ՝ դարձոյց զբազումս յանհաւատից.
և 'ի խոր ծերութն հանգեաւ 'ի քս : Նա-
ին հրամանի նր թաղեցին զնա 'ի կիպրոս
յեկեղեցւոջ սրբյն եւտիքոսի 'ի տապանի
անդ, ուր եդեալ կային երկու այլ եպիսկոպոսունք.
և ոք ոչ կենդանի զատեալք 'ի միմեանց՝
ետուն պատուով տեղի առն այ 'ի մէջ իւ-
րեանց : Հ. Նոյ. 11 : Յ. Նոյ. 12 : Լ.
յինվր.

յնվր . 23 :

Յովհաննէս պահեցօղ կոստանդնուպօլսեցի` երբեմն քանդակագործ արհեստիւ́ , վն իւ-րոյ առաքինութե և ճգնութե ընտրեցաւ պատրիարգ Թգրական քաղաքին յամի 582 . 'ի սկզբան Թգրութե մօրիկ կայսեր . զի էր սիրօղ աղօթից և պահոց , ողորմած և աղ-քատասէր . որ և աղօթիւք հալածեաց ըզ-բարբարոսս 'ի մակեդոնիոյ . 'ի համբուրելն զմեռեալ մի` և նա ոչ կենդանի համբու-րեաց զհայրապետն . տեսին և սպասաւորք նորա առ նմա պհրեշտակ մյ . արար և այլ սքանչելիս . գրեաց ճառս հոգեշահս , և գործեաց քնմ ուղղութիս . ( Թող զպատիժն չափազանց` զոր եսուն նմա յոյնք , կոչե-լով զնա տիեզերական պատրիարգ : ) Ասի` Թէ ; ոչ 'ի մեռանիլ յովհաննու ողորմածի` մի միայն դրամ գտաւ 'ի գանձս նր , և այն ևս տուեալ աղքատի . նոյնպէս և 'ի մեռա-նիլ յովհաննու պահեցողի` մի միայն զգեստ հնոտի գտաւ 'ի տան նր , և մի անալոգ ան-կողին փայտեայ . զոր առեալ մօրկայ կայ-սեր` երբեք երբեք 'ի վր նր հանգչէր վն ճգնութե : Ն . Յ . սեպտ . 2 :

Յովհաննէս քահանայ` նոր վկայ 'ի յերապօ-լեայ , որ և չմչկածագ , էր առաքինի և ողորմած . զոր հալածէին յաչաղկոտ եղբ-ցունք . և նա ելեալ 'ի քաղաքէն` շինեաց արտաքոյ փայտաշէն եկեղեցի հրամանաւ այլազգի իշխանին . Ը որ առաւել պչարեալ

ոսո

ոտոխաց նր՝ չարափոս եղեն զնմանէ ծանր
ծանր զբպարտութ. մինչև իշխանն հրամանն
ետ այրել զեկեղեցին, և զերէցն յանհանձնեա
՚ի նոյն հուր արկանել. ուր իսկեւիսկ աւան-
դեաց արդարն զհոգի իւր. բայց ոչ այրե-
ցաւ և մազ մի նր. և հատեալ ոմանց զաջ
նր՝ բերին առ իշխանն ՚ի գիշերի. և ահա-
ւասիկ ձրագ վառեին մատունք նորա. և ՚ի
վերայ մարմնոյն ծագեաց լոյս պայծառ:
Իսկ և յայտնի եղև ամենեցուն անմեղութի
արդարոյն, թաղեցին զնա պատուով յե-
կեղեցւոջ ՚որ Ածածնի ՚ի մէջ քաղաքին:
Եւ եղև կատարումն նր յամի 1403. պծբ.
՚ի Ժ սեպտեմբերի: Հ. մնրտ. 27:
Դնի յօրինակս ինչ յայսմաւուրաց ՚ի մայի-
սի 7. և յիշատակ սնուճանակցի նր և քաղա-
քակցի՝ Յովհաննէս չմշկէն կայսեր յունաց, որ
էր յազգէ հայոց. և յետ բզմ գործոյ քա-
ջութե և բարեպաշտութե մեռաւ իբրև կրօ-
նաւոր սպասաւորող՝ հրաժարեալ յաթոռոյ
Թրութե յամի. 976:
Յովհաննէս տանմաւոյն՝ երևելի միայ յունաց,
մականուանեալն մանուսր, աշակերտ կոզ-
մայի միայնակեցի ՚ի գիտութե մասին, հրա-
ժարեալ ՚ի փառաց և ՚ի մեծութեց Ծի՝ կրօ-
նաւորեցաւ ՚ի վանս սաբայի աբբայի ՚ի պա-
ղեստին. և էր զօրաւոր բանիւ և գրով, և
քաջ ախոյեան ընդէմ պատկերամարտից յա-
ւուրս լևոնի կայսեր իսաւրացւոյ և կոպրո-
նիմոսի: Ի հասատանել խալիֆայից զաջ սրյն
վն

մն նամակին՝ զոր յանուն յովհաննու յղեալ էր Թշնամեաց 'ի գիմաց կայսեր, 'ի վաղճանի անոյր բժշկեցաւ ձեռն ն̅ր սքանչելեօք տ̅ր ա̅ծածնի, որոյ էր ջերմ պաշտօնեայ. և յետ բազմապատիկ գործոց փոխեցաւ յամի իբր 760, 'ի հասակի ծերութեան, թողեալ գիրս պանծալիս և օգտակարս: Յ. դեկտ.

4: Ի. մայ. 6:

Յովհաննէս՝ ո̅յ կոչեցեալ, հիմնադիր կրօնից անուանելոյ՝ բարի արարէք եղբարք, էր լուսիտանացի 'ի մօնդեմօռ գեղջէ՝ ա̅ծապաշտ 'ի մանկութէ, ութամեայ՝ հովիւ խաշանց լեալ 'ի հեռաւոր վայրի ուրեք՝ 'ի կաստիղիա սպանիոյ, մինչև եղև իէ ամաց. և յայնժամ հարկեալ 'ի զինուորութիւն, և խոցեալ 'ի մարտի՝ բժշկեցաւ տեսլեամբ տ̅ր ա̅ծածնի, որում էր ջերմեռանդն միշտ. ազատեցաւ և 'ի մահուանէ՝ յոր զօրավարն պարտաւոր առնէր զնա վ̅ն կորուսանելոյն մեծագին իրս ինչ. և վարեալ 'ի բանակէն՝ եկն դարձեալ, և արար զգործ հովուութե̅ ամս Ժ. և զկնի այլոց անցից՝ արժանի եղև բառնալ յուս իւր զխ̅չ 'ի կերպարանս մանուկան աղքատի. որ իբրև հանդերձեալ էր լինել անօթևոյթ՝ եցոյց յովհաննու նուռն մի, հանդերձ խաչիւ և լուսափայլ պսակաւ, ասելով. յովհաննէս ո̅յ՝ նուռն եղիցի քեզ խաչ. և զի նուռն սաի յարևմտեան բարբառ կռանատում, ապա մանաւանդ ա̅ն եւ գնաց յովհաննէս 'ի կռանադա քաղաք՝ խն̅ ամաց.

մաց . և առնէր զգրավաճառութիւն . Մինչև շարժեալ 'ի քարոզութենէ պատուականն հօրն աւրելայի՝ ետ զինչ ինչս իւր , և ազատեաց զքսանևերկու արս 'ի բանտէ . և վառեալ 'ի սէրն այ՟ յանչափս՝ սկսաւ խաչ 'ի ձեռին, շրջիլ ը՟ փողոցս որպէս յիմար վն՟ քի՟ . և կրեաց բզմ՟ ձաղանս և ձաղկանս , մինչև դնիլ 'ի յիմարանոցն : Ապա ելեալ շրջեցաւ յայլ քաղաքս . և յասելն երբեմն յեկեղեց ւոջ առ ն՟ք ա՟ծածինն զայն բան , զապաձո առ մեզ զգթածահայեաց աչս քո , բացաւ ինք- նին վարագոյր պատկերի կուսին : Դար- ձեալ եկեալ 'ի կուանաւր՝ ետես զն՟ք ա՟ծա- մայրն , որ դնէր 'ի գլուխ նր՟ պսակ փշե- ղէն , խոստանալով լինել նմա պաշտպան յամի . և յայնմհետէ ժողովեալ ընկերս՝ շինեաց յողորմութենէ զհիւանդանոց աղքա- տաց , զորս բարձեալ բերէր շալակաւ և դար- մանէր . և 'ի խնդրելն վն՟ նց՟ զողորմութի՟՝ զայս բան սովորեցաւ ասել առ մարդիկ . բարի արարէք եղբարք վն՟ անձանց ձերոց : Երևեցան և հրեշտակք 'ի պաշտել զխոր- հուրդս հիւանդաց՝ ը՟ պաշտօնակիցք յով- հաննու . լուաց երանելին և զոտս փրկչին երևելոյ ը՟ զմի յաղքատաց հիւանդանո- ցին . դարձոյց զբազումս մեղաւորս և զպոռ- նիկս յապաշխարութի՟ . բժշկեաց զհիւանդս մերձեալս 'ի մահ . եանց ը՟ հուր անվնաս յազատել զհիւանդսն իւր 'ի հրդեհէ . կրեաց բզմ՟ փորձանս 'ի դիւաց , այլ աղօթիւք և

 պա-

պահօք յաղթող գտաւ նմա. շրջէր բանկոսն, և քրձազգեաց լինէր 'ի նեղչքուստ. և յամս վերջնոր կեանս խստամբերութե. և յետ բազում վաստակոց և համբերութե՝ փոխեցաւ յաստեացս յամի . 1550 . 'ի հասակի ծն ամեայ. և պայծառացաւ յետ մահու մեծամեծ սքանչելեօք : Ի . մարտ . 8 :

Յովհաննէս Նեբոմուկենոս պոհեմայի՝ սքանչելի ցուցաւ 'ի ծննդեան իւրում, զի հուր ցոլանայր 'ի վր տանն. և 'ի տղայութե ապրեցաւ 'ի մահուանէ սքանչելեօք 'սբ ածածնի՝ որում նուիրեալ էր 'ի ծնողաց : Ուսաւ 'ի ջերմեռանդն վարս առաքինիս. և կատարեալ ուսմամբ՝ եղև քահանայ, և վր զօրաւոր քարոզութե կարգեցաւ ի կանոնիկոսս եկեղեցւոյն բրակայու. և ընտրեցաւ քարոզիչ Թգրին վինկեսլաւոսի չորրորդի, և խոստովանահայր յովհաննայ թագուհւոյն. և զի խառնակեցիկ արքայն մախայր ընդ պարկեշտ վարս թագուհւոյն, սկսաւ ստիպել զհայրն խոստովանութե նր զնք քահանայն յովհաննէս՝ զի յայտնեսցէ ինքեան զգաղտնիս խղճի մտաց նորա. և յոչ հաւանիլ քահանային՝ ոչ ողոքանաց երբեք ինչ առնելով, և ոչ 'ի սպառնալեաց թագաւորին ակն ածելով, յետ բազում անցից գիտաց յովհաննէս՝ եթէ մահ առաջի կայ նմ վր այսր բանի. և ապաւինեալ 'ի բոլոր սրտէ առ 'սբ ածածինն՝ զինուորեցաւ իբրև քաջ նահատակ, մեռանիլ վր ճշմարտութե՝ ցր

մի պահելոյ զկնիք խոստովանութե ։ Ապա իբրև սպառնացաւ նմա թշնամին՝ հեղձուցանել զնա 'ի ջուր, նա ոչ ի՛ւիք եցոյց զերկիւղ. և այնպէս գիշերայն ետ բռնաւորն ընկենուլ զնա 'ի մոլտաւա գետ բրակայու. և այնպէս կատարեցաւ երանելին յովհաննէս վկայական մահուամբ. և 'ի վարել գետոյն զմարմին սրբոյն՝ երևեցան աստղանիշ ջահք պայծառք յերեսս ջուրց. և երթեալ ուխտ եկեղեցւոյն՝ բարձին պատուով զսրբ մարմինն, և եդին 'ի մայր եկեղեցին. ուր պայծառացաւ սքանչելեօք. և որ մեծն է՝ յետ երեքհարիւր ամաց յորժամ բացաւ գերեզման սրբոյն, գտաւ հաւատարիմ լեզուն նր ողջ և անապական. և դարձեալ 'ի զննել զայն եկելոյն 'ի կողմանէ գահին հռովմայ՝ մթագոյն կարմրութի լեզուին ցուցաւ ծիրանեգոյն փայլմամբ ։ Կատարումն սրբոյն եղև 'ի ժԴ դարու ։ Լ. մայիս. 16 ։

Այլ և Յովհաննէս 'ի խոջէ կամ խոչէ ասացեալ՝ կաստիլիացի, նորոգիչ կարգին կարմեղեանց բոկոտն կոչեցելոց՝ յաւուրս սրբոյն թերեզիայի, վախճանեցաւ սրբութեամբ յամի. 1591 ։ Նա Յովհաննէս գոլոմպինոս սենացի հեղինակ կարգին՝ որ կոչի Ճեզուաթի հերոնիմոսի. զի ստէպ կրէր 'ի բերանի զանունն յսի, և ջերմեռանդն էր առ սրբն հերոնիմոս. յառաջագոյն էր ցիկ արծաթասէր և խառնակեցիկ. այլ 'ի լոյս վարուց մարիամու եգիպտացւոյ փոխեցաւ յայր այլ։

և

և վախճանեցաւ սրբութեամբ յամի 1367 ։ Յա
Յովհաննէս մաթայ գաղղիացի՝ հեղինակ
կարգի ազատութեան գերեաց՝ յանուն ամե-
նասուրբ երրորդութեան, վախճանեալ սրբութ.
'ի հռովմ՝ յամի. 1214 ։ Սոյնպէս և այլ
ոմնք յովհաննէս անուն 'ի հին և 'ի նոր դարս
բազում յոյժ. զորոց յերկար լինի ասել ։
Յովհաննիսեանք և Սեփենեանք՝ յիշատակեալք
'ի պատարագամատոյցի մերում. զորոց տես
'ի տօնելիս. հտ. Գ. երես. 359. և 'ի
ծաղիկն վարուց սրբոց տօնելեաց ։
Յովնան մարգարէ տօնելի. հտ. Գ. 309 ։
Յովսէփ ածահայր տօնելի. հտ. Ա. 362 ։
Յովսէփ արեմաթեացի տօնելի. հտ. Ա. 393 ։
Յովսէփ նահապետ տօնելի. հտ. Գ. 241 ։
Յովսէփ և աւհան վկայք կարնոյ՝ տօնելիք.
հտ. Գ. 293 ։
Յովսէփ քահանայ տօնելի ընդ ակիփսիմեայ Ե-
պիսկոպոսի. հտ. Բ. 175 ։
Յովսէփ կամ Յուսուփ՝ նոր վկայ կոչեցեալ՝ 'ի
ժէ դարու, պոնտացի՝ որդի այլազգւոյ, և
առաջին անուն նր բուլպաշըր. որ մնեալ ընդ
մանկունս քրիստոնէից 'ի գիւղն նորաշէն՝
մկրտեցաւ գաղտ 'ի ծնողացն. որք խաբեալ ե-
տուն զնա 'ի դպրոց այլազգեաց 'ի պօլիս,
չկարացեալ նր տանել անպարկեշտ գործոց՝
դարձաւ 'ի տուն, և յայտնեալ զքրիստո-
նէութիւն իւր՝ առնէր երկրպագութիւն քնի
դէպ յեկեղեցին քրիստոնէից. վսյ գանեաց
զնա հայրն, և եթող կիսամահ ։ Ապա փա-

խեաւ մանուկն, և շրջեցաւ 'ի վանորայս Թեղենեաց, Հաղբատայ, սանահնի, և 'ի մակարավանս. և ուսեալ գիր և սաղմոս՝ եղև խարազնազգեաց: 'Ի գնալն յեէմ՝ հանդիպեալ շնորհալի հայրապետին մերոյ տն Ներսեսի 'ի Հռոմկլայ՝ եառ զօրհնութի նր. որ և քաջալերելով զերջանիկ պատանին՝ ասաց մարգարէաբար. Թէ փախձանիս մն հաւատոյ, կարգեսցիս զյիշատակ քո ընդ առաջին մարտիրոսացն: Ապա և դարձաւ 'ի դուռն, եգիտ զհայր իւր մեռեալ. և 'ի քարոզել նորա զճշմարտութիւն մօր իւրում և եղբարցն, նոքա մատնեցին զնա ամիրային դռնայ. և նա փորձեաց զնա, և գան հարեալ եարկ 'ի բանտ զաւուրս բազումս: Եւ յետ կրկին դատելոյ՝ խոցեաց դահիճն ընդ կուշտ սրոյն, մինչև վայթիլ աղեացն, և ապա եհատ զգլուխ նր՝ յամի 1170. ՈԺԹ: Ասացեալ զնա եղբայր նորա յաւազի. և 'ի ծագել լուսոյ 'ի վր սրոյն 'ի գիշերի՝ զահի հարան այլազգիքն. և այր մն սարգիս անուն բարձեալ զնշխարս նահատակին՝ տարաւ 'ի վանս հաւուց Թառայ հանդէպ գառնւոյ. և յետոյ ամփոփեցաւ 'ի տաճարին կոչեցեալ նք յարութի: Տ. յունիս. 19:

Յուդա Թադէոս առաքեալ տօնելի. հտ. Ա. 477:

Յուլիա. տես Է Սառվառեայ:

Յուլիանէ կոյս և վկայ տօնելի. հտ. Ա. 46:

Յուլիանէ կոյս՝ հիմնադիր կուսանաց քօղա-

ւոր

ւոր կոչեցելոյ՝ էր 'ի փալկոներեան տանէ փլորենտացւոց, յամուլ ծնողաց ծնեալ յամի 1270. և սնեալ սրբութբ՝ կրօնաւորեցաւ ժե ամաց, առեալ զքօղ 'ի սրբոյն բենիկայ փիլիպպոսէ, և աշակերտեաց ընդ բազումս և զմայր իւր: Զարմանալի գտաւ 'ի արթնութե աղօթից և պահոց և յամ ճգնութիւս, և ջերմեռանդն յոյժ առ սբ հաղորդութիւն, և առ ցաւոյ ստամոքայ անկեալ 'ի հիւանդութի՝ մերձեցաւ 'ի մահ հա ամաց. և առ չկարելոյ ընդունել զսբ խորհուրդն՝ աղաչեաց զքահանայն, զի թէ ոչ 'ի բերանն, գէթ 'ի վր սրտին դիցէ զհաղորդութիւն. և անդէն աներևոյթ լինէր խորհուրդն սքանչելապէս՝ ողջ մտեալ 'ի սիրտ նր, և կոյսն զուարթ դիմօք աւանդէր զհոգին. և գտաւ 'ի կողս նր տպաւորեալ ձև սբ 'նշխարին՝ հանդերձ նշանաւ խաչի. թող զայլ սքանչելիս յետ փոխման նր: Լ. յունիս. 19: Փոքր մի յառաջ էր և համանուն կոյս Յուլիանէ 'ի կուռնելեան լեռնէ 'ի փլանդրիայ. որ յամի տն 1208. ազդեալ 'ի տնէ յորդորել զառաջնորդս եկեղեցւոյ վասն սահմանելոյ առանձին տօն 'ի պատիւ սբ հաղորդութեան, եղև նախկին առիթ տօնի մարմնոյ և արեան տն. որ հաստատեցաւ յուրբանոսէ դ յամի. 1264. հանդերձ սքանչելեօք:

Յուլիանոս եգիպտացի յանտինոյ քաղաքէ առ դիոկղետիանոսիւ, այր առաքինի և սրբա-

օծեցին յայլ աւուր ։ Հ. ապր. 18 ։ Յ. Լ.
մարտ. 16 ։

Յուլիանոս բժիշկ եմեսացի՝ որ անուանմն քաջի փարատէր զնմ ցաւս, և Սիլուանոս եպս քաղաքին եմեսու, և Ղուկաս սարկաւագն, և Մոկիմոս ընթերցօղ, երին յաւուրս Նումերիանոսի կայսեր. և եղև յաւուր տօնի հեթանոսաց՝ իբրև ուսուցանէր եպսն զժողովուրդն ընդ սարկաւագին և ընդ ընթերցողին ՚ի բաց կալ ՚ի խուլ և ՚ի համր կռոց, կալան զնն դատաւորն, և յետ զանից և բանտից՝ եարկ սաստիկ գազանաց ։ Յայնմ ժամ երկն ողջոյն ետ նցա յուլիանոս բժշկի, և զերկս առեալ համբուրէր զնն իբրև զվկայ գայեալս իւր. վնյ յետ կատարման սրբցն՝ հարին և զնա չարաչար. և բևեռեցին զեր կուսին ձեռսն ՚ի միասին կմ ՚ի մի տախտակ, նոյնպս և զոտսն. հարին և երկայն բևեռս ընդ գագաթն. որով աւանդեաց զհոգին ՚ի մօտակայ այրին. և զմարմինն սրբյն ընդ ապգե-լոյ նորա ամփոփեաց բրուտ մի. և ապա ե-դաւ յեկեղեցւոջն շինեալ յանուն իւր ։ Հ. դեկտ. 22 ։ Յ. փետր. 6 ։

Յուղիոս և Ներսէհոս տօնեսցին. Հռ. Մ. 170 ։

Յովնան և Բարաքիսոս (որ և բրքիշոյ) երին եղ-բարք կմ կրօնաւորք ՚ի բեթասայ մարգա-տանի յաւուրս շապհոյ. և երթեալ ՚ի դիւղն արաք կմ հուպաք՝ որ կային ՚ի բանտի ինն խոստովանող վկայք, քանեթիպաս (կմ զէ-նիքաս), զարար, մարութա, ներսէհս, և-

 ղիա,

ղիա , մարիս , ափիքաս , սաքա , և ամբակ . ( կմ՛ սիմէոն ) , սրտապնդէին զնո ։ Յայն-ժամ կալան մոգպետքն և զսոսա ․ և ոչ կա-րացեալ դարձուցանել 'ի պաշտօն արեգա-կան և հրոյ , կապեցին նախ զձեռս և զոտս յունանուն պարսկօրէն Է փայտ գանից , և հարկին ուժգին ․ և թողին 'ի բացի՝ կամ 'ի լճի յաւուր ձմերայնոյ ․ իսկ զբարդաքիաս կա-խեցին գլխիվայր , և հատին զմատունս ձե-ռաց և ոտից ․ և ապա զերկոսեանն ևս ար-կին 'ի բանտ ։ Յետ այսորիկ զինն վկայից զկողսն այրեցին հրով ․ և զյոնանու քեր-թեցին զգլուխն , հատին զլեզուն , և 'ի մամուլս ջարդեցին զոսկերս ․ իսկ զբարա-քիաս գլորեցին մերկ 'ի վր փշոց ․ և ապա պնդեցին չուանօք Է մարմինն զեղեգունս հերձեալս , մինչև մխել յանձն նորա ։ Նոյն վկայքն սրով կատարեցան և արկան 'ի գուբ խոր ․ իսկ յոնան և բարաքիաս յայլ տան-ջանս վախճանեցան ․ իսկ զմարմինս սրբոցն գնեաց աբգլիշոյ ոմն , և թաղեաց պատուով յամի 327 ։ Զոսս վկայաբանութիւն սոց գրեալ է յեսայի աապետէ յորդւոյ ադամայ կամ աստուածայ արծրունւոյ , զոր եւսոզիոս համա-ըի արպրումյի ։ Հ ․ մարտ ․ 21 ․ կմ՛ 20 ։ Յ ․

Լ ․ մարտ ․ 29 ։

Յաւուրն ինք հայրապետ տօնելի ․ հա ․ Գ ․ 481 ։

Յառաջընթաց կոյս տօնելի ընդ կիպրիանոսի ․ հա ․ Գ ․ 68 ։

Յուն.

Յուստինոս իմաստասէր , որ և Յուստինոս վկայ՝ փիլիսոփայ պղատոնեան , այլ սքանչելի 'ի նախնի հարս եկեղեցւոյ , էր 'ի Նապլուսայ պաղէստինոյ , կմ՛ 'ի նէապօլսոյ սամարւոց , եկեալ 'ի հաւատս քնի՝ տեսանելով զքաջութիւն քրիստոնէից 'ի հալածանս . որ և սկսաւ ընդ իմաստութեն իւրում բանիւ և գրով յաղթահարել զհեթանոսս . և եկեալ 'ի Հռովմ՝ մատոյց առ անտոնինոս պիոս գիրս պխնատուճութե , ընդ ջատագովութե քրիստոնէից . սոյն և միւս ևս գիրս առ մարկոս որելիոս՝ այն է անտոնինոս իմաստասէր , յամօթ առնելով զդիմախօս իւր՝ ըզկրեսկէս փիլիսոփայ կինիկեան . որոյ մախացեալ ընդ սբն յուստինիանոս՝ ետ նահատակել զնա յամի տն 167 : Ի . մայ . 4 : Յ . յունիս . 1 : | . ապր . 13 :

Յուստինոս կմ՛ յուստինոս զօրական քրիստոնեայ հաւատով՝ զինուորեալ 'ի Հռովմ 'ի դունդն ռուստիկոսի եպարքոսի , արիաբար հանդիսացեալ յատենի՝ գլխատեցաւ ընդ այլ վեց ընկերս իւր մն անուանն քսի : Ի . մայ . 30 : Յ . յունիս . 1 :

Յուստոս կմ՛ յուստոս զօրական հռովմայեցի՝ որդի թէոփիլատոսի , 'ի դառնալն յաղթութը ընդ կղօդեայ զօրապետի՝ ետես խաչ սառնատեսիլ , և լուաւ ձայն յորդորական՝ հաւատալ 'ի խաչելեալ փրկիչն Յի . և 'ի Հռովմ արժանի լեալ տեսլեան հրեշտակի՝ մկրտեցաւ , և բաշխեաց զինչս իւր աղքատաց՝ 'ի

'ի ծածուկ պաշտէր զՔս · և 'ի կոչել զնա կռապաշտութեն 'ի վրէժ կալոց՝ յայտնեաց զհաւատս իւր · վսյ գան հարեալ և պնդեալ 'ի կոճղս՝ մատնեցաւ յետոյ 'ի ձեռս մահ-նենգութեան դատաւորին · որ ետ հարկանել զնա 'ի լանջսն արջառաջլաք · և յետ բանտարկութէ՝ յաղջամաւ վիրացն 'ի ձեռն հրեշտակի՝ եդին սաղաւարտ հրայեղէն 'ի գլուխն, և շամփուրս յանութս նր · ապա տարածեալ 'ի վերայ կայծականց՝ կատարեցաւ 'ի տր · բայց և մազ մի 'ի գլխոյն ոչ այրեցաւ · և էր ինքն իէ ամաց ։ – · օգոստ · 21 · Յ · Լ ·

14 ։

Յուեթեկոս ամենելի ընդ ժէ · վարդապետս ·
հտ · Ն · 57 ։

Ն

Նազարիոս, Կելսիոս, Գերուասիոս, և Պրոտասիոս նքա վկայք էին առ առաքելովք 'ի հալածանս Ներոնի ։ Նազարիոս էր հռովմայեցի՝ որդի ափրիկանոսի և պերպետուայ, որք մկրտեալ էին 'ի սրբյն պետրոսէ · իսկ ինքն մկրտեցաւ 'ի սրբյն լինոսէ · և 'ի հասակի քսան ամաց շրջեալ ընդ իտալիա քարոզութբ՝ եգիտ 'ի քաղաքի միում կապեալս վս անուանն քի զերկոսին եղբարս զգերուասիոս և զպրոտասիոս · և 'ի կամիլն յարիլ 'ի նս՝ զանխուք արտաքսեցաւ 'ի քաղաքէն · և առեալ ընդ իւր մանուկ մի եռամեայ՝ կելսիոս

կամ

կամ կելսոս անուն՝ եկն մինչև 'ի միդուլէ ( որ և Մեդիոլան կչ՟ միլան ) . և դարձեալ անդ եգիտ 'ի կապանս զգերուասիոս և ըզ-պռոտասիոս . և ըմբռնեալ առաքեցաւ 'ի Հռովմ. և միւսանգամ դարձաւ 'ի միդուլէ . ուր ինքն Նազարիոս և երջանիկ մանուկն կելսոս յետ սովալլուկ տանջանաց բանտի՝ սրով կատարեցան 'ի ձեռն անոլինոսի դատաւորի : Իսկ գերուասիոս այնչափ հարաւ կապարեայ գնտովք 'ի հրամանէ աստասիոսի դատաւորին , մինչև 'ի նոյն տանջանս փոխեցաւ առ ա՟ծ . և պռոտասիոս յետ բրածեծ լինելոյ գլխատեցաւ : Օ երկոցունց յետոյ զմարմինս արեամբ շաղախեալս և անապական մնացեալս՝ յետ ժամանակաց եգիտ ս՟ծային յայտնութե՟բ ս՟րբն ամբրոսիոս . և 'ի փոխելն ս՟րբ ց՟նց 'ի պատշաճաւոր տեղի՝ կոյր մի մերձեցեալ 'ի պատգարակ վկայիցն՝ լուսաւորեցաւ , և այսահարք բժշկեցան :
Հ . հոկտ . 7 : Յ . հոկ . 14 : Լ . յուլ . 28 .
և յունիս . 19 :

Սախահարք տօնելիք . հտ . Պ . 185 :

Սաբան մարգարէ յիշատակեալ 'ի ձեռագիր յայսմաւուրս Հ . փետր . 3 . յայտնի է 'ի գրոց ս՟րց :

Սարկեառս կչ՟ Նարկիսոս եպս եհմի էր այր ս՟րբ . զորմէ չարանախանձ արք երեք հանին անուն չարութե՟ . և ըստ սուտ երդման իւրեանց՝ ընկալան զպատիժ . մին որդնալից եղև . միւսն այսահարեցաւ , և երրորդն

կու-

կուրացեալ երկոքումբք աչօք՝ խոստովանեն եղև հրապարակաւ զկրաբանութիւն իւր և զընկերացն․ իսկ դա հայրապետն անարատ վարուք հանգեաւ ՚ի խոր ծերութեան՝ ՃԳ, կամ ՃԺԶ ամաց, յամի տն իբր 212։ ✠․ մարտ․ 7․ {}․ ժմ․ օգոստ․ 7։ |․ հոկտ․ 29։

Սամուէլ մարգարէ տօնելի․ հտ․ Պ․ 312։
Սեղոս արքայ տօնելի․ հտ․ Խ․ 276։
Սեպտոբերս ձկեայ․ տես ըս Պետմետրի։
Սեպտոբերս եպիսկոպոս ՚ի պերգեայ պամփիւլեայ առ դեկոսիւ, ըմբռնեալ յերեսնաւորաց, և մատնեալ ՚ի ձեռս պոռնկոսի դատաւորի քաղաքին, իբրև ստիպէին ՚ի զոհել, կնքեաց զերեսս իւր նշանաւ խաչի, և ասէ․ Թէպէտև զամ տանջանս տաջիք ինձ, և հրով այրեսջիք, ես զքս ոչ ուրանամ․ վոյ յետ զանից բեւեռեցին զնա ՚ի խաչափայտի, և սրածեծ արարին․ և այնպէս ուսուցանելով զժողովուրդն՝ կատարեցաւ ՚ի տր։ ✠․ փետր․ 20։ {}․ 28։ |․ 26։

Սերուան կմ ներսեհ երկս պարսից յաւուրս շապհոյ՝ այր հզօր բանիւք և արդեամբք, ստացաւ բզմ աշակերտս․ յորս երևելի էր յովսէփ ծերագոյն քան զվարդապետն՝ ձեռնադրեալ ՚ի նմանէ երէց․ և ըս նմին նահատակեալ սրով յամի 343, հանդերձ այլ ևս քսան վկայիւք․ յորս էին երեք երիցունք՝ յովհաննէս, շապուհ, և սահակ․ և երկու քահանայք՝ պապ և սահակ, և ոհանամ

ձգնաւ

ձգնաւոր կմ կղերիկոս ։ Դ․ Նոյ․ 22 ։ Յ․
Ի․ Նոյ․ 20 ։ Աւուրդ․ տառք ։

Ներսէս Մեծն պարթեւ տօնելի․ Հտ․ Պ․ 375 ։

Ներսէս Շնորհալի՝ որ եւ Կլայեցի՝ տօնելի․ Հտ․ Ա․ 330 ։

Ներսէս Լամբրոնացի տօնելի․ Հտ․ Ա․ 344 ։

Նեստորինէ, որ եւ Կոստորինէ աղեքսանդրացի՝ տօնելի․ Հտ․ Օ․ 306 ։

Նէարխոս․ տես 'ի Պօղիեւքտոս ։

Նէոփիտոս՝ որ թարգմանի նորատունկ, 'ի Նիկիոյ բիւթանացւոց առ դիոկղետիանոսիւ, որդի Թէոդորոսի եւ փլորենտեայ քրիստոնեայ ծնողաց, մինչդեռ խնամածեայ էր՝ ժողովէր զուսումնակիցս իւր՝ զորս տղայս հեթանոսաց, կերակրէր եւ ուսուցանէր զհաւատս քնի․ եւ ած առնէր 'ի ձեռն նորա նշանս երեւելիս․ եւ յետ ձգնելոյ յողիմպոս լերին՝ դարձեալ 'ի Նիկոմիդիա՝ կրեաց զանս եւ քերանս 'ի հասակի պատանեկութեն․ եւ ելանկեալ 'ի հրոյ․ ապրեցաւ եւ 'ի ձեռաց առիւծու՝ որում բնակակից էր յանապատի․ ապա եհար զահիճն սրով կմ՝ գեղարդեամբ 'ի կողս մէջն․ եւ այնպէս կատարեցաւ ։ Դ․ յնվ․ 29 ։ Յ․ 21 ։ Ի․ 20 ։ տես եւ ԺԸ Ս․ Թանասի ։

Նիկանդրոս եւ Մարկիանոս զօրականք առ Մաքսիմիանոսիւ 'ի Վենափրոն՝ առաքեալ 'ի Մաքսիմոսէ դատաւորէ ունել զքրիստոնեայս, էր զոր ազատէին՝ կանխաւ ապա առնելով, եւ էր

էր զոր յետ ընթանալոյ այլոց՝ խնամէին և
պահէին 'ի դիւրի . քանզի քրիստոնեայք
էին . և իւրև յայտնեցին զանձինս՝ յետ
բանտից և կապանաց և տանջանաց՝ կատա-
րեցան սրով ։ Հռ . յունիս . 5 ։ Յ . 7 ։ Լ .
17 ։

Նիկիոյ տք ժողով առաջին՝ տօնելի . Հա . Ն .
410 ։

Նիկիոյ տք ժողով երկրորդ , այն է Եօթներորդ
ԸՆդՀանուր ժողով յՅէ Հարց , գումարեցաւ
յամի տն 787 . և 'ի Թուիս մերում . ՄԼԶ .
'ի Թագաւորութեան կոստանդեայ և Եւրինեայ՝
ԸՆդդէմ մոլորութեան պատկերամարտից ։ Հռ .
Հոկտ . 11 ։ Յ . 12 ։

Նիկիտաս գոթացի առ մեծն կոստանդիանո-
սիւ , ուսեալ զքրիստոնէութիւն 'ի մեծէն
Թէոփիլոսէ եպիսկոպոսէն գոթաց՝ որ մի էր 'ի Հարց
նիկիոյ , յաւուրս յաջորդին նորա ուրփիլոսի
փայլէր ուղղափառութբ , և էր երևելի յազ-
գի իւրում . իսկ աթանարիկոս թագաւոր
արքայն յարուցեալ հալածանս՝ ետ ունել և
զնիկիտաս . և յետ քարշելոյ զնա ընդ երկիր ,
և ջարդելոյ սաստ բռօք զոսկերսն՝ էարկ 'ի
հուր . զորոյ զնշխարս գողացեալ մարկիա-
նոս ոմն՝ եդ պատուով 'ի տապանի . ուստի
կամեցեալ ոմանց բառնալ մասն ինչ՝ արգե-
լան սքանչելեօք ։ Հռ . Յ . Լ . սեպ . 15 ։

Նիկեփոր կմ նիկեփորոս այր Ճակոն և բա-
րեպաշտ յաւուրս կայսերացն վաղերիանոսի
և գաղիենոսի՝ պճնեալ ընդ բարեկամին իւ-
րում

րում սափրիկիոսի քահանային բազում ա-
ղաչանօք և միջնորդօք չկարէր ածել զնա 'ի
հաշտութիւն ։ Այլ յոլմբունել հեթանոսաց
զքահանայն, և 'ի տանել 'ի մարտիրոսու-
թի՛ն, ընթացաւ Նիկիփոռ, և անկեալ յոտս
նո՛ր արտասուօք՝ հայցէր զհաշտութի՛ն ․ իսկ
երկելին այն չառեալ յանձն՝ 'ի ժամ գլխատ-
ման անկաւ 'ի հաւատոց, և կամեցաւ զո-
հել ։ Աղաչէր զնա Նիկիփոռ լալով, թէ մի՛
ուրանար զք՛ն ․ և յոչն լինել ունկնդիր՝ առէ
Նիկիփոռ ցդահիճսն ․ ես խոստովանիմ զք՛ն
ա՛ծ, զոր դա ուրացաւ ․ զի՛մ վիմն հատէք
զգլուխ փոխանակ նո՛ր ․ և այնպէս կատարե-
ցաւ երանելին ը՛ն հրամանի դատաւորին,
և թշուառականն ուրացողն արձակեցաւ ։

Հ ․ Ա ․ փետր ․ 9 ։

Նիկողայոս սքանչելագործ հայրապետ տօնելի ․
հա ․ Թի ․ 305 ․ և 38 ։

Նիկողայոս քոլինորդոյն՝ ծնեալ սքանչելեօք ոճով
Նիկողայոսի՝ եառ զանուն նորա, և 'ի մանկ-
կութենէ վ՛նր առաքինութիւս յանձին բերել՝
եղև նոյնպէս և պահեցող յոյժ ․ և կրօնա-
ւորեալ 'ի կարգի օգոստինեանց անապա-
տաւորաց՝ վարէր զխստակրօն կեանս, և փայ-
լէր ա՛մ գործովք բարուն ․ ձգնէր յաղօթս
ընդդէմ դիւաց, մինչև ձաղկել երբեմն 'ի
նոցանէ ։ Եւ աւուրբք յառաջ քան զմահ
իւր լսէր զօրհներգութիս հրեշտակաց յա՛մ
գիշերի ․ մինչև փոխեցաւ 'ի դասս նց՛ յամի
1306 ․ և յետ մահուն պայծառացաւ սքանչ-

չե-

չեւէօք ։ Լ․ սեպտ․ 10 ։
Նոյ նահապետ տօնելի․ հտ․ Դ․ 205 ։
Նունէ կմ նունի կոյս տօնելի․ հտ․ Դ․ 130 ։

## Շ

Շամունէ մայր եօթանց մակաբայեցւոց տօնելի․ հտ․ Դ․ 383 ։
Շեղա տօնելի․ հտ․ Լ․ 133 ։ որ և Ասողուանոս կարծեցեալ ։
Շինոա կմ շինաւ տօնելի․ հտ․ Ի․ 331 ։
Շմաւոն նախախանջայոցն, կմ Աբիմոն կանանացի տօնելի․ հտ․ Թ․ 96 ։
Շմաւոն ալփայեան ծեր տօնելի․ հտ․ Ր․ 529 ։
Շմաւոն պարսից եպիսկոպոս, ըն եպիսկոպոսապետ տիսբոնի և սղկայ կմ սալիքայ, փառահեղ ծերունի՝ փայլեալ սրբութբ և լուսաւոր վրդպութբ՝ էր 'ի ժամանակս շապհոյ երկայնակեցի, որ բազմօք տառապեցոյց ըզքրիստոնեայս հալածահարութբ հարկաց, զի թերևս դարձցին 'ի դենս պարսից ։ Նա եղև 'ի դառնալ սոյն շմաւոնի յեհմ, ուր գնացեալ յուխտ՝ ողջունեալ էր զմեծն կոստանդիանոս, և տուեալ նաև ընծայս 'ի շէնութի եկեղեցեաց, պահանջէր շապուհ 'ի շմաւոնէ առաւելագոյն հարկս․ և յոչ կարել նորա շատացուցանել զնա, եւ բռնանալն ըերել կապանօք զեպիսն առաջի իւր․ և յաղթահարեալ 'ի զօրաւոր բանից սորին՝

Ն․Ժ․ եպսկ

եարկ զնա՝ ի բանտ . և յարոյց հալածումն սաստիկ ՝ի վր ամ քրիստոնէից եղելոց ՝ի պարսս . մինչ կը նախ զհարիւրաւորս յեկե֊ղեցականաց և յշականաց գլխատեցին ա֊ռաջի աչաց շմաւոնի . և ապա հատին ըզ֊գլուխս սբյ եպսին յամի տն 340 : Սու վկնի նահատակեցան այլևս հազարաւորք . յորս երևելի էր Փուսիկ կմ փասիկ կիւրապա֊ղատն արքունի , և կուսան դուստր նր , ում և երկու քոյրք շմաւոնի , և Ազատ ներքի֊նին . մինչև սուրք սպանողացն բթեցան , և հալածիչք ձանձրացան . և այնպէս դադա֊րեաց հալածումն առ ժամանակ մի : Դ . ապր . 12 : Յ . 14 : Լ . 21 : Ղաւընտիրք . ա . չիր : Բ . Ծնթ : Գ . մնե : Սուող . տաղի :

Շնոհֆոր կմ շնորհաւոր՝ նոր վկայուհին՝ էր ՝ի վերինայրք գեղջէ խաղտեաց կմ բաբեր֊դու , առնակին՝ մայր զաւակաց . որ քաջու֊թբ ՝ի բաց մերժեաց զհրապոյրս ցանկութե այլազգւոյ ուրումն . այլ ՝ի բռնի մտանելն նր ՝ի տունն՝ սպանաւ յեղքօրէ շնոհֆորայ . և ՝ի լինել խնդրոյ արեան սպանելոյն՝ յեր վր հաւ զայն շնոհֆոր . և խբրև ստիպէին զնա դառնալ յայլազգութի և ապրել , նա ասէր . ես զքն ամծն իմ ոչ ուրանամ , և պատրաստ եմ մեռանել ՝ի սէր նորա . արդ դուք զոր ինչ առնելոյ էք՝ արարէք վաղվա֊ղակի . յայնժամ ՝ի վր յարձակեալ՝ սրակո֊տոր արարին զաղախինն քի , յամի 1494 .

Չորք ։ Ճ․ Հոկտ․ 31 ։

Շուշան դուստր մեծին վարդանայ տօնելի․
Հտ․ Պ․ 63 ։

Շուշան պաղեստինացի՝ որ և սոսաննա , առ մաքսիմիանոսիւ , դուստր էր քրմի կռոց և մօր հրէի , յետ մահու ծնողացն մկրտեալ 'ի սիղոնանոս քահանայէ ․ և գոլով կուսան ժԲ ամաց՝ բաշխեաց զինչս իւր աղքատաց , և գերծեալ զգլուխ իւր՝ գնաց առնաձև յԵէմ , և յովհաննէս անուամբ ձգնեցաւ 'ի վանս արանց զամս Ի ։ Իսկ կին մի յեղեթերուպօլսոյ հարեալ 'ի սէր նորա , և ամօթով 'ի բաց վարեալ՝ չարախօս եղև զնմանէ առ կղէոպաս եպսն եղևթերուպօլսոյ , թէ յովհաննէս աբեղայն բռնադատեաց զիս 'ի մեղս ։ Այլ իբրև 'ի վեր ել բանն , զարմացաւ եպսն ընդ առաքինութի շուշանայ ․ և ձեռնադրեալ զնա սարկաւագուհի՝ առաքեաց 'ի վանս կանանց ․ ուր ծաղկեցաւ նա նշանագործութբ ։ Եւ ապա մի քարոզելոյն զքս , և կործանելոյ աղօթիւք զբագինս կռոց՝ աղեքսանդրոս դատաւորն եհատ զստինս կուսին ․ և իբրև ողջացոյց զնա հրեշտակն , հաւատացին դահիճք , և կատարեցան սրով ․ իսկ 'ի բերան շուշանայ առկին կապար հալեալ ․ և այնպէս աւանդեաց զհոգին ․ իսկ մարմին նր թաղեցաւ յեպսարանի ։ Ընդ նմին ասի նահատակեալ և կին ումն մարթա ։ Ճ․ փետր․ 24 , կամ 26 ։ Յ․

Լ․ սեպտ․ 20 ։

# Ո

Ողոմպիա կմ ողեւմպիադա դաւստր ակուն-դի՝ կոմսի 'ի կոստանդինուպօլիս՝ յաւուրս արկադեայ կայսեր, ազգական ողիմպիա-դայ թագուհւոյն հայոց, մնացեալ այրի կուսան՝ բնակէր մօտ 'ի պատրիարգարանն՝ ձգնեալ յաղօթս և 'ի պահս. և զմեծ մասն ընչից ծախէր յաղքատս և յեկեղեցիս. և բազում խնամով պաշտէր զՍբ հայրապետն կյովհան ոսկեբերան, և դարմանէր 'ի հի-ւանդութե նր. իսկ յաքսորիլ նր հրաման-նաւ եւդոքսիայ թագուհւոյն՝ կրեաց և ո-ղոմպիա բազում վիշտս և տառապանս. և արտաքսահմանեալ վս ճշմարտութե՝ զոճա-թամիտ գոհութե կատարեցաւ 'ի քս. պա-րոյ զգովութիս է տեսանել 'ի գիրս ոսկե-բերանին: Հ. յուլ. 19, կմ 24: Յ. յուլ. 25: Լ. դեկտ. 17:

Ողջէնանոս կմ ուլբիանոս եպս ասիայի՝ էր 'ի հալածանս մաքսիմիանոսի. և յաւուր պա-հեց կուոց կալան զնա հեթանոսք, և բռնա-դատէին 'ի զոհս. իսկ 'ի խրատել սրբյն զնս 'ի բաց կալ 'ի մոլորութե անտի՝ այրեցին հրացեալ շամփրօք զթիկունս և զլանջս նր: Յետ այսորիկ փորձեաց զնա և զաշակերտս նր զանխւք եղխանոս բդեշխն ասիայւոց. և ոչ կարացեալ խախտել զնս 'ի հաւատոց՝ ետ այրել կենդանւոյն: Հ. յունիս. 10, կամ 7:

7 : Յ . մայ . 7 : Կայ և ուլժիանոս վկայ տիւրացի առ Մաքսիմիանոսիւ, եղեալ 'ի քուրձ մի Ը իժի և ընդ շան, և արկեալ 'ի ծով : Լ . ապր . 3 :

Ոնեսիմոս աշակերտ պօղոսի՝ տօնելի . Հտ . Ր . 411 :

Ոնեսիմոս կրօնաւոր նշանագործ 'ի կարինեայ գեղջէ կեսարիայ պաղեստինոյ, յետ կրօնաւորելոյ գաղտ 'ի ծնողաց 'ի վանս ուրեք մօտ յեփեսոս՝ յաւուրս հալածանաց եկն 'ի տուն, և առանց յայտնելոյ զանձն՝ բժշկեաց զաչս ծնողացն կուրացելոց յանդադար արտասուաւ . և գրեալ զվարս իւր՝ եթող անդ, և գնացեալ 'ի մագնեսիա ասիոյ՝ շինեաց վանս . և սրբութե՛ վախճանեցաւ ինքն և ծնօղք իւր : Հ . օգոստ . 28 : Յ . յուլ . 14 :

Ոնուփրիոս սըբբայ սքանչելագործ իտալացի 'ի սամնիայ կամպանիոյ, ճգնող 'ի մանկութե՛, շինեաց վանս 'ի փուշատիս, և եղև հայր երկերիւր կրօնաւորաց . և 'ի հօսիլ վիմի մեծի 'ի լեռնէն 'ի վր՛ վանացն՝ նշանաւ խաչի առկայացոյց զվէմն 'ի կախ . արար և այլ նշանաւոր գործս, և հանգեաւ խաղաղութե՛ : Հ . օգոստ . 13 : Յ . յնվ . 16 : Պր . պապ . արամախիօս . ա՛ . 1 :

Ոնոփրէոս նր հայրն տօնելի . Հտ . Կ . 443 :

Ոսկեանք նր ճգնաւորք տօնելիք . Հտ . Ռ . 121 :

Ովսէ մարգարէ տօնելի . Հտ . Կ . 305 :

Անիկետոս տօնելի ընդ Եւստաթիոսի. Հտ. Ժ. 481։

Անդրէաս տօնելի Ը. ապրդայի. Հտ. Ա. 211։

Ասա Նորաներգոսք առին՝ Ադապիոս գապայի, Տիմոթէյոս պոնտացի, Դիոնեսիոսք երկու տրապոլսեցիք, Անմելոս կիսասարկաւագ դիոպոլսոյ, Պլիսոն կմ պաւսիդէս, և երկու Աղէքսանդրոսք եգիպտացիք. որք 'ի հալածանս դիոկղետիանոսի միաբանեալք՝ կապեցին ինքնակամ զձեռս իւրեանց, և եկեալ յատեան ուրբանոսի դատաւորին կեսարու պաղեստինոյ՝ խոստովան եղեն ըզ-քրիստոնէութիւն իւրեանց. իսկ նա յետ բազմօք փորձելոյ և տանջելոյ զնոսա՝ ետ սակրով հատանել զգլուխս ութ վկայիցն. քնի։ Դ. մարտ. 12։ Յ. 15։ Լ. 24։

Աարաւնկենաս կմ ուրսիկիոս 'ի սեբենտիոյ լի-բիկեցւոց՝ տրիբուն կմ զօրապետ առ մաքսիմիանոսիւ, յայտնեաց զքրիստոնէութիւ իւր յատենի առիստիդեայ եպարքոսի. վոյ յետ այլոց խոշտանգանաց պատեցին զձեռս նր ձիթոտ կտաւով, և ցանեալ 'ի վերայ ծծումբ՝ վառեցին հրով. իսկ վկայն ասէ. իրաւամբք զայս կրեն ձեռքս այս, որ կըռ-նաւոր թղթ[?]ն զթշնամին ճշմարտութե ապրե-ցուցին 'ի պատերազմի։ Յիշեալով և այլոց 'ի մեծամեծաց զերախտիս քաջին առն՝ ետուն արձակել զնա. բայց վերստին կալեալ՝ հա-տին զգլուխ նր վո անուանն քնի. և կին մի քրիստոնեայ թաղեաց զվկայն յագարակի

խուրում : Հ . Լ . օգոստ . 14 : Յ . 15 :

Ուրսուլա կին օրինաւ կոյս գեղեցիկ և իմաստուն՝ ասի լինել միամօր դուստր դէոնոտոսի քրիստոնեայ թագաւորի ուրուք 'ի բրիտանիա 'ի Է դարու, խնդրեալ 'ի կնութիւն որդւոյ թագաւորի միոյ հեթանոսի. զոր ոչ կամելով կուսին առնուլ յանձն՝ պատճառանս եդ յերկարելոյ զհարսանիս, և ընտրեալ իւր ընկերս կուսանս իբր բիւր մի կին մետասան հազար՝ ոչ թէ զբօսանաց աղագաւ՝ շրջեցաւ ընդ ծով նաւուք, և զորս էին 'ի նոսա աղջկունք հեթանոսաց՝ դարձոյց 'ի քրիստոս. և յետ գնալոյ մինչև 'ի հռովմ, և շրջելոյ յուխտս՝ իբրև եկին 'ի կողմնս գերմանիոյ, մատնեցան 'ի ձեռս հոնաց բարբարոսաց. և վն պահելոյ զմաքրութիւն և զհաւատս՝ կոտորեցան առ հասարակ սրով և աղեղամբ՝ աներկիւղ զուարթութեամբ յանձինս յուցանելով ըստ յորդորելոյ ուրսուլայ կուսին գլխաւորի նոցա, որ քաջութեամբ զդէմ կալեալ զօրագլխի հոնաց՝ յորմէ հրապուրեալ լինէր, կի լինիցի նմա կին, հարաւ 'ի նմանէ նետիւ. և այնպէս նահատակեցաւ ընկերօքն հանդերձ յամի տն իբր 455 . Լ . հոկտ . 21 :

# Չ

Չեչիլիա . տես Կիկիլիա :
Չորք պսակաւորք . տես Քառասուն :

# Պ

Պախոմիոս կամ պաքոմիոսն որ Հայրն եգիպտացի 'ի Ներքին Թեբայիդոյ՝ էր զաւակ հեթանոսի, կրօնաւորեալ 'ի մանկութէ. և 'ի տեսանելն զբարի գործս քրիստոնէից՝ հաւատաց 'ի Ք͞ս. և չև եւս մկրտեալ՝ արկաւ 'ի բանտ վ͞ս անօրէնանց տ͞ն. ուր ուսաւ 'ի հրեշտակէ զխորհուրդս հաւատոյ. և 'ի դադարիլ հալածանաց առ կոստանդիանոսիւ՝ արձակեալ 'ի բանտէ, միայնացաւ յանապատ, և ծաղկեցոյց զկարգ կրօնաւորութե, շինեալ մեծ վանս 'ի տաբեննա յափն նեղոսի. և ետ կանոնս միաբանից իւրոց՝ ուսեալ 'ի հրեշտակէ ա͞յ. և լի առաքինեամբք ճգնութե և սրբութեան հանգեաւ 'ի ք͞ս յամի 348։ Սոյնպէս և քոյրն պախոմէոսի շինեաց վանս կուսանաց միաբանակեցաց։ Յ. ապր. 28։

Ց. մայ. 6։ Լ. մայ. 14։

Պանդալէոն բժիշկ տօնելի. հտ. Օ. 488։

Պանփիլոս կամ պամփիլոս քահանայ եկեղեցւոյն կեսարու պաղեստինոյ (յորմէ եառ և զմականուն բարեկամն ն͞ր եւսեբիոս կեսարացի), կրթեալ յա͞ծայինն և յարտաքինն գիտութիւն՝ փայլէր առաքինութ͞բ և աղքատութ͞բ. որ և իւրով ձեռամբ օրինակեաց զբազում մատեանս, և ժողովեաց զընտիր օրինակս ն͞ր գրոց։ Իսկ 'ի հալածանս մաքսիմիանոսի չարչարեալ վ͞ս ք͞ի յուրբանոսէ

դատաւորէ՝ եղաւ 'ի բանտ . և վերստին փորձեալ 'ի փիրմիլիանոսէ իշխանէ՝ սրով կատարեցաւ յամի իւր 308 . ԺԲ Նմա և այլ մետասան վկայք՝ սրով և հրով և խաչիւ . որոց անուանք են Սելևկիոս , Վաղէս կմ վաղէնտիոս , Պօղոս , Պորփիւրոս , Յու-լիանոս , Թէոդուղոս , Եղիա , Երեմիա , Եսայի , Սամուէլ , և Դանիէլ ։ ÷ . փետ. 18 ։ Յ . փետ . 16 . Լ . յունիս . 1 ։

Պանտոփէոս աղեքսանդրացի որդի Նեղոսի անթիպատոսի՝ յետ վարժելոյ յիմաստութեան առանձնացաւ յանապատ , և ճգնեցաւ 'ի խուց մի անձուկ զամս իւր . և 'ի հալածանս դեկոսի 'ի ձեռն ղուկիոսի աւգուստալիոսի դատաւորին աղեքսանդրիոյ նահատակեցաւ սաստիկ գանիւք և տանջանօք ։ ÷ . յնվր . 22 ։ Յ ։ 16 ։

Պաղ , որ և բօբաս , լիկայոնացի կմ լիկեա-ցի , 'ի հալածանս մաքսիմիանոսի փայլէր ճգնապաշտութեամբ , և դարձուցանէր զհեթա-նոսս . վ(ասն) որոյ կալաւ զնա դատաւորն . և յետ գանից և բանտի՝ ետ խորտակել զկզակսն , և քերել զմարմինն . և ագուցեալ կօշիկ եր-կաթի յոտս նորա սուր բևեռօք՝ ընթացոյց մինչև 'ի դիոկեսարիա և 'ի սելևկիա . ուր դադարեալ նահատակին ընդ ժանտաթզե-նեաւ՝ աւանդեաց զհոգին . և ծառն պտղա-բերեաց յայնմհետէ թուզ քաղցր ։ Իսկ կին մի՝ որ սրբեաց մաքուր կտաւով զարիւն նոյն , եդ զայն յաչս կուրի , և աւ ժամայն

բա

բացառ ։ ∸ ․ սեպտ ․ 19 ։ {} ․ սեպտ ․ 14 ։
| ․ մարտ ․ 16 ։

Պապիաս , Դիոդորոս կմ Կղոդիանոս , Պնեոդորոս , և Կոնոն , էին յատտաղեայ պամփիւլիոյ առ դեկոսիւ , որք խաշնադարմանք ․ զորս կախեալ պոպղիոսի դատաւորի մն անուանն քնի՝ նահատակեաց սրով նախ քան զկատարումն նեստորիոսի եպսի ։ ∸ ․ {} ․ փետր ․ 4 ։ | ․ փետր ․ 26 ։

Պապիլաս և Պօղոս , և երկու քորք կուսանք Սաղենտէ և Ռէէոբէա ( կամ վաղենտինա և Թէյա ) եգիպտացիք մատնեալ եղեն 'ի հրէից մն քրիստոնէութէ 'ի ձեռս փերմելիանոսի հեթանոս իշխանին դիոկեսարիոյ ․ որ ետ այրել զահեակ ոտս նոցա , և հանել զաջոյ ակն , և հրով և սրով մաշել զնմ մարմինս նց ։ Սաղենտիա առաւել տանջեցաւ քերանօք վասն կործանելոյ զկուռս ․ և ապա հանդերձ քերբն արկաւ 'ի հուր ․ իսկ պօղոս և պապիլաս կատարեցան սրով, աղօթս արարեալ մն հալածչաց՝ մինչև յարտասուս շարժել զամենեսին ։ 'Ի պատճառս վկայից դարձան առ տր բազմութիք արանց և կանանց , և նահատակեցան պէսպէս տանջանօք ։ ∸ ․ յուլ ․ 4 ։ {} ․ 15 ։ | ․ 25 ։

Պասիկրատէս և Վաղենտինոս կմ վաղենտինոս քաջ զօրականք քրիստոնեայք 'ի գնդէն միւսիայ 'ի դորոստոլայ քաղաքէն մակեդոնիոյ , 'ի հալածանս ուեղիանոսի յայտնապէս խոստովան եղեն զքս ․ և սմն պասիկրատէս ե-

Թուք

Թուք յերեսս կռոյն ապողոնի՝ զոր մատու-ցանէր նմա եպարքոսն 'ի պաշտել. վ՟յ գա-նեցին զնա և զ՟րն վաղենտինոս, և եդին 'ի բանտ, արկեալ 'ի պարանոցս նց ծանր անուրս երկաթիս, զորս վկայքն քառասնա-նեակս կոչէին: Ի միւսանգամ փորձել զնս եպարքոսին՝ եկն պապ անուն ուրացող եղ-բայր պատրիկրատեայ, և խրատէր զնա խոր-հել կռոց, և ազատիլ ոճ զինքն. իսկ սբն սաստեաց նմա. և մերժեցեալ 'ի հուրն՝ որ առաջի կայր բագնին, այրեաց զձեռն իւր, և ասէ ցդատաւորն. տես, զի ապականա-ցու է մարմինս. իսկ անմահական հոգիս յուսով կենացն յաւիտենից ամրանայ 'ի ճշմարտութիւն. զնոյն երկրորդեաց և վա-ղենտինոս. և եդ 'ի վ՟ր նց վճիռ գլխատա-ման: Եւ 'ի տեղւոջ կատարման բարեպաշտ մայրն պատրիկրատեայ սրտապնդէր զորդին՝ ուրախութբ տալ զպարանոցն վ՟ս քի, և առնուլ զպսակն լուսոյ. և այնպէս կատա-րեցան սրով՝ պատրիկրատէս իշ՟ամայ, և վա-ղենտինոս Ը: ⁘ . {} . ապր . 24 : Լ . մայ .

25 :

Պապաղեոս Ճգնաւոր եգիպտացի 'ի Թիւա՟ կմ՟ 'ի Թեբէ քաղաքէ, կրօնաւորել 'ի սկի-տէ՝ բժշկէր զամ՟ ցաւս անուանմբն քի, և հալածէր զդևս: Եւ փախուցեալ 'ի փա-ռաց և յեկեղեցն առ նա՝ եկն 'ի կոստանդի-նուպօլիս, և բնակէր 'ի վանսն՝ զոր եգիպ-տացւոց ասէին. և անդ ևս մեծացաւ յայծ-

ա-

անուան սրբութեան նր̃ սքանչելագործութե̃ , արդայ եղեալ յաչս Թ̃գրին և պատրիարգին . մինչև հանգեաւ խաղաղութե̃ 'ի ք̃ս :
Հ . դեկտ . 8 , կմ̃ 16 , կմ̃ 22 : Յ . դեկ . 9 :
Լ . դեկ . 8 :

Պատերմութէոս ծեր հէ անուց , և Կոպրէ խեամնայ , եգիպտացի Ճգնաւորք՝ ամբաստանեալ եղեն առաջի յուլիանոսի յաղէքսանդրիա , թէ արգելուն զժողովուրդն 'ի պաշտամանց դից , և ձգեն 'ի հաւատս ք̃սի : Սա ուրացողն իշխանեալ զնս 'ի լեռնէ, և 'ի փորձել զնս ուրոյն ուրոյն՝ կոպրէ տկարացաւ 'ի հաւատս . այլ աղօթիւք սր̃յն պատերմութէի և արտասուախառն կշտամբութե̃ նր̃ փութով զգաստացաւ , և անարգեաց զուրացողն և զկուռս նր̃ . վ̃ոյ հատին զլեզուն կոպրեայ . և ապա զերկոսին նահատակսն տարածեցին 'ի վ̃ր շանթից երկաթոյ . և ցրտացաւ շանթն . ապա արկին 'ի հնոց . Ը̃ որս խնքնակամ եմուտ և Ս. ղեւոնդէոս զօրական՝ հաւատացեալ 'ի ք̃ս վասն առաջին սքանչելեացն . և երեք անկիզելի մնացին սր̃քն երեքին , հրամայեաց ուռնաւորին զընխատել զնոսա : Հ . յուլ . 16 : Յ . Լ .
յուլ . 9 :

Պատրիկոս կմ̃ պատրիկիոս եպս պրուսայու 'ի բիւթանիա մատնեալ 'ի ձեռս յուլիանոսի իշխանի տեղւոյն վ̃ս անուանն ք̃սի՝ արկաւ յեռացեալ ջուր բաղանեաց , ուր եպսն գործ հրամանացն ոչ առնէր , և իշխանն տայր զօ-

զօրութե կռոց իւրոց . և իբրև ոչ փոխանեաց
ջուրն եպսն , այլ՝ դահճաց , գլխատեցին
զնա և զերիս աշակերտսն իւր , որ էին Ա՛կա-
կիոս կմ̃ կիւրակոս , Մենանդրոս , և Պոլի-
էնոս : Ճ . Ձ . մայ . 19 : Լ . ապր . 18 :
Պարթենիոս բրիտանացի՝ եպս արմաքանայ ,
առաքեալ հիպելինիոյ պպ̃ իռլանտայու կոչե-
ցեալ , ՚ի հովուական կարգէ ընտրեալ՝ ա-
ղօթասիրութբ̃ և ճգնութբ̃ , և սովորեալ
հարիւր անգամ ՚ի տուէնջեան , և հարիւր
անգամ ՚ի գիշերի աղօթել ծնրադրութբ̃ ,
յետ շրջելոյ քարոզութբ̃ յիտալիա և ՚ի գաղ-
ղիա՝ եկանց ՚ի հիպերնիա , և լուսաւորեաց
զբնակիչս տեղւոյն , և եմոյծ զնմ̃ կարգ և
զկրօն ա̃ծպաշտութեան . մինչև անուն կո-
չիլ տեղւոյն կղզի սրբց . և ինքն զօր ա̃մ
զսաղմոսն ողջոյն քաղէր հանդերձ այլովք
պաշտամամբք , երեք հարիւր ծունր կրկնե-
լով յաւուրն , և յիւրաքանչիւր նուագ ժա-
մակարգութե հարիւրիցս խաչակնքելով .
Թող զայլ խստամբերութիւնս և զառաքի-
նի վաստակս . մինչև հանգեաւ խաղաղու-
թբ̃ , և թաղեցաւ ՚ի դունոն ուլտոնիոյ ՚ի
Ե դարու : Լ . մարտ . 17 :
Պարթենիոս նշանագործ եպս լամփսակայ կի-
լիկեցւոյ առ մեծն կոստանդիանոսիւ , որ-
դի քրիստափորի սարկաւագի եպսարանին
մելիտոպոլսոյ , էր ՚ի մանկութէ ա̃ծապաշտ
և ողորմած . և յետոյ եղև հովիւ քաջ և
առաքինի և բազմիմաստ և սքանչելագործ ,
մին-

մինչև յարուցանել և զմեռեալ. որոյ պատ-ուեալ էր 'ի կայսերէ իբրև առաքեալ ոք և մարգարէ. և այսպիսի քաղաքավարութբ փայլեալ յեկեղեցւոջ՝ հանգեաւ 'ի քս. Ն.

փետր. 8 : Ն. փետր. 7 :

Պաւղա այրի հռովմայեցի՝ ազնուատոհմ և մեծատուն, թողեալ զամ մեծութի և ըզ-փառս՝ գնաց փափաքանօք յէմ, և բնա-կէր զամս իը 'ի վանս բեթղեհեմի, սքան-չելի առաքինութբ. մինչև կենդանւոյն նր ճանաչել զնա ամենեցուն. ուսաւ և զեբ-րայական ընթերցումն նր գրոց 'ի միխթա-րութի իւր: Վախճանեալ ծէ ամաց՝ յամի. 407. թաղեցաւ պատուով յառաջիկայուն յովհաննու հայրապետին եէմի. և վարք նր մեծաւ գովութբ գրեցաւ 'ի հերոնիմո-սէ: Ի. յունվար. 26, կմ 27: Վյանս և պաւ-լա անուն կուսանք վկայք. տես և 'ի Յու-կիանոս:

Պաւլինոս կմ պօղինոս, որ և գրի 'ի մեզ պօ-ղոս, եպս նողայ քաղաքի կամպանիոյ յի-տալիա, երբեմն հիւպատոս հռովմայ յամի 378. և յետ մտանելոյ 'ի կարգ Ծի՝ մկըր-տեալ յամի 389. և արժանացեալ քահա-նայութե՝ վարէր կրօնաւորաբար. մինչև ձեռնադրեցաւ եպս յամի 409. և 'ի միւսում տարւոջ՝ յորժամ առին գութք զնողա, և գերի վարեցաւ ընդ այլս որդի այրի կնոջ միոյ, վաճառեաց զանձն իւր նր եպսն 'ի գերութիւն փոխանակ որդւոյ այրւոյն, և գնաց

ջատագով սրբոյն աթանասի . և յաղագս մըր-ցանաց ձգնեալ ընդդէմ արիանոսաց՝ ընդ ա-ւուրբք փոխեցաւ առ Տր : Յ . սեպտ . 11 . և փարք հց :

Պաֆնուտիոս այլ ձգնաւոր եգիպտացի՝ առ դիոկղետիանոսիւ խնդրեալ 'ի դատաւորէ վն դարձուցանելոյ զպապղոսն 'ի քս, իբրև գիտաց՝ թէ զայլս ըմբռնեն փոխանակ իւր, էջ յանապատէ և յանդիման եղև դատաւո-րին . և յետ անողորմ քերծմանց մինչև 'ի կուրութիւն աչեաց՝ բժշկեալ 'ի ձեռն հրեշ-տակի, առաքեցաւ կապանօք առ կայսրն՝ հանդերձ բազմութբ կապելոց . և դիոկղե-տիանոս քանզի ետես զանփոփոխ միտս նց, ետ խաչել զսբն պաֆնուտիոս 'ի վր արմա-ւենւոյ, և զայլ վկայսն գլխատել՝ թուով հինգ հարիւր քառասունևեօթն : Ն . հոկ . 2 : Օ . սեպտ . 25 : Յ . սեպ . 24 :

Պեղագիա կին պեղեգեա կոյս տօնելի՝ առա-ջին և երկրորդ, և միւս ևս կին ապաշխա-րող . հտ . Յ . 281 . 289 . և 295 :

Պերպետուա կին բարեպաշտօն և իմաստուն 'ի մաւրիտանիոյ աֆրիկեցւոց՝ չարչարեալ վն քնի 'ի հազարապետէ տեղւոյն, արկաւ 'ի բանտ ստնդեայ դստերքն՝ որ կոչիւր Փե-լիկիտաս, և չորիւք արամբք՝ որք նովաւ ե-կեալ էին 'ի հաւատս . սքա են Սատուրոս, Սե-կունդոս (կամ ռեվօգադոս), Սատուռնինոս, և Սեկունդոս : Ետես պերպետուա յերազի սանդուղս յերկրէ յերկինս՝ ընդ գործեաց տան

տանջանաց . և վիշապ մի 'ի ներքոյ՝ որ առ-գելոյր զելս կամեցողաց . իսկ փեղիկիտաս դուստրն իւր դինչիկ վաղեալ 'ի գրկաց իւրոց՝ խաղայր ընդ սանդուղս 'ի վեր , և կոչէր նաև զինքն . սոյնպէս և այլք 'ի կապելոց տեսին պէսպէս նշանակս մարտիրոսութե :
Նւ ահա 'ի վաղիւն անդր եկեալ դահճաց՝ կապեցին զսրբուհին պերպետուա 'ի վայրի ցուլս՝ ունելով և զդուստրն 'ի գիրկս . և այնպէս քարշելով ընդ քարս և ընդ թուփս՝ կատարեցան 'ի քս . և չորեքին արքն սրով և գազանօք նահատակեցան : ⁓ . փետր . 23 : {} . փետր . 2 : | . մարտ . 7 :

Պետրոս առաքեալ տօնելի . հա . Գ . 509 . և Դ . 286 : {}իշատակի և տօն շղթայից նր , ⁓ . յունվ . 22 : {} . յունվ . 16 : | . օգ . 1 : և յիշատակ մահուն . ⁓ . մայ . 24 :

Պետրոս հայրապետ աղեքսանդրու , և աքիսաղոմ սարկաւագ նր՝ տօնելիք . հա . Ր . 37 :

Պետրոս եպիսկոպոս յանեայ գեղջէ եւլեւթերոպօլսոյ՝ երիտասարդ զօրաւոր՝ ըմբռնեալ 'ի հալածանս մաքսիմիանոսի 'ի կեսարիա պաղեստինոյ , յետ այլոց տանջանաց բեւեռեցաւ 'ի փայտ , և արկաւ 'ի մէջ առկայծեալ հրոյ . և այնպէս յերկար չարչարանօք աւանդեաց զհոգին : ⁓ . {} . յունվր . 11 : | . յունվ . 3 : Նաւդ . ասորի :

Պետրոս ծախաւոր աֆրիկեցի՝ երբեմն անողորմ առ աղքատս , յետ ակամայ տուչութե հացի՝ խրատեալ տեսլեամբ գիշերոյ , թե

ողորմութեանն բարձրագլուխ պարծի առ դա
տաստանաւ, այնուհետեւ այնչափ ողորմած
եղեւ, մինչեւ տալ մերկոց եւ զներքին հան-
դերձ իւր, եւ արժանի լինել տեսանել զքն՝
արկեալ զիւրեւ զհանդերձն զայն. վոյ ցան-
կացեալ լինել մի յաղքատաց՝ որք զտեղի
ունին քի, եթող զամ մեծութի իւր. եւ
գնացեալ ընդ դպրի իւրում իբրեւ ծառայ
նր, վաճառեցաւ կամաւ 'ի ծառայութիւն
զուղէի արծաթագործի յեհմ. եւ յետ ժա-
մանակաց իբրեւ 'ի վեր ել առաքինութի նո-
րա համդերձ սքանչելեօք, փախեաւ յանա-
պատ. եւ աշակերտեալ՝ որպս ասի, մեծին
մակարայ, փոխեցաւ ճգնութբ առ քս: ~.
ապր. 10: Յուլիանոս. յնվ. 23:

Պետրոս, Պօղոս, Անդրէաս, Դիոնեսիոս, եւ
Քրիստինէ՝ նահատակակիցք գտան իւրեանց.
քանզի պետրոս լամսակեցի փորձեալ 'ի դեկ-
նոսէ կմ յաւխիւզոսէ դատաւորէ վն հաւա-
տոցն քի, սաստիկ հարուածովք զանից
կատարեցաւ: Իսկ պօղոս եւ անդրեաս զօ-
րականք եկեալ ը նոյն իշխանին յաթէնս,
կարգեցան պահապան բանտի՝ ուր եդեալ
կայր վն քի քրիստինէ կուսան ժէ ամաց.
եւ 'ի ցանկալ նց նմա՝ աղախինն քի խրա-
տեաց զնոսա եւ դարձոյց 'ի տր. վոյ դատա-
ւորն զքրիստինէ ետ գլխատել, եւ զնս քար-
կոծել ը մեւս եւս զօրականի հաւատացելոյ՝
որ էր 'ի միջագետաց դիոնեսիոս անուն: ~.
յունիս. 1: Ց. Լ. մայ. 15:

Պետրոս ալկանդարացին 'ի սպանիոյ՝ 'ի կարգէ մինորից, եղև քարոզիչ հզօր՝ դարձուցիչ բազմաց, և խստակեաց ճգնօղ՝ նորոգիչ կրօնին. գործակից եղև և սրբուհւոյն թե- րեզիայի 'ի կանգնումն կարգի նր̄. յորմէ և կենդանւոյն սր̄ կոչիւր: Այնչափ արգոյ էր յաչս իշխանաց և թգ̄րաց, նոյնչափ և խոնարհութ̄ իւրս ասայր 'ի նոյանս: Այն- չափ բորբոքէր 'ի սէրն այ̄ և ընկերին, մինչև առ բոցակիզելոյ սրտին՝ հարկ լինէր ելա- նել 'ի խցէն, և հովահարել 'ի դաշտի: Առ ընկղմելայ 'ի տեսութիւնս վերինս՝ երբեմն անսուաղ մնայր. յափշտակեալ յօդս՝ փայ- լակնացայտ երևեցաւ. էանց ը̅ ուղխս գե- տոց անթաց ոտիւք. կերակրեաց զեղջաւորս սքանչելեօք. գաւազանն հարուածեալ յեր- կիր՝ եղև թզենի դալարացեալ. Ձիւնն ոչ̄ հովանի եղեալ՝ ոչ տեղայ 'ի վր̄ նր̄ յուղե- գնացութե գիշերոյ. ունէր և պշնորհս մար- գարէութե և հոգետեսութե: Փոխեցաւ առ տր̄ յամի 1562. կ̅գ̅ ամաց՝ տեսանելով զսբ̅ս եկեալ յայցելութ̅ի իւր: Այլ 'ի նմին վայրկենի ետես զհոգի նորա վերաբերեալ յերկինս սրբուհւոյն թերեզիա՝ որ էր 'ի հե- ռաւորին վայրի. և յայլում նուագի ետես զնա 'ի տեսլեան, կի ասէր. ով երջանիկ աշխատութի, որ այսպիսում փառաց կես արժանի արար: | . հոկտ . 19:

Պետրոս նոլասկոս դաղիացի, այն՝ որ մինչդեռ աղայ էր յօրօրոցի՝ պարբ մեղուաց գործե- ցին

ցին մեղր յաջոյ ձեռինն նր̃, 'ի չար հասեալ՝ առ խորշելոյ յաղանդեանց հերետիկոսաց՝ գնաց 'ի սպանիա, և նստաւ 'ի վանս սբ̃ ա̃ծածնի՝ 'ի լերինն սերատայ. և եկեալ 'ի բարկինոն՝ յետ տալոյ զա̃մ ինչս իւր յազա-տութիւն գերեաց 'ի ձեռաց անհաւատից, քանզի ցանկայր և զանձն իւր անգամ տալ փոխանակ գերեաց, ետես 'ի տեսլեան զսբ̃ ա̃ծածինն՝ որ յորդորէր զնա հաստել զկարգ-ինչ կրօնաւորաց վ̃ս ազատութե̃ գերելոց. զոր և արար իսկ գործակցու̃թ սբ̃յն հռայի-մունտոսի, և յակոբայ թգ̃ւորին արագոնայ, զի և նմ̃ երևեցեալ էր ամենասբ̃ կոյսն. և կո-չեցաւ կարգն այն՝ կրօն մարիամու տէ մէ́ռ-չէտէ, այ̃ս փրկանաց գերեաց, առնելով և զայս ուխտ չորրորդ, զի թէ պէտք լինիցին կրօնաւորաց կարգին մնալ 'ի գրաւ փոխա-նակ գերեաց՝ սիրով յանձն առնուցուն: Թո՛ղ զայլ առաքինութիւնս և զխիստ վարս՝ ունէր պետրոս և զշնորհս մարգարէութե̃. արժանի եղև տեսանել բազում անգամ զտիրամայրն, և զհրեշտակ իւր պահապան: Փոխի առ տր̃ 'ի ծերութե̃՝ յամի 1256. 'ի

դեկտ. 24: | . յունվար. 31:

Պետրոս ոսկեբան վ̃րդպ 'ի կոռնելեայ քաղաքէ եմիլեայ կից իմոլայ յիտալիա՝ ձեռնադրե-ցաւ եպս̃ հռաւեննայ, ազդմամբ սբ̃յն պե-տրոսի առաքելոյն և ապողինարի վկայի 'ի տեսլեան առ հայրապետն հռոմայ՝ յամի տն̃ 433: Շինեաց եկեղեցիս, և արար բա-

զում գործս 'ի շինուԹի եկեղեցւոյ . քաջ յաղԹահարեայ զժանտն եւտիքէս . սքանչելի էր 'ի քարոզս և 'ի ճառս , որպ յայտ է և յընտիր գրուածոց նր . և յետ ժը ամաց հովուուԹե՝ եկեալ 'ի հայրենիս իւր՝ վախճանեցաւ սրբուԹեամբ յամի իւր 450 : Ի դեկտ . 4 :

Պերեգրինոսեանք . տես ը Սատիոսի :

Պերգէն ( կամ պատասոր ) որ հայրն տօնելի . հտ . Թ . 295 :

Պետն քահանայ տօնելի . հտ . Բ . 163 : ( և Ե . 61 ) :

Պիստիս դուստր սոփիայ տօնելի . հտ . Գ . 398 :

Պիղատոն վկայ տօնելի . հտ . Բ . 223 :

Պողոսէ կամ պողոսա սարկաւագուհի եկեղեցւոյն անտիոքայ ասորւոց՝ էր մայր սրբ քահանայքին յովհաննու , և այրի մնացեալ դաստիարակեր զքաղուամ կուսանս և զկրօնաւոր կանայս իբրև մայր վանից : Ի սնեալ յուլիանոսի ուրացողի զաղմուկն նր ը իւրան , կուռք հեԹանոսացուցին և արծաԹեն՝ ձեռագործ որդւոց մարդկան , եւ բերել տալ առաջի իւր , և ապտակել չարաչար , մինչև ներկան ծնօտք նր յարենէ . բայց վս ծերուԹեն արձակեալ յապատուԹի՝ վախճանեցաւ վարուք սրբուԹե : Ի հոկտ . 8 :

Յ . Լ . 9 :

Պորփիւրոս կամ պորփիւրիոս եպս գազայ՝ ծննդեամբ Թեսաղոնիկեցի , էր յաւուրս

ար

արկադեայ և ոնորիոսի , կրօնաւորեալ նախ
’ի սկիտէ . և ապա եկեալ յե͞ղմ՝ քարոզէր
և դարձուցանէր զհրէայս և զհեթանոսս ,
և ’ի ձեռագործէ իւրմէ կերակրէր զաղ֊
քատս . ոպ͞ և զհայրենի ժառանգութիւն՝
զոր բերեալն առ նա , բաշխեաց տնանկաց ։ Ի
կրելն իւրում զլերդացաւ՝ երևեցաւ նմա
յանուրջս փրկիչն բևեռեալ ’ի խաչի , և
բժշկեալ զնա՝ տայր նմա զխաչ իւր ’ի պա֊
հել ։ Յետ այնորիկ քահանայացեալ՝ կար֊
գեցաւ պահապան նր͞ խաչափայտին յե͞ղմ .
և ’ի մեռանիլ եպ͞սին զայլ՝ ընտրեցաւ յա֊
թոռ նր͞ . և եկեալ ը͞ մետրապօլտին կեսա֊
րիոյ ’ի բիւզանդիա՝ ողջունեաց զնա ոսկե֊
բերանն . և հաւանեցոյց զեւդոքսիա թա֊
գուհին՝ տալ ինքեան ձեռն , զի բարձցէ ’ի
գաղայ քաղաքէ զմնացուածս կռապաշտու֊
թե , և շինեսցէ եկեղեցի խաչանման ’ի մէջ
քաղաքին . և ’ի կատարել նր͞ զխնդիր սրբ͞յ
եպ͞սին՝ ետ նմա ոսկի ըստ բանի սրբյն պաւղ֊
ոսի զփոքրն թէոդոս . և ինքն պորփիւ֊
րոս փայլեալ սքանչելեօք փոխեցաւ առ տր͞ ։

Ւ . մարտ . 6 ։ Յ . Ի . փետր . 26 ։

Պորփիւրոս գուսան եփեսացի՝ նուճագածու
և խաղարկու ’ի թատերս հեթանոսաց՝ էր
յաւուրս որեղիանոսի կայսեր . և զի աղեք֊
սանդրոս կոմս կեսարու կապադովկացւոց
տարաւ զնա ընդ իւր , և հրամայեաց ձևա֊
ցուցանել ը͞ խաղս զմկրտուի քրիստոնէից ,
յորժամ խաղարկուք արկին զպորփիւրոս

'ի կալթսայ ջրալից, յաւել անդ սուտ ե-
պիսկոպոսին զձև բանին, շրջեաց ա՛ծ զմիտս
պորփիւրի 'ի ճշմարտութի. և յեղանելն 'ի
ջրոյ՝ եղ 'ի վե՛ր նո՛ր շնորհք հոգւոյն ս՛բյ, և
երևեցան լուսափայլ հրեշտակք 'ի տեսիլ
ա՛մ բազմութե, և զամպար 'ի ձեռս օրհ-
նեցին զնա. վ՛ո հաւատացին և այլք 'ի բազ-
մուԹն. իսկ կոմսն ամօթով գնաց 'ի տուն
իւր. և 'ի վաղիւն անդր անուն կախարդութե
դնելով 'ի վերայ պորփիւրոսի՝ հրամանն ետ
գլխատել. իսկ նա ուրախութբ՛ մատնեաց
զանձն 'ի մահ վ՛ս քսի, հաղորդեալ նախ 'ի
կղեմենոսէ եպսին կեսարու. որ և ամփո-
փեաց զմարմին նահատակին ։ ⁓ . Նոյ . 7,
կ՛մ 5 ։ Ձ . 4 ։

Պորփիւրոս՝ միմոս ծաղրածու, որ էր հայ-
կատակ կամ զուարթարար յուլիանոսի 'ի
խնջոյս, ըստ օրինակի աւազանոյն ասի եկեալ
'ի հաւատս. բայց ըստ այլոց՝ այլով օրինակաւ
հաւատացեալ 'ի ք՛ս՝ կշտամբեաց զուրացողն
յատենի աւագաց. վ՛ո յետ բազում խոշ-
տանգանաց և գանից մինչև 'ի մերկանալ
ոսկերացն՝ հատին զգլուխ նո՛ր սակրով ։ ⁓ .
Ձ . սեպտ . 15 ։

Պրոբոս տօնելի ընդ տարագոսի . հտ . Լ .
271 ։

Պրոկղ աշակերտ ոսկեբերանի՝ վ՛ս սրբութե
և իմաստութե իւրոյ ձեռնադրեցաւ 'ի սի-
սիննիոսէ պատրիարգէ եպս կիւզիկոյ . այլ
հալածեալ 'ի հերձուածող պաշտօնէից՝ դար-
ձաւ

ձաւ 'ի կոստանդինուպօլիս , և պարապէր անձին խուռուն և ընթերցուածոց . մինչև յետ բարձման պղծոյն նեստորի , և փոխ-ճանելոյ մաքսիմիանոսի պատրիարգի՝ ընտրեցաւ յաթոռ կոստանդինուպօլսոյ երանելին պրոկղ յամի տն 434 . յաւուր աւագ հինգշաբաթու . և յետ վարելոյ զպաշտօն քաջ հովուի առաքելական քարոզութ. ամս ժբ̃ , կամ ժգ̃ , փոխեցաւ առ տր : {} . հոկ.

24 :

Պրոկղ վկայ անկիւրացի՝ էր 'ի հալածանս տրայիանոսի . և մատնեալ 'ի ձեռս մաքսիմոսի դատաւորի՝ տանջեցաւ քերանօք 'ի տեղի ծննդեան իւրոյ 'ի գիւղն կալիպայ : Իսկ իբրև կամէր դատաւորն գալ ձիով 'ի քաղաքն , կապեցաւ յաներևոյթ զօրուէ . և ոչ կարաց յառաջ խաղալ՝ մինչև խոստովան եղև առ ժամն ձեռագրով զզօրութիւն քնի . այլ յետոյ վրէժս կամելով առնուլ 'ի սբյն՝ ետ տանել զնա առաջի իւր 'ի քաղաքն . և անդ հրամայեաց խանձոյել զնա շանթիւք , և ապա հանել 'ի փայտ և նետաձիգ առնել . որով կատարեցաւ նա 'ի քս : Իսկ քանզի զճանապարհայն հանդիպեալ էր վկային եղբօրորդի իւր Իլարիոն , և գիրկս արկեալ նմա արտասուօք , վսյ և զնա կալան սպասաւորք դատաւորին . և յետ եռօրեայ անսուաղ բանտարկութ՝ գան հարին , և քարշեցին ը̃ երկիր զերիս մղոնս . և ապա գլխատեցին : Իսկ նշխարք սբյս բե-

ըեալ 'ի կոստանդինուպօլիս՝ եղան 'ի վանս հիւպատոսին ։ Հ․ յուլ․ 6, կմ․ 11 ։ Յ․ Ի․ յուլ․ 12 ։

Պրոկոպիոս զօրավար էր մանկի առ դիոկղետիանոսիւ, որդի քրիստափորի առն քրիստոնէի ; և թէոդոսիայ մօր կռապաշտի ; յետ վաղամեռիկ լինելոյ հօրն՝ սնեալ ձեռամբ մօրն 'ի պաշտօն կռոց, 'ի զարգանալն պատուեցաւ 'ի կայսերէ, և կարգեցաւ դուքս աղեքսանդրիոյ . և 'ի գալ անդր երկու գընդաւ՝ պատուէր ունելով կորուսանել ըզքրիստոնեայս, ետես կճանապարհայն խաչտառնատեսիլ, և լուաւ ձայն սպառնալեաց մահու՝ եթէ ոչ ծանիցէ զմ̃ զորդին իմ ըզխաչելեալն ։ Նկեալ 'ի սկիւթոպօլիս՝ ետ շինել ոսկերչի զնմանութի խաչի . և նովին վանեալ զասպատակս՝ յաղթահարեաց պաշտէր զքն ։ Ապա 'ի մատնութէ մօրն՝ փորձեաց զպրոկոպիոս ըս̃ հրամանի կայսեր ղուկիոս դատաւորն կեսարու . և գանեալ չարաչար՝ եարկ կիսամահ 'ի բանտ . ուր երևեցաւ տէրն հրեշտակօք, և ողջացոյց զնա . եղեն և այլ սքանչելիք, մինչև հաւատալ և երկուց զօրագլխաց, և մկրտիլ զօրօք իւրեանց 'ի սմին ղեւոնդեայ ։ Հաւատաց և Թէոդոսիա գլխովին մայր սմին պրոկոպիոսի, և այլ տիկնայք ժբ նմին . զորս չարչարեաց դատաւորն գանիւք և հրով . և յետ հերձանելոյ զստինս նց՝ ետ գլխատել ։ Իսկ զպրոկոպիոս հարին արջառաջիլօք . և եգին 'ի ձեռս

նր

նր հուր և կնդրուկ, կը խնկեսցէ կռոց. և նա պահեալ զհոգին ՚ի ձեռին, և ոչ վնասեցաւ. և յետ փորձելոյ զնա դարձեալ հրով՝ հատին զգլուխ մեծի վկային: ∸. յուլ. 7: {}. Լ. 8:

Պրոմոս, Արէոս և Եղիա՝ եգիպտացի քրիստոնեայք յաւուրս հալածանաց մաքսիմիանոսի եկեալ ՚ի կիլիկիա՝ դարմանէին զխոստովանող վկայսն ՚ի բանտի. և ՚ի կամիլ նոցա անցանել յասկաղոն վասն նոցին իրաց՝ կալան զնոսա պահապանք դրան քաղաքին, և մատնեցին ՚ի ձեռս փիրմելիանոսի դատաւորի. որոյ իմացեալ զպատճառս գալստեան նոցա ՚ի բերանոյ նոցին՝ ասէ. արդ որովհետև մարտիրոսասէր էք դուք, ես և զձեզ արարից մարտիրոսս. ապա յետ փորձելոյ զնոսա զանիւք՝ զմինն Արէոս էարկ ՚ի հուր. զմիւսոյն պրոմոսի զաչս բրեաց և զոտս կտրեաց, և զերիս գլխատեաց: ∸. դեկ. 18: {}. 19:

Սօղ պարզամիտ տօնելի. հա. Թ. 246:

Սօղինկարպոս հայրապետ տօնելի. հա. Մ. 544:

Սօղինոս կմ՝ պողիկտոս տօնելի. հա. Մ. 446:

Սօղինոս այլ կեսարացի ՚ի կապադովկիոյ. զոր իշխան քաղաքին ետ քերել երկաթի եղնգամբք, և քանդել զատամունսն. և ապա էարկ ՚ի հնոց հրոյ բորբոքելոյ. և այնպէս կատարեցաւ ՚ի սէրն քնի: ∸. դեկ. 24: {}. դեկ. 19: Լ. մայ. 21:

Պօղոս առաքելոյ տօնելի . Հտ . Գ . 509 . և Ժ . 286 :

Պօղոս անապատական տօնելի . Հտ . Ժ . 239 :

Պօղոս խոստովանող տօնելի . Հտ . Ի . 239 :

Պօղոս աբեղայ աղեքսանդրացի՝ որ նստէր 'ի վանս քարկածուածս կոչեցեալ , եւ հայր աղջկանն՝ զոր ուխտեալ էին ծնօղք նր յազատիլն 'ի մահաբեր հիւանդութենէ աղօթիւք նր հօրն պաքեի . բայց յոչ կամիլ մօրն զրկիլ 'ի դստերէ իւրմէ , և 'ի կապել զնա ը ծի , գնեաց պօղոս զայլ կոյս մի , և զայն ընծայեաց ընդ փոխանակ դստեր իւրոյ : Ապա տեսիլ տեսեալ սոսկալի՝ յորում ծանուցաւ նմա , թէ մեծ չար արար յոչ կատարելն զուխտ իւր , գնաց յանապատն սինայ , և անդ ելաց զմեղս իւր մինչև 'ի մահ : ∴

ապր . 13 : վարք հց :

Պօղոս դպրանի , և քոյր նր Յուլիանէ ծաղկահասակ՝ էին 'ի պտղոմայիդայ պաղեստինոյ . ուր իբրև եկն որեղիանոս կմ վաղերիանոս կայսր հալածիչ քրիստոնէից , քաջալերեաց պօղոս զքոյր իւր , և նովաւ հանդերձ սկսաւ խաչակնքել զդէմս իւր հրապարակաւ , զի պահեսցին 'ի փորձութենէ : Զոր տեսեալ թգրին՝ ետ ունել զպօղոս , և մատուցանել 'ի քերանս . ընթացաւ 'ի տեղին յուլիանէ , և յանդիմանէր զանգթութիւն բռնաւորին . զնոյ և զնա քերեցին երկաթեօք . և յետ բանտարկութէ արկին զերկոսեանն 'ի կաթսայ եռացեալ ձիթով . և ապա տարածեալ

զնա

զնա 'ի վ՟ր երկաթի հրացեալ մահճաց՝ հա-
րին դալար բրօք ։ Նա քանզի երեքն 'ի դահ-
ճաց Մարտինէոս , Սոփրոնիոս , և Լ.հանէոս ,
խնայէին 'ի սէրն , հրաման ետ բռնաւորն
գլխատել զնա , որ՟ և զպօղոս և զյուլիանէ ։
Հ . մարտ . 26 ։ Յ . Լ . օգոստ . 17 ։
Պօղոս և Պառաւէրէոս եղբարք 'ի կղէոպատրի-
դայ առ դիոկղետիանոսիւ մատնեցան 'ի քե-
րանս յարրիանոս դատաւորէ վ՟ս անուան
ք՟սի ։ Քոյր ն՟ց և այլ եղբայր կրսեր՝ Թէա-
գէնոս անուն , երբեմն միայնակեաց , և ա-
պա գող և աւազակ . որ իբրև լուաւ զչար-
չարանս եղբարցն՝ եկն եկաց 'ի հեռաստա-
նէ , և խորհէր նահատակակից լինել նոցա .
իսկ դեն 'ի կերպարանս ալևորի ասէր ցնա .
դու ոչ կարես համբերել տանջանաց , և
այլ աւելի մեղս առնես՝ ուրանալով զ՟ք՟ս ։
Ասէ Թէագինոսն . ես ուխտեցի՝ տ՟ն ի՟մ ծա-
ռայ լինել հաւատարիմ այսուհետև . և
յայն բան կորեաւ սատանայ . և Թէագինոսն
յատեանն ընթացեալ՝ ասէր . ես քրիստոնէ-
եայ եմ , և եղբայր մարտիրոսացս . և այն-
չափ խնչ արար , մինչև բարկացեալ դատա-
ւորն՝ ետ հարկանել շամփուրս հրացեալս
'ի կողս ն՟ր և 'ի լանջս . և 'ի գոհանալ ն՟ր
զ՟ա՟յ՝ երևեցաւ նմա հրեշտակ ա՟յ պսակ 'ի
ձեռին . ապա հատին զգլուխ ն՟ր . իսկ ըզ-
պօղոս և զպաւսէր կաւլանօք ընկլուզին 'ի
ջուրս ։ Հ . փետր . 2 ։ Յ . յունվր . 24 ։

# Ռ

Ռոմանոս կմ Հռոմանոս Երգեցող՝ տօնելի. Հտ. Օ. 222:

Ռոմանոս կմ Հռոմանոս միայնակեաց՝ տօնելի. Հտ. Ր. 459:

Ռոմիլոս կմ Հռոմիլոս տօնելի. Հտ. Ե. 447.

Ռուսինոս կամ Ըռուսինոս այրն սքանչելի՝ որոյ ժամանակն անյայտ, էր յազգէն հայոց 'ի մոկաց գաւառէ՝ կրօնաւորեալ 'ի վանս փառաց. ուր և անտես կարգեալ՝ ծառայէր այ յամ սրտէ՝ ջերմեռանդն աղօթիւք և պահօք, և սպասաւորէր 'ի պէտս եղբարցն ամ խոնարհութբ՝ գծուծ և անշուք ձևով, արհամարհ յաչս ամենեցուն. և յերկիր կալով՝ զերկնայինս խորհէր միշտ. զորոյ ընդծածկեալ առաքինութիւնս յայտնեաց այ միում 'ի կատարեալ միանձանց վանացն՝ ցուցանելով նմա յանուրջս զՌուսինոս լինել բնակիչ դրախտի: Նա իբրև յայտնի եղև բանս այլոց ևս, և կամէին փառաւորել զծառայն այ, նա խորհեցաւ փախչել անտի. և Թէպէտ փակեցին նք զդուռն, բայց Ռուսինոս իբրև արար զնշան սբյ խաչի 'ի վր դրան, առժամայն բացաւ. և այնպէս ել գնաց յանծանօթ տեղի. և կատարեցաւ զկեանս իւր 'ի հաճոյս այ: Հ. տպր. 6, կմ 7:

Ռստակէս. տես Արիստակէս:

Ռա

Սիօղա․ տե՛ս Սարդուհի։ որպ և Սիւեծինա է Ծագուհի․ գո՛րմէ տե՛ս Սանդուհի, և Պոփլափայտի վկայք։

# Ս

Սաբա աբբայն կապադովկացի՝ որդի յովհաննու և սոփիայ, փայլեաց 'ի վերջին աւուրցն թեոդոսի փոքու յսկզբն թգրութե յուստինիանոսի 'ի Ե և Զ դարու։ 'Ի պատանեկութե տեսեալ խնձոր գեղեցիկ 'ի ծառն՝ ցանկացաւ ուտել․ և զի ոչ եր ժամ ճաշոյ, ընկէց զխնձորն յերկիր, և կոխեաց ոտիւքն և ուխտեաց ոչ ևս ուտել զխնձոր։ Ընծեցաւ 'ի վանորայս եգիպ, և աշակերտեցաւ սրբոյն եւթիմիոսի, և ապա սրբոյն թեոկտիստոսի․ և յառաջադէմ գտեալ 'ի ճգնողական վարս՝ գերազանցեաց զամ միայնակեցօք ժամանակին իւրոյ․ շինեաց վանս եօթն, և բղխեցոյց ջուր սքանչելեօք․ բազում ճգնեցաւ ընդդէմ հակառակորդաց չորրորդ ժողովոյն․ և յառաքել իւրում իբրև միջնորդ խաղաղութե 'ի պատրիարգացն եգիպ առ կայսերս յունաց՝ 'ի միում նուագի ետես յուստիանոս կմ յուստինիանոս թգրն պսակ լուսեղէն 'ի գլուխ նոր հօրն սաբայի․ որ և փոխեցաւ առ տր յամի 531․ ձէ, կմ զմ ամայ։ ∴․ դեկ․ 4, կմ 5։ Յ․ Լ․ 5։

Սաբա գոթացի յաւուրս վաղեսի և վաղենտիանոսի, քանզի 'ի մանկութե եղև քրիս-

տոն

տանեայ , և ապա թաղման եղև սուրբ դադա-
ձի 'ի քծ , փոխեցաւ 'ի կռապաշտ գոթաց տէ-
տաքրոյ քան զծառայքն . և 'ի հալածանս ա-
Թանարիկոսի իշխանի նց՝ յետ նահատա-
կութե թաղման յորժամ եւրղնուսին քաղա-
քացիք , Թէ չիք այլ աստ քրիստոնեայ , եկին
եկաց երանելին 'ի մէջ նց , և ասէ . մի իմ
մի՛ ոք եղղնուցու , զի ես քրիստոնեայ եմ .
մէջ քարշեցին զնա ընդ տայլի մերկ և բոկ .
կախեցին զպերանէ տանն , և սախպէին տ-
տել 'ի պոհից կռոց . և յոչն հաւանիլ՝ կա-
պեալ կոճղ մեծ ՟Ը պարանոցն՝ ընկեցին 'ի
գետ յամի 372 . 'ի հասակի ՟Լ ամաց . զոր
հանեալ սորանոս դուքս քրիստոնեայ՝ եած
'ի կապադովկիա . ուր շինեցաւ մկայարան
սբյն : ⌐ . ապր . 13 : {} . 15 : | . 11 :

Սահակ տարադեղեալ առ որեղիանոսի , ՟Ը աղ-
գի գոթացի համարեալ , էր այր ծնապաշտ
և առաքինի՝ մինչև հալածել զոյեւս . և վա
այդ առնելոյ բանտարկելոյ մկայից՝ կոչե-
ցաւ յատեան կայսեր , և խոստովանեալ զքն՝
եղոյծ զկամարն իշխանական , և ընկէց ա-
ռաջի Թգրին . յայնժամ տանջեցին զնա
քերանօք և ջահիւք . արկին և 'ի կաԹսայ
եռացեալ ձիԹոյ , ուստի ել անվնաս . որով
հաւատացին այր Է , և կատարեցան որով
ընդ սբյն սաքայի յամի 271 : ⌐ . ապր . 6 ,
կմ 7 : {} . 25 : | . 24 :

Սաբինոս զօրական 'ի յերապօլսոյ կմ 'ի հիե-
րապօլսոյ եգիպտոսի առ դիոկղետիանոսի՝

ոչ

ոչ ժուժեալ ընդ չարութիւն կռապաշտից՝ ե-
թող զպղծութիւն դքսին իւրոյ, և կայր
'ի թաքստի արտաքոյ քաղաքին ընդ այլ քրիս-
տոնէից պահօք և աղօթիւք. և մատնե-
ցաւ յաղքատէ անտի՝ որում ստէպ ողոր-
մութիւն առնէր. և ածաւ ծանր շղթայիւք
առ Արրիանոս դատաւոր Թեբայիդոյ. և
յետ բազում գանից և քերանաց և այրման
կողից՝ քանզի լուիկ կայր, որպէս թէ այլոյ
մարմինն չարչարիւր, ձանձրացեալ 'ի տան-
ջելոյ՝ ընկեցին 'ի խորս գետոյն զՓիմոն. այլ
ըստ յառաջագոյն գուշակելոյ սրբոյն՝ հանին
զնա հաւատացեալք, և թաղեցին մերձ 'ի
քաղաքն Անտիւրիանու : ❖ . ապր . 14 : {} .
I . և Դր իէլ . մարտ . 13 :
Սարոյն կմ Շ ահպուստ եպս տիսբանի 'ի հա-
լածանս Շապհոյ՝ ետես յանուրջս զսրբն Շմա-
ւոն եպս պարսից զյառաջագոյն նահատա-
կեալն, զի նստեալ կայր 'ի գլուխ սանդղոյ,
և կոչէր զնա գալ 'ի վեր աներկիւղ. որով
զօրացեալ յօժարութբ ետ զանձն 'ի ձեռս
արքունի խնդրակաց. և յանդիման ատենի
արքային արիաբար դաւանեաց զՔս՝ արկա
'ի բանտ, ընդ նմին և ոգիք ճիր՝ արք և կա-
նայք. և յետ հինգ կամ եօթն ամսոց առ-
վու և տառապանաց՝ կատարեցան ամենե-
քին սրով. իսկ սրբն Սադովկ վարեցաւ ծանր
կապանօք 'ի Խուժաստան, և գլխատեցաւ
յամի 342 'ի Բեթլապատ, որ և Լապետ քա-
ղաք : ❖ . փետր . 18 : {} . I . 20 . Սյուող-
ա.

տօրի ։

Սահակ պարթեւ հայրապետ տօնելի․ հտ․ Բ․ 131․ և Գ․ 421։

Սահակ և Համազասպ իշխանք տօնելիք․ հտ․ Օ․ 330։

Սահակ և Յովսէփ կարնեցիք տօնելիք․ հտ․ Գ․ 293։

Սահակ կմ՝ Իսահակ աբեղայ, որ քահանայ կրօնաւոր յարևելեան սահմանաց յունաց՝ յազգէ հայոց, առ վաղեսիւ երթեալ 'ի բիւզանդիոն՝ ճգնէր 'ի վանս ուրեք․ և յելանել թգրին 'ի պատերազմ ընդդէմ գոթաց՝ ասէ ցնա երանելին սահակ․ բաց զեկեղեցիս ուղղափառաց՝ որք միշտն յորդորեն ընդ քեզ; ապա թէ ոչ՝ 'ի պատերազմէդ ոչ դառնաս։ Իսկ արիոսեան կայսրն ետ տանել զնա, և արկանել 'ի վիհ փշոց․ բայց սբն անարատ պահեալ ձեռամբ հրեշտակի՝ եհաս զկնի թգրին, և կալեալ զերասանակ երիվարին՝ ասէր․ ով թգր լուր ինձ, և բաց զեկեղեցիս ուղղափառաց․ այլ նա անսաստ դարձեալ՝ ետ զայրն այ 'ի ձեռս երկուց իշխանաց սատուռնինոսի և բիկտորոսի՝ արկանել զնա 'ի բանտ տղմային մինչև 'ի դառնալ իւր խաղաղութ։ Իսկ սբն ասէ․ եթէ դու ողջանդամ դարձցիս, ապա տրն չէ խօսեցեալ ընդ իս․ բայց ինձ երևեցոյց տր, զի փախստեայ լինիցիս, և մարմին քո հրով այրեսցի․ և եղև այնպէս, զի վաղես վանեալ 'ի գոթաց՝ անկաւ 'ի մարագ մի յարդի․ յոր

վառեցին հուր Թշնամիք, և այրեցին զԹա-
գաւորն և զորս ը՟ Նմա ։ Ապա 'ի Թ՟ղ՟բել
մեծին Թէոդոսի՝ բացան եկեղեցիք ուղղա-
փառաց, և ապատեցան ա՟մ բանտարկեալք
և աքսորեալք 'ի վաղլսէ. և իշխանքն սա-
տորնինոս և բիկտորոս՝ որք 'ի սպահ ունէին
զնոսն սահակ, դարձան յուղղափառութի՟ն,
և ծառայէին սէյն 'ի սենեակ մի առանձին,
զոր շինեցին Նմա. ուր և կատարեաց Նա
զաւուրս իւր 'ի տ՟ր ։ Հ՟. մայ. 29 ։ Տ՟. 30 ։
Սամոնաս տօնելի ընդ գուրիասայ. հտ. Ա.
437 ։
Սամուէլ մարգարէ տօնելի հտ. Գ. 273 ։
Սամուէլ (ը՟ յն. սամէլ կի՞ շաբէլ), Սա-
նուէլ, և Իսմայէլ՝ երեք եղբարք պարսիկք՝
որդիք էին հօր մոգպետի, և մօր քրիստո-
նէի. յորմէ ուսան զք՟ն. և դաստիարակեալ
'ի ձեռս հաւատացեալ ներքինւոյ՝ սիրելի
էին յաչս շապհոյ արքայի. որ պահէր զն՟ս
յարքունիս առանց նեղելոյ վ՟ս հաւատոյ ։
Նա իբրև պէտք եղեն, յղեաց դեսպանութ՟
զերեսին եղբարքս առ յուլիանոս կայսր,
որում հանդիպեցան 'ի քաղաքն քաղկե-
դոն. և տեսեալ զնա՝ զի եմուտ 'ի մեհեանն
զոհել, ինքեանք կային արտաքոյ՝ աշխարե-
լով զյիմարութի՟ն հեթանոսական. վ՟ս և 'ի
հարցանել յուլիանոսի զնոսա՝ համարձակ
խոստովան եղեն զքրիստոնէութի՟ իւրեանց,
և նա հրամայեաց տանջել զն՟ս ։ Ասէ քաջն
Մանուէլ ցյուլիանոս. չէ՞ք քո իշխանութ՟ 'ի

վ՟ր մեր. տուր մեզ պինդ թղթոյն դեսպա-նութե՟, և երթիցուք ուստի առաքեցաքն առ քեզ։ Իսկ բռնաւորն չկարացեալ տանել համարձակութե՟ նո՟ր՝ ետ հարկանել բևեռս 'ի գլուխ նորա և 'ի թիկունս. և ծակել զպձղունս երից եղջարց, և կախել և քերել և հրով խանձողել. ապա տարեալ զնա 'ի կոստանդինուպօլիս՝ անդ եհատ զգլուխս նր՟։ Իսկ այս ևս գործ անզգամութե՟ յու-լիանոսի եղև մի 'ի պատճառաց թշնամութե՟ շապհոյ ընդ նմա. և ինքն ուրացողն խաղա-ցեալ 'ի պատերազմ՝ սատակեցաւ 'ի պարսս։

Յ. յունիս. 20։ Յ. Լ. 17։

Սայեն տօնելի է աբղայի. հտ. Բ. 211։

Սանդուխտ կոյս տօնելի ընդ թադէի. հտ. Գ. 14։

Սարգիս զօրավար տօնելի. հտ. Բ. 3։

Սարգիս և Բագոս տօնելիք. հտ. Գ. 140։

Սեբաստիանոս քաջ զօրավար իտալացի՝ առ դիոկղետիանոսիւ, որդի հօր նարբոնացւոյ և մօր միղուլեցւոյ, վ՟ն քաջալերելոյ ըզ-վկայսն՝ կապեալ 'ի ցից մի նետահարեցաւ. և յետ մնալոյ ող՟ մեռեալ՝ եկեալ երինէ բարեպաշտ կին ոմն բառնալ զմարմին սր՟յն, իբրև եգիտ զշունչ նր՟ 'ի նմա, տարաւ 'ի տուն, և դարմանեաց. ապա ողջացեալ սե-բաստիանոս՝ յանդիմանէ եղև կայսեր, և յանդիմանեաց զամպարշտութի՟ նր՟. է որ սքանչացեալ և ամօթապարտեալ բռնաւորն՝ ետ դանել զվկայն չարաչար, մինչև եհան

զո-

ղոգի, և զմարմինն ընկենուլ 'ի լուծալիս : Եւ Լուսինա կին ա̃ծասէր ազդեալ 'ի սրբոյն տեսլեամբ՝ թաղեաց զնա ը̃ն հրամանի նր̃ 'ի քնարանս վկայից. ուր և շինեցաւ եկեղեցի յանուն սրբոյն սեբաստիանոսի. որ է մին յեօթանց գլխաւոր եկեղեցեաց հռովմայ : Յ. յունվր. 20 :

Սեղբեստրոս հռովմայ հայրապետ տօնելի. հտ. Ր. 420. և Ժ. 374 :

Սերգէոս. տես ընդ Նուգինեայ կուսի. և Սարգիս :

Սեւերիանոս սեբաստացի տօնելի. հտ. Ր. 94 :

Սեւերիանոս կմ̃ սեւերոս օրգացի 'ի պամփիլեայ՝ զօրական առ դիոկղետիանոսիւ, աղաչէր զա̃ծ յաւուրս հալածմանց՝ արժանի լինել մարտիրոսութե̃. և առեալ հրաման 'ի տեսլեան՝ գնաց առ հայրապետն Սեմ̃նոս, և դարձոյց զնա 'ի քս̃. և եկեղ ը̃ նմա 'ի փիլիպուպօլիս թրակիոյ՝ հանդիպեցաւ լէ̃ վկայից, որք սրով և հրով նահատակեցան յապեղիանոս բդեշխէ : Սա կալաւ և զսեւերիանոս և զմեմնոս. և յետ հարուածոց զանից՝ ետ հանել երիս փոկս 'ի թիկանց սրբոյն մեմնոսի. և խորտակեալ զանդամս նորա՝ էարկ 'ի հուր ը̃ այլ վկայսն : Իսկ զսբ̃ն սեւերիանոս քերեցին դահիճք չարաչար. և հրայուցեալ մատնայս դերձկաց՝ անցուցին ը̃ մատունս նր̃, և զօտի ածին ը̃ մէջ նր̃ պկամար շանթացեալ. յետոյ

պնդեալ 'ի մամուլս՝ կամէին սղոցել զնա 'ի գլխոյն և 'ի վայր . բայց յոչ գծել սղոցի 'ի ոսկն , հաստատային դահճիձք 'ի քն . և այլք հատին զգլուխ վկային : Ճ. ապր. 4 , կմ 3 :

Յ. Ն. օգոստ. 20 :

Մէր տօնելի է Նախահարս . հտ. Գ. 200 :

Մեղուժանոս աշակերտ տօնելի . տես Ը իզա :

Մեղուժանոս կմ սուղիանոս եպս գաղացի , երքեմն զօրական , եղև քաջ հովիւ առ դիոկղետիանոսիւ . և վասն լուսաւորելոյ զբազումս՝ կալան զնա բնակիչք կեսարիոյ պաղեստինու , և գանեցին և քերեցին մինչև ցոսկերս . և յետ Թողլոյ առ ժամանակ մի 'ի մետաղս պղնձոյ՝ տեսեալ , Թէ ոչ դադարէ և անդ ուսուցանել , սպանին նախ առաջի նորա զաշակերտեալսն նմին , և ապա հատին զգլուխ սբյ եպսին : Ճ. Յ. Ն. մայ. 4:

Մեղուժանոս կմ սելովանէ սբ հայրն՝ սքանչելի գտաւ յամ առաքինութիս , որպ փոքր 'ի շատէ յայտ առնեն գիրք հարանց վարուց : Ուսա ինքն է ը յայսմաւուրս՝ ծերն այն , որ ետ զլաւագոյն մսղեղէնն իւր աղքատի . և խաբեբայն այն վաճառեաց զայն ը գինւոյ . և 'ի տրտմիլ ծերոյն ը այս՝ երևեցաւ նմա քն զգեցեալ զմազեղէն նր . և 'ի պատմել նր զայս եղբարցն՝ այնուհետև ոչ առնէին ընտրութի աղքատաց . կի քն ըունի՝ ում և տացի յանուն նր . Ճ. մարտ. 11 . և վարք հց :

Մեծոն սեռնաչեաց՝ մեծ և առաջին , տօնելի . հտ.

Հա. Օ. 26:

Սրբոյն սիւնակեաց երկրորդ՝ փոքր կոչեցեալ. յանտիոքայ ասորւոց 'ի Է դարու առ յուստինիանոսիւ, որդի ամուլ ծնողաց՝ յովհաննու և մարթայի, պտուղ աղօթից՝ բարեխօսութ. ամլորդւոյն սրբյն յովհաննու մկրտչի, որ երևեցաւ մօր մանկանն, և նշանակեաց զանուն նր, և օրհնադրեաց զքհ. քաւարութ նորին: Որբ և եղև սիմէոն վեցամեայ, կրօնաւորեցաւ 'ի լեառն սելևկիայ. և 'ի զարգանալն՝ բնակէր անտանելի ճգնութ. զամս բազումս 'ի վր երից այլևայլ սեանց, յորոց միոյն էր վեմ բարձրացեալ 'ի սքանչելի կոչեցեալ լերին. և եղև արժանի տեսանել զքս. և նշանագործութ. բժշկէր զամ ցաւս: Յետ ամի հրամանաւ տն ձեռնադրի քահանայ յեպսկն սելևկիոյ. և զկնի մատուցանելոյ զպր պատարագն աշխհ և զօղութթ՝ ընկալաւ զյայտնութ. փոխելոյ առ ած յետ աւուրց տասանց. և այնպէս գնաց առ անձկալին իւր՝ հէ, կմ ձէ ամաց: Ճ. մայ. 26: Յ. մայ. 23: Ի. սեպտ. 3: Յիշի և այլ սիւմէոն երրդ 'ի Յ. ժմ. յուլ. 26:

Սրբոյն ծերունի, և Աննա մարգարէ, և Եղիսաբէթի մայրն յովհաննու կարապետի յիշին 'ի միասին. 'ի Ճ. յունվ. 10: տես և 'ի Յ. փետր. 3: և Ի. սեպտ. 1: հոկտ. 8: և նոյ. 5:

Սրբոյն կմ սիմոն առաքելոյ, և Յովհաննու ճգնաւոր գործակից նր՝ էին եմեսացիք կմ եղեսա.

սացիք յաւուրս յուստինոսի կայսեր, որք յետ շրջելոյ միաբան յուխտս եհմի և 'ի վանորայս Ճգնեցան յանապատի զամս քառասուն։ Յետ այնորիկ սիմէոն ազգամամբն իւր դարձ արարեալ յեհմ՝ յիմար ձևացոյց զինքն վս քի, կոչեցեալ յամենեցունց սալոս, որ աղուաշ. և յանձն առեալ զամն նախատինս և զգանս՝ ձգէր Ճարտարութբ զբազումս առ ած, համբերձ հրաշագործութբ. և ինքն միանգամ յեօթնեկի ճաշակէր՝ 'ի ծածուկ Ճրգնեալ։ Երկու աւուրբք յառաջ քան զմահն յայտնեաց ած յովհաննու ումն մն սարկաւագի՝ թէ բազում պսակք պատրաստեալ են սիմէոնի. և իբրև աղաչեաց նա զսարկաւագն՝ մի ումեք ասել զայն յառաջ քան զթաղումն, փոխեցաւ առ տր, և երկու աղքատք սարան զնա 'ի թաղել. բայց հրեշտակք փառօք յուղարկաւոր եղեն նմա, զոր և ետես ապականագործ հրէայն՝ որ 'ի ձեռն սբյն եկեալ էր 'ի հաւատս քի։ Իսկ ընկեր սիմէոնի յովհաննէս յանապատի լցեալ զաւուրս իւր՝ էառ զպսակ անապատաւորաց. որպ յայտնեցաւ յովհաննու սարկաւագի։ ~

Յ․ յուլ․ 21 ։ Ա․ 1․ և 21։

Սրբոյն հոյակապին՝ միայնակեաց սքանչելագործ՝ Ճմակերց Նարեկացւոյն, էր որդի ուրումն 'ի նախարարաց հայոց Տին, անդրբատին 'ի մանկութէ պաշտօնասէր և հոգեսէր. որ և բռնի մուծեալ 'ի կարգ Տէի՝ յաւուր անդ հարսանեաց խոյս ետ որպ պալեքսիանոս

նաս 'ի տանէ Ծնողացն , յամի տն իբր 986 . և 'ի Թուին Հայոց . ՆԼԵ , և առանձնացեալ յանապատն Երասխաձորոյ յերկրին Արշա- րունեաց՝ երկու ընկերօք , խարազնազգեաց ճգնութբ և խոնարհութ կենօք . մինչև առնու- նմա շնորհս սքանչելագործութե . որով յա- րոյց 'ի մեռելոց և պաշտակերս իւր զստեփան- նոս : Սա յետոյ փախուցեալ 'ի փառաց անուանն իւրոյ՝ մեկնեցաւ 'ի հայրենի Տէն պատճառանօք ուխտագնացութեան , յամի 1010. բայց և յետ մ յայտնի եղև անուն նր՝ բժշկութբ հիւանդաց և դիւահարաց . վսյ դիմեաց յարևմուտս առ 'ի մնալ անծանօթ . և եկեալ 'ի հռովմ յամի 1012 . յետ այց առ- նելոյ նշխարաց Սբ առաքելոց , յաղօթելն լուիկ 'ի վկայարանի սբյն յովհաննու մկրտչի՝ Թշնամանեալ 'ի կղերիկոսէ ումեմնէ իբրև Թափառական ոք օտար և այլահաւատ , Թարգմանեալ յայտնի կայսոյց երանելին յա- տենի քահանայապետին զուղղափառութի իւր . և պապն սիրեաց զնա յոյժ և գգուեաց , քզի տեսանէր զշնորհս այ 'ի դէմս սբյն . մանա- ւանդ զի 'ի նմին պահու այսահարեալ եր չարախօսն , և աղօթիւք սբյն բուժեալ : Ի յայնմ օրէ գային առ սիմէոն բազում հի- ւանդք . և նա բժշկէր անուամբ տն զամե- նեսին : Սա 'ի փառաւորել իւրում խոյս ետ 'ի հռովմայ . և անցեալ ընդ երկիրն Թոսկա- նայ՝ արար բազմապատիկ նշանս , մինչև լու- սաւորել զկոյրս , և գնայուցանել զկաղս .

ոտք և յերթալն 'ի սպանիա՝ եբաց զաչս կու-
րի միոյ, և բժշկեաց զայսահար դուստր ար-
քային ։ Շրջեաց և ը̅ բրիտանիա և ը̅ գաղ-
ղիա՝ միշտ փախչելով 'ի փառաց, որ ընթա-
նայր զհետ նր̅, եկն պտեղի կալաւ 'ի սահ-
մանս մանդուճայ քաղաքի իտալիոյ՝ 'ի պա-
դոլիուանս վանս բենեդիկտեանց. ուր եղև
սքանչելի օրինակ վանականաց, որք հայէին
'ի նա իբրև 'ի հրեշտակ 'ի մարմնի, տեսա-
նելով զքաղցր և զհեզահամբոյր քաղաքա-
վարութի̅ սր̅յն՝ զոյգ ը̅ խստակրօն ձգնութե̅
պահոց և աղօթից, ոչ ինչ ը̅ հատ 'ի նախնի
հարց սր̅ց անապատաւորաց. Թող և զնշանսն՝
որոց եղեն ականատես բզ̅մ անգամ մանդ-
ուճայիք առ հասարակ ։ 'Ի նոյն վանս վախ-
ճանեցաւ և թաղեցաւ այրն ա̅յ սիմէոն՝
կենդանի սր̅ն և ձգնաւոր նահատակն, յա-
մի 1016. նկե. 'ի յուլիսի 26. և եղեն 'ի տա-
պանէ նր̅ անհամար սքանչելիք. վ̅ոյ և քա-
հանայապետ Ծիմկին եհան կոնդակ վ̅ր կա-
տարելոյ զյիշատակ տօնի սր̅յն. զոր և հաս-
տատեցին յաջորդ քահանայապետք ։ Տես
և 'ի պատմ. հյ. հտ. բ̅. երես. 860 = 865 ։

Ի. յուլիսի. 26 ։

Սեմոն. տես Սիմէոն, և Շմաւոն ։

Սենգնեոս ծերունին, որ և Ջուսիգնիոս ասա-
րի՝ անտիոքացի, էր քաջ զօրական և զօրա-
վար կոստասայ հօր կոստանդիանոսի. սա
որով հաւատացեալ՝ եկաց ցաւուրս յուլիա-
նոսի ուրացողի. յորմէ ստիպեալ 'ի վրհ կռոց՝
յան

յանդիմանեաց զանձն մոլորութի̃ն նորա · ասէ · սր̃ն կոստանդիանոս դարձաւ 'ի կռոց առ ք̃ս ա̃ծ ճշմարիտ · իսկ դու 'ի ք̃սէ դարձար յետս 'ի կուռս ։ Յայնժամ ուրացողն ետ բրածեծ առնել զպատուականն ծերունին՝ որ էր ձ̃ը ամաց · և յետ բանտից և կապանաց գլխատեաց · իսկ եւստաքէոս գաղտ թաղեաց զնա , և գրեաց զպատմութի̃ն նր̃ · և նոյն ինքն եւսիգնիոս ասի աւանդեալ գրով և բանիւ զանցս ժմկին ։ Հ · յուլ · 4 ։
Յ · Լ · օգոստ · 5 ։

Սեսխանոս և Սեսոյէ տօնելի ընդ ճգնաւորս ·
Հտ · Ա · 287 ։

Սեւերոս կմ̃ Սեւերոս անապատական ճգնաւոր 'ի քաղաքէ̃ն անդրապիոյ՝ յարմենիակաց գաւառէ 'ի փոքրն հայս , զառաջինն ժիմել 'ի լեառն մի անապատին՝ հանդիպեցաւ երկուց դիւահարաց յոփհաննու և իլարիոնի , և բժշկեաց զնոսա · և յետ ճգնելոյ յերկար և փայլելոյ սքանչելեօք՝ շինեաց 'ի ստորոտս լերին առ ջրով զեկեղեցի սր̃ն անդրէի , և վանս արանց և կանանց · և ամսով յառաջ ծանեաւ 'ի ձեռն հրեշտակի զվախճան իւր · և 'ի գիշերի աւանդման հոգւոյն՝ ծագեաց լոյս մեծ 'ի վր̃ նր̃ ։ Յետ ժամանակաց յաւուրս կոստանդեայ և եռինեայ մարմինն սր̃յն բերեալ եղաւ յեկեղեցւոջ ամասիոյ 'ի ձեռն եպ̃սի ։ Հ · յունիս · 7 ։ Յ · մայ · 10 · տես և Հիւսիքոս · և Մուքիաս ։

Սեռղաարէկո · տես Ը̃ Բենեդիկտոսի ։

Սէբար

Սմբատ նահատակ՝ արքայ Հայոց Բագրատունի՝
որդի Աշոտոյ առաջնոյ, թագաւորեալ յամի 890.
ՅԼԹ. փայլեաց յոյժ հանդերձ քաջութեամբ և
աստուածպաշտութեամբ ՚ի ժամանակս խռովութեան տանն
Հայոց. զի որչափ յաճախէին նեղութիւնք ՚ի
վերայ նորա յարտաքնոց և ՚ի ներքնոց թշնամեաց,
նա սքանչելի համբերութեամբ և արիութեամբ յԱստուած
ապաւինեալ՝ գտանէր ելս իրաց, և էր անո-
խակալ առ չարարարս իւր, և բարերար առ
ամենեսին. փոյթ ՚ի շինութիւն եկեղեցեաց,
և յորդոր բարեաց ամենեցուն՝ օրինակաւ
իւրով: Այս աստուածասէր թագաւոր յետ բազում և մե-
ծամեծ գործոց՝ անմահական յիշատակաց
արժանի գործ գործեաց՝ դնելով զանձն ՚ի
վերայ հօտին ըստ նմանութեան քաջ հովուի. զի ՚ի
պաշարել ամրոցին Կապուտայ ՚ի Յուսփայ
ոստիկանէ ՚ի պատճառս իւր, յորժամ կո-
տորած լինէր բազմաց ՚ի քրիստոնէից՝ առա-
ւել ՚ի բանակն, ասէ. լաւ է թէ ես մեռայց,
քան թէ կորիցէ այսչափ ժողովուրդ Աստուծոյ. և
վասն արժանի եղև և փառաւոր պսակի մար-
տիրոսութեան: Քանզի իսկ և մատնեաց զանձն
՚ի ձեռս Յուսփայ, նա թէպէտև ՚ի սկզբան
առ երեսս պատուեաց զարքայ, և եթող
յընդարձակի, բայց յետոյ կալեալ նենգաւ՝
եարկ շղթայիւք ՚ի խաւարային բանտ Դունին
քաղաքի, սովու և ծարաւու տանջեալ, զի
թերևս յանձն առցէ ուրանալ զՔրիստոս: Նա ա-
պա տարեալ կապանօք ընդ իւր ՚ի Գողթն գա-
ւառ յանդիման ամրոցին Երնջակայ, կար-
գեաց

դեաց դահիճն 'ի վ՟ր՝ յայտնապէս ստիպել
զթ՟գրն յուրացութ՟ի . իսկ երանելի նահա-
տակն եկաց մնաց հաստատուն 'ի ք՟ս, և հա-
ղորդել՟ ս՟բ խորհրդոյն 'ի ք՟հնյէ ծպտելոյ՝
առաւել զօրացաւ: Ապա յետ բ՟զմ կտտանաց
և ձաղանաց և ձաղկանաց առեալ դահճաց
զթաշկինակ ս՟բյն՝ մխեցին ընդ բերանն, և
ճնչարգել առնէին . և արկեալ գելարանս
'ի կզակս ն՟ր՝ պնդեցին ը՟ պարանոցն . և ե-
դեալ բեռն ծանր 'ի վ՟ր գլխոյն՝ արք տասն
անկանէին 'ի վ՟ր ն՟ր, ճմլել և խեղդամահ
առնել զնա . ետուն և զայլ քստմնելի տան-
ջանս՝ մխելով փայտ սրեալ ը՟ անդամս ն՟ր .
և մինչդեռ շունչ նորա 'ի նմա էր՝ հատին
զգլուխ ս՟բյն . և զմնացեալ մարմին ն՟ր բե-
րեալ 'ի դուռն՝ բևեռեցին 'ի փայտ խաչի :
Եւ ա՟ծ փառաւորեաց զպանծալի վկայն
իւր՝ ծագելով լոյս պայծառ 'ի վ՟ր մարմնոյ
ն՟ր, և տալով շնորհս բժշկութեան հողոյն՝
ուր հեղաւ արիւն ն՟ր պատուական . մինչև
դառնալ և ոմանց յայլազգեաց 'ի ս՟բ հա-
ւատս . և այս եղև յամի 914 . յկգ : . ապր .
16 : Ընդ ս՟բյն սմբատայ արքայի յիշատա-
կին և այլ բազմութ՟իք վկայից, զորս նա-
հատակեաց յուսուփ ոստիկանն 'ի հայս . ո՟մ
և արքանեակ ն՟ր ներսէ յառաման բիւրական
ամրոցէն . զորոց տե՛ս 'ի պատմ. հայոց . գիրք .
գ՟ . գլ . ժէ . և իգ՟ :

ՍՏԵՓԱ ԵՒԳՐԱՓՈՌՆԷ մարզպան՝ բազմայաղթն
կոչեցեալ յաւուրս մօրկայ և խոսրովու, յետ
առա-

առաքինի գործոց վախճանի 'ի Տիսբոն յամի 601. Ծ. և մարմին նորա բերեալ 'ի Հայս՝ թաղեցաւ 'ի Դարոնս ։ ☞. Հոկտ. 26 ։ տե՛ս պատմ. Հյ. Հատ. Բ. 297 = 307 ։

Սմբատ Սպարապետ Բագրատունի՝ աբլաբաս կոչեցեալ, և խոստովանող մականուանեալ, վախճանի 'ի բանտ Բաղտատու. յամի 855. ՅԴ. և միով ամաւ յառաջ նահատակի անդ անտանելի չարչարանօք արքն Ստեփաննոս կոն ։ ☞. Մարտ. 3. զորոց տե՛ս պատմ. Հյ. Հատ. Բ. 451. 452 ։

Սողոն Ըոկլեացի կամ Կիլիկեցի 'ի պոմպէուպօլսոյ՝ Հովիւ խաշանց. որ 'ի Հալածանս Մաքսիմիանոսի՝ 'ի ննջելն Է. կաղնեաւ առ աղբեր ջրոյ՝ յայտնութե̄ ընկալեալ յն̄յ, սկսաւ շրջիլ և քարոզել զք̄ն, և շնորհօքն ն̄յ դարձոյց զբազումս 'ի բնակչաց տեղւոյն ։ Յաւուր միում գաղտ բարձեալ 'ի մեհենէ զոսկի ձեռն կռոց՝ մանրեաց և ետ աղքատաց. և յըմբռնել քրմին զայլս իբրև գող՝ սողոն յայտնեաց զանձն, և յայտնապէս խոստովան եղև զք̄ն ա̄ծ առաջի Մաքսիմոսի իշխանի ։ Ն̄յ ագուցին յոտս եռանելոյն կօշիկս երկաթիս և բևեռեցին, և ընթացուցեալ մինչև 'ի տեղի մի՝ ուր կայր ծառ եղջերենի, կախեցին ընդ այն զվկայն, և գան հարին՝ մինչև եհան զոգի. և զմարմինն 'ի հուր արկին. այլ 'ի լինել անձրևի՝ եկին և բարձին զայն քրիստոնեայք ։ ☞. սեպտ. 11 ։ Յ. Լ ☞. սեպտ. 7 ։

Սոլ.

Սոկրատէս քահանայ եկեղեցւոյն անկիւրիոյ՝ էր 'ի հալածմանս աղեքսանդրոսի կայսեր կմ̃ դատաւորի , այր ա̃ծապաշտ , և նախանձաւոր փառացն ա̃յ . որոյ տեսեալ զխայտառակ հեթանոսաց 'ի տօնի կռոց՝ կործանեաց զսե ղան զոհից նց̃ . վ̃յ կալան զերանելին , և հատին զգլուխ նր̃ ։ Ընդ նմին նահատակե ցաւ և բազմաչարչար սրբուհին Թէոդոտա կին Թէոդոսիա , որ էր պոնտացի կրօնաւոր կուսան , տանջեալ վ̃ս անուանն ք̃սի նախ 'ի դաւառի խուրումքերանոց , և ազատեալ ա̃յ 'ի հնոցէ հրոյն . և ապա 'ի բիւզանդիոն յղեալ , և անտի յանկիւրիա . ուր յետ աս րելոյ 'ի կաթսայէ եռացեալ ձիթոյ՝ գլխա տեցաւ ընդ սր̃ին սոկրատայ ։ Յ̃ . հոկտ . 16 ։

Յ . հոկտ . 29 ։

Սոսթենոսանք վկայք տօնելիք . հա . Ր . 90 ։

Սոփիա , և երեք դստերքն նր̃ տօնելիք . հա . Գ . 398 ։

Սոփոնիա մարգարէ տօնելի . հա . Գ . 314 ։

Սպեւսիպպոս , Եղասիպպոս , և Մեղասիպպոս՝ եռօրեակ եղբարք 'ի կապադովկիոյ կամ 'ի լինգոնայ առ մարկոսիւ որեղիոսիւ , էին ձիավարժ ծառայք հեթանոս թ̃րանց . սա̃ և ինքեանք կռապաշտ էին . բայց հանի նց̃ Լեոնիլլա՝ որ էր քրիստոնեայ , հրաւիրեալ 'ի նոցանէ 'ի կոչունս՝ զոր առնէին 'ի պատիւ դիցն արամազդայ , խրատեաց զնս̃ 'ի բաց կալ 'ի մոլորութենէ փայտեղէն և քարեղէն դրօշելոց . և նք̃ նոյնժամայն խոստովանեցին

վար-

զարձանս կռոց, և զզոհս նոցա արկին 'ի կերա-
կուր շանց ։ Օ այն խմոյեալ տռանց նոցա՝
տանջեցին զնոսա քերանօք. և ոչ կարացեալ
շրջել զմիտս նոցա 'ի քէն՝ արկին զերեսեանն
'ի հուր. իսկ զհանի նոցա գլխատեցին ՟Է կնոջ
միում հաւատացելոյ, որ կոչիւր Յունիլլա
կմ Յուլիանէ, և ՟Է Տուրբոնի նոտարի, որոյ
կործանեալ էր զայլ կուռս ։ Հ. յունվր. 29,
կմ 26։ Յ. Լ. յնվ. 17։

Սպիրիդոն կամ սպիրիդիոն սքանչելագործ
հայրապետն՝ էր կիպրացի հովիւ ոչխարաց,
յետ մեռանելոյ կնոջն ընտրեալ եպս տրի-
միթունայ քաղաքին կիպրոսի, զի էր այր
անմեղ և ճշմարիտ ա՟ծապաշտ, հեզ և խո-
նարհ ։ Սա եղև մի 'ի հարցն նը ժողովոյն նի-
կիոյ խոստովանողական պատուով. զի էր 'ի
թուոյ նց՝ որք 'ի միոյ ականէ զրկեալ առա-
քեցան 'ի մետաղս 'ի հալածանս մաքսիմիա-
նոսի. և 'ի ժողովի անդ անուամբն քի պա-
պանձեցոյց զհեթանոս փիլիսոփայն, և
դարձոյց 'ի սբ հաւատս ։ Ունէր և զհոգի
մարգարէութե, և զհրաշս սքանչելեաց.
որով յերաշտի անձրև էած աղօթիւք, և 'ի
սովու առատացոյց զցորեան ։ Ի պէտս ու-
րումն նեղելոյ 'ի ձեռաց պարտատիրն դար-
ձոյց և զօձ մի յոսկի, և յետ շահելոյ առն և
վճարելոյ զփոխն՝ փոխարկեաց անդրէն զոս-
կին՝ որ էր 'ի գրաւի, յօձ ։ Ան ապատելոյ
զանմեղ ոք 'ի մահուանէ՝ կանխեցոյց զըն-
թացս գետոյն, զի փութով հասցէ յօգնու-
թի ։

թն ։ Նա՝ 'ի խնդրել կնոջ միոյ զզարդս սու-
կիս՝ զորս տուեալ էր Երինեայ դստեր սբյն
Սպիրիդիոնի , կարգեալ երանելին զմեռեալ
դուստր իւր յանուանէ . և նա 'ի գերեզմա-
նէ ձայն տուեալ՝ յայտնեաց զտեղի պահես-
տի զարդուցն ։ Արար նա հայրապետն և
զայլ գործս նշանաւորս . և լի աւուրբք և
արդեամբք հանգեաւ 'ի քս . որ և անկապա-
կաս սքանչելեօք փայլէ ցարդ 'ի Կորկիւրա
( որ 'ի Քօրֆու ) , ուր կայ մարմին նր ։ ÷ .
դեկտ. 16 ։ {} . և տր ինէլ. դեկտեմ. 12 ։ ] :
դեկտ. 14 ։

Ստանիսլաւոս Քօսդքա՝ 'ի տանէ ծերակուտին
Պաղոնիոյ որ Լեհաց , 'ի մանկութէ վառեալ
'ի սէր ածպաշտութե՝ էր մաքուր վարուք .
երթեալ 'ի Վէննա Աւստրիոյ վասն ուսման՝
հարկեցաւ օթևանս ունել 'ի տան լութե-
րականաց ը եղբօր իւրում Պօղոսի , որ ջա-
նէր գոլով կամէր և զՍտանիսլաւոս ձգել 'ի
թուլամիրթ կեանս . և լուծեալ 'ի նմանէ՝
թէ ես վն յաւիտենից կենաց եմ ծնեալ , և ոչ
վասն անցաւորիս , բազմօք նեղէր զնա . յոր-
մէ յոգի խոցեալ Ստանիսլաւոսի՝ միանգամայն
և 'ի ծածուկ ձգնութեց իւրոց վտանգեալ՝
անկաւ 'ի մահիձս մահու . այլ յոյս նր էր 'ի
սբ Ածածինն՝ զոր քաղցրիկ իւր մայր ան-
ուանէր . որով զօրացեալ՝ վանեաց նշանաւ
խաչի և զսատանայ զյարձակեալն երիցս 'ի
վր նր ոճ շուն կատաղի ։ 'Ի ցանկալ Ստա-
նիսլաւոսի հաղորդիլ սբ խորհրդոյն 'ի վեր-

ջին

ջին Թոշակ , որովհետեւ ոչ ոք բերէր նմա զայն յայնպիսի բնակութե , հրեշտակ տն հաղորդեաց զնա . ապա արժանացեալ տե-սանել և զՏր 'ի գիրկս տիրամօր , որ խրատ տայր նմա մտանել 'ի կարգ յսեանց , իսկ և իսկ առողջացաւ . և ծպտեալ 'ի կերպարանս մուրացիկ պանդխտի՝ խոյս ետ 'ի գերմա-նիոյ . և 'ի ճանապարհի դարձեալ ընկալեալ զհաց հրեշտակաց 'ի ձեռաց հրեշտակի , սքանչելապէս եհաս 'ի հռովմ , և 'ի սրբոյն Ֆրանչիսկոսէ պօրճեան յընդհանրական մե-ծաւորէ յսեանց սիրով ընկալեալ եղև յայն կրօն : Այսուհետեւ նա պատանին ստանիս-լաւոս քաղաքավարէր իբրև հրեշտակ 'ի մարմնի՝ յառաջադէմ եղեալ յամ առաքի-նութիւն կրօնաւորական կարգի . այլ առա-ւել բորբոքեցաւ 'ի սէրն այ , մինչև արտա-քուստ ևս բոցափայլ երևէին դէմք նր . և 'ի ձմերանի անգամ պէտք լինէին բանալ զկուրծս՝ զի հովասցի փոքր մի 'ի սաստկացեալ օդոց . և ոչ գոյր չափ արտասուաց նորա 'ի կարօտոյ սիրոյն այ . որով և հալեալ՝ փոխե-ցաւ յերկինս 'ի վիճակն նորընծայութե ան-մեղ պատանեակն ութևտասնամեայ . և պայծառացաւ սքանչելեօք , երևելով յօդս յազատուել բանակի քրիստոնէից և 'ի պահ-պանութի 'ի ժանտամահէ և 'ի հրոյ : Ի :

Նոյեմբ. 13 :

Ստանիսլաւոս պողոնիացի 'ի գաւառովայ՝ ենթ նորին քաղաքի , այր առաքինի և սրբակրօն ,

վ͞ս յանդիմանելոյ զաղքայն լեհաց զբոլես-
լաւոս երկրորդ՝ որ բռնի յափշտակեալ էր
զկին օտարի, կոչեցաւ 'ի նմանէ յատեան՝
պատճառանօք ստութե, որպէս թէ ե͞պսն
յափշտակեալ իցէ զանդս ուրուք. և ս͞րն
ետ պ͞խնի՝ թէ ես գնոյ առի զայն 'ի տ͞ննէն՝
որոյ անուն կոչիւր պետրոս, և ահա երեք
ամք են՝ զի վախճանեալ է այրն. այլ եթէ
կամիս՝ յետ երից աւուրց ածից զնա առաջի
քո 'ի վկայութի։ Եւ յընդունել թ͞գւորին
զայն պայմանն ծաղրելով, ե͞պսն ճգնեցաւ
'ի պահս և յաղօթս զաւուրս երիս. և ապա
յետ պատարագին կոչեաց զպետրոս և յա-
րոյց 'ի գերեզմանէն. որ և եկն յատեան
թ͞գւորին և վկայեաց, թէ վաճառեալ է իւր
զանդս, և առեալ զգինս յե͞պսէ. և ինքն
անդրէն ննջեաց։ Ահի հարաւ թ͞գւորն.
բայց ոչ դարձաւ 'ի չար ճանապարհաց իւ-
րոց. վ͞ոյ և ստանիսլաւոս ընդ բանիւ՛ արար
զնա. ի͞ որ սրտմտեալ թ͞գւորն՝ առաքեաց
զօրականս սպանանել զե͞պսն յեկեղեցւոջ.
և իբրև արգելան ն͞ք աներևոյթ զօրութ͞բ,
ինքնին թ͞գլն գնաց և ձեռօք իւրովք սրա-
խողխող արար զս͞րն. և հրաման ետ մանր
կտրատել զմարմին նորա, և ընկենուլ յե-
րեսս դաշտի. որ անվնաս պահեալ 'ի թռչնոց
և 'ի գազանաց՝ սքանչելի նշանօք ամփոփե-
ցաւ 'ի գղերց եկեղեցւոյ. և միացան ա͞մ
մասունքն 'ի մարմին մի. Թող զայլ հրաշս
ս͞րբյն վկնի։ Եւ եղև նահատակութի ս͞րբյն

ստանիսլաւոսի յամի 1077. 'ի մեծարանս սր̃յն
միքայէլի ; Լ. մայիս. 7 :

Ստեփանէ. տե՛ս ՟Է Ռիկարդի :

Ստեփաննոս նախավկայ տօնելի . հտ. Ա. 263 :

Ստեփաննոս հռոմէացւոյ հայրապետ տօնելի . հատ. Բ. 144 :

Ստեփաննոս ունգրացի տօնելի . հտ. Ե. 62 :

Ստեփաննոս որոտնեցի 'ի վասպուրականն Յե՝ որդի բարեպաշտ երիցու ո̃ր յուսմնկ կոչեցելոյ , փայլեաց առաքինութբ̃ և նշանագործութբ̃ 'ի մանկութէ : 'Ի ժամանակս սովու բաշխեաց աղքատաց վցորեանն աղացեալ մի տան իւրոյ , և լցեալ կզատարկ պարկն մոխրով և աւազով եդեր 'ի տուն . և գտաւ ալիւր պատրաստական . իսկ ինքն դէմ եդեալ գնաց յարգելան ասացեալ վանս բերկրոյ , և կրօնաւորեցաւ : Իսկ եղև քահանայ՝ 'ի մատուցանել զառաջին պատարագն վասն հոգւոյ տիկնոջ ուրումն բերի կոչեցելոյ , ետես տեսիլ սքանչելի . որպէս թէ կայր ինքն յեզր ծովու արեան , յոր անկեալ էր բերի . և յաղօթել իւրում հանեանա 'ի ցամաք : Ու յայնմհետէ սոսկացեալ ստեփաննոսի 'ի մեծութէ քահանայական պաշտաման՝ ոչ իշխեաց յանձն առնուլ պատարագել . քանզի ասէր , արեան ծովուն չեմ բաւական : Ապա հարկեալ՝ ընկալաւ զպաշտօն վ̃պութե , և քարոզէր հոգելից և յորդառատ բանիւք . մինչև կատարեաց զա̃ծահաճոյ կեանս իւր 'ի վանս անդ արգելա

ղանոյ՝ յամի խբր 1251. Հ. և ծաղկեցաւ սքանչելեօք նաև յետ մահուն ։ Յ. յունվ. վար. 3 ։

Ստեփաննոս Եպիսկոպոս սեբաստիոյ՝ առաջնորդ սբ Նշանի վանացն՝ էր այր առաքինի, և զօրաւոր հոգւով և մարմնով. յորոյ վ՟ր բա-րուրանս եդեն քաւրհանադին ամիրային սեբաստիոյ՝ ոչ թէ խորհրդակից էր զօրաց ապստամբելոց յուրմէ, եւ բերել զնա առաջի իւր. եկին և երկու ծերադային աբեղայք Սեղբեստրոս և Թովմաս ։ Նա իբրև ոչ եգիտ 'ի նմա մնաս ինչ, սակայն զնս ուրանալ զքս, և ազատիլ 'ի մահուանէ. իսկ նք առ ոչինչ գրեն զպատուհասն և զխոստմունս նր՝ զսոարթամիտ յանձն առին մեռանիլ վս անուանն քսի. վնյ եւ հրամանն գլխատման ։ Եհար դահճին երկուս զպարանոց եպսին, և ոչ կարաց հատանել. ապա քարշեալ զնա չորից արանց զձեռաց և զոտից՝ հարին սուսերօք, և յերկուս հերձին ը̄ մէջ. յետոյ հատին և զգլուխս երկուց աբեղայից ։ Նա յարկանել զմարմինս երանելեացն 'ի մէջ դիակամանց այլոց մահապարտից՝ լոյսն երկնաւոր որոշեաց զմարմինս նոցա յանսնէց. և հաւատացեալքն եկեալ դողացան և ամփոփեցին զպատուականն նշխարս վկայիցն՝ յամի. 1387. պէզ ։ Յ. յունիս, 23, կմ 26 ։

Ստեփաննոս Ճգնաւոր խարազնազգեաց՝ փոքր, կմ նոր վկայ կոչեցեալ, էր միայնացեալ 'ի չորային լերին բիւթանիոյ՝ որ կոչի ոքսիա,

կմ՟ սբ՟յն օքսենտի, յաւուրս հալածանաց կոպ-րոնիմոսի կաւալինոսի ը՟նդդէմ ս՟բ պատկե-րաց. և բազումք յուղղափառաց թաքչէին 'ի լերինս, և ոմանք անկեալ 'ի վանս ճգնա-ւորին ստեփաննոսի՝ կրօնաւորէին: Նա և իբ-րև յղեաց թ՟գ՟րն առ ստեփաննոս զհամա-խոհս իւր՝ միաբանել 'ի մոլորութ՟ պատկե-րամարտից, նա ամօթով դարձոյց զն՟ն. վ՟յ կալան և ածին զնա անարգանօք յատեան արքայի. ուր երանելին ջատագովեաց զպա-տիւ ս՟բ պատկերաց բանիւք հարցն ս՟բց. և 'ի ցուցանել՝ թէ անարգութ՟ պատկերին է անարգանք սկզբնատպին, ընկեց 'ի գետին զդրամ մի՝ յորում կայր պատկեր թագա-ւորին, և կոխոտեաց: Յայնժամ հարին դահիճք զս՟ն աքացի և բռնցի, փայտիւ և քարամբք. և տարեալ արկին 'ի բանտ. այլ նա՝ և անդ քարոզէր զճշմարտութի՟ն. վ՟յ հանեալ արտաքս՝ քարշեցին ը՟ն գետին. մին-չև հարեալ հաստ բրով ը՟ն գագաթն՝ աւան-դեաց զոգին: ✠ . դեկտ . 5 : տ՟ր իէլ . նոյ . 29 : Յ . Լ . նոյ . 28 : Ընդ նմին կատարե-ցան և երկու աբեղայք Պետրոս և Ա՟թա-նաս կի՟մ անդրէաս ջատագովք ս՟բ պատկե-րաց. Թող և զայլ նահատակեալս 'ի նոյն հալածանս: Յիշի առ յոյնս 'ի մարտի 27. միւս ևս Ստեփաննոս խոստովանող՝ հայր վանաց Թրիլեայու, վախճանեալ յաքսորս յաւուրս լևոնի արծրունւոյ՝ վ՟ս պաշտպա-նութե՟ն ս՟բ պատկերաց:

Ստե

Ստեփաննոս Թագաւոր Հունգարաց թր Մաճա-ռայ, յաջորդեալ հօր իւրում Գեյզէի՝ եղեւ առաջին քրիստոնեայ թգր այնր տրութե յամի տն 997. եւ ծաղկեցոյց անդ զքրիս-տոնէութի, եւ շինեաց բազում եկեղեցիս եւ վանորայս եւ տեղիս բարեպաշտութե. էր աղքատասէր յոյժ, եւ ծառայէր անձամբ հիւանդաց. նոյնպէս եւ աղօթասէր առա-ւել՝ մինչեւ յափշտակիլ արտաքոյ իւր, եւ երեւիլ նաեւ վերացեալ յերկրէ. կրթեաց զորդի իւր Եմերիկոս յածպաշտութե, մին-չեւ լինել եւ նմա 'ի կարգի սրբց. եւ զժողո-վուրդն կառավարեաց ամ արդարութբ եւ ուղղութբ, եւ առաջնորդեաց 'ի ճշմարիտ հաւատս եւ 'ի վարս բարիս, մինչեւ կոչիլ ա-ռաքեալ հունգարիոյ. ջերմեռանդն էր յոյժ առ սբ ածածինն, զոր անուանեաց պաշտ-պան եւ տիրուհի տրուե իւրոյ. եւ վախճա-նեցաւ սրբութբ 'ի պուտա՝ յամի 1038, յա-ւուր վերափոխման կուսին յօգոստ. ժե:

Ս. սեպտ. 2:

Ստրատոն կամ ստրատոնիկոս, Փիլիպպոս, եւ Եւտիքիանոս՝ մտեալ 'ի թէատրոն հեթանո-սաց 'ի Նիկոմիդիա՝ քարոզեցին եւ դարձու-ցին զբազումս յանարժան խաղուց եւ 'ի մո-լորութէ կռոց. իսկ իշխանն կալաւ զնս, եւ ոչ կարացեալ ձգել 'ի կոհս դից իւրոց, էարկ զմկայս առաջի գազանաց. յորոց պահեալ կատարեցան հրով 'ի մէջ հնոցին: Հ. օգ. 28: Յ. Ս. 17: Նուող. ասորի:

Սրապեոն ճգնաւոր տօնելի . հտ . Խն . 292 :

Սրապեոն հինոյ յաշակերտս սեւերոսի կայսեր 'ի Է դարու՝ ըմբռնեալ յակիւղաս իշխանէ , և ոչ հաւանեալ ուրանալ զՔս՝ կործանեաց ոտիւք զկուռս , վոյ յետ զանից և քերանաց արկաւ 'ի բանտ . ուր ողջացեալ Տր՝ զբազումս ձգեաց 'ի հաւատս . և կատարեցաւ այրմամբ 'ի հուր : ⁓ . յուլ . 6 ; կմ 11 : Յի .
Լ . 13 :

Սօսան և Րուշան կուսանք հարազատ քորք 'ի տոռոմենայ սիկիլիոյ՝ չարչարեալք վն քնի յիլլիդոսէ իշխանէ սովու և ծարաւու 'ի բանտի՝ կատարին օրով : ⁓ . յունիս . 7 :

## Վ

Վահան գողթնացի տօնելի . հտ . Ա . 188 :

Վաղերիոս կմ վաղերիանոս , կանոնիկոս , ակիւղաս՝ տօնելիք . հտ . Ա . 631 :

Վանական վարդապետ , այն է յովհաննէս վանական տաւուշեցի յեղէն արցախոյ՝ էր աշակերտ իմաստասիրին մխիթարայ գոշի , մանուկ տածեալ և ուսուցեալ՝ մնացեալ 'ի վանս գետկայ . ուր քահանայից քահանայ օծեալ՝ եղև կատարեալ գիտնաւոր , և վերայ ծաղկեալ ամ իմաստութբ և առաքինութբ : Ապա շինեաց յաղթուճանս զխորանաշատ վանս , և դարձեալ զայլ մենաստան յանապատի 'ի մեծ քար փորուածոյ . և ստացաւ բազում աշակերտս : Երեաց և բազում տա-

ռա

ռատպանս 'ի յարձակմանն Թաթարաց 'ի կող-
մանս Հայոց և աղուանից, և վաճառեցաւ
'ի գերութի. այլ ազատեալ տր՝ դարձաւ
յառաջին վանս իւր. և ձգնեցաւ խստակրօն
վարուք, պարապեալ միանգամայն և անդա-
դար յուսուցանել և 'ի գրել բազում ինչ
արդիւնաւոր. յորոց սակի է և ժողովական
նամակ նր գրեալ վն եղման հոգւոյն սբյ 'ի
հօրէ և յորդւոյ իբրև 'ի միոյ սկզբանէ՝ խո-
րագոյն և զօրաւոր իմաստիւք լի, համաձ-
վկայութե հարցն սբց. և յետ բզմ առա-
քինի վաստակոց փոխեցաւ առ տր՝ կ ամաց,
յամի 1251. Հ: Չ. տպ. յունվար. 31.
Ձեռ. մարտ. 18: 'Ի հրամանէ սորին վա-
նականն վրդպի յօրինեցաւ և տր իւր յայս-
մաւուրս իւր, որ ընտիրն է քան զայլ օրի-
նակս:

Մասնաւոր կայս տօնելը. հտ. Օ. 465:
Մասն կամ Նասոս ազգախինն քնի էր յեղե-
սիա 'ի ժամանակս մաքսիմիանոսի կայսեր,
տուեալ 'ի կնութի առն հեթանոսի կամ
քրմի. բայց նորայ զորդիս իւր 'ի հաւատս
ածպաշտութե. և անուանք նոցա Թէոդո-
նիս, Ագապիոս, և Պիստոս: Սոքին իբր
այլոց անհաւատ մատնեաց զկին իւր և զոր-
դիս 'ի ձեռս բդեշխին. որոյ տեսեալ զհաս-
տատութի երանելեացն 'ի քս՝ նախ ետ քե-
րել զթեոդինիս առաջի մօրն և եղբարցն:
նոյնպէս և զագապիոս տանջեցին, և քեր-
թեցին զմորթ գլխոյն. ապա և զպիստոս

բազմօք չարչարեցին . այլ զմի մի 'ի նոցանէ քաջալերէր մայրն երանելի . և ն.ը ուրախութ.ք կրեցին զմահ առ սէրն Քի . մինչև գլխատեցան երեքեանն , և թաղեցան 'ի միում գերեզմանի ։ Իսկ սրբուհին վասա՝ ըս ոմանց կարծի գլխատեալ է ուղղիս իւր . և ըս այլոց պատմի՝ չարչարեալ 'ի զանազան տեղիս պէսպէս տանջանօք , և ապա սրով նահատակեալ 'ի հրամանէ զևոնդիոսի դատաւորին հէլլեսպոնտոսի . իսկ մարմինն թաղեցաւ ասեն 'ի սոփոնիայ քահանայէ յեզր ծովու 'ի բարձր տեղւոջ ։ Դ . օգոստ . 20 ։ Յ . Ա . 21 ։ Հաւըստ . Ա . ձիգ . և Բ . մխ ։

Վասիլիոս կմ Բասիլիոս եպս ամասիոյ պոնտացւոց՝ էր 'ի ժամանակս լիկիանոսի . որոյ կինն կոստանդինա քոյր մեծին կոստանդիանոսի ունէր աղախին մի գլափիւրա անուն . որ վն զերծանելոյ 'ի դարշ տռփանաց լիկիանոսի՝ խորհրդով թագուհւոյն փախեաւ առն կզեստուք յարևելս , և եկեալ յամասիա՝ ապաւինեցաւ առ եպսն վասիլիոս . և կի ունէր է իւր ինչս՝ ետ 'ի շինութի եկեղեցւոյն , զոր կանգնէր եպսն . ետ բերել և 'ի թագուհւոյն այլ ևս ինչս և աղերս 'ի պէտս եկեղեցւոյն ։ Իբրև 'ի վեր ել բանն , առաքեաց լիկիանոս հրաման առ դատաւորն ամասիոյ՝ յղել առ ինքն զվասիլիոս և զգլափիրա . և կի սա վախճանեալ գտաւ , տարան զօրականք զվասիլիոս կապեալ

մի յուրացուն, եւս յանդիմանն եղեւ նմա, եւ քաղցրութ՟ աղաչեաց զնա խնայել 'ի հաւատացեալս. իսկ բռնաւորն յետ թշնամանելոյ զՔս հաւատս սկսաւ բռնադատել զվարդան յօրէնս իւր. այլ գտեալ զնա հաստատուն 'ի Քս եւ աներկիւղ 'ի բանս՝ եհար ձեռօքն զգլուխ նր։ Նա եւ վարդան. եթէ երկնչէիր 'ի հարուածոց, ոչ գայիր այսր. այլ եւ պատրաստ եմ եւ 'ի մահ վս Քի. յայնժամ բռնաւորն ետ արկանել զնա 'ի կոճեղս բանտի, եւ տանջել զերիս աւուրս։ Ապա մերկանին փորձեալ զնա, եւ յաղթահարեալ յիմաստութն բանից քաջ նահատակին՝ եհան զՃիռ մահու 'ի դատաւորէն 'ի մէջ արտաքոյն. եւ նա ուրախութ՟ ընթանայր 'ի տեղի կատարմանն իւրոյ 'ի կոչումն թագաւորի. եւ այնպէս կատարեցաւ 'ի ձեռաց ամբարիշտն հարուածով սրոյ եւ փայտի եւ քարի՝ յամի. 1421. դհէ. եւ թաղեցաւ 'ի քրիստոնէից. եւ արար ած բազում նշանս 'ի ձեռն պատուհականն նշխարաց նորա։ —.

մայ. 16.

Մարդինէ կոյսն հայկազուն, որ եւ Մարթոյ աղախինն քսի՝ էր սրբակրօն կուսան պարկեշտ առանձնացեալ 'ի տան լուին՝ պահօք եւ աղօթիւք. եւ գործէր կտաւս, եւ 'ի ձեռագործէ անտի առնէր ողորմութի։ Իսկ ոմն երիտասարդ հարեալ 'ի գեղ անարատ հարսինն քսի, 'ի գնալ նր յեկեղեցի՝ սկսաւ զձանձապարհայն ողջել զնա 'ի սէր իւր. եւ

մեր-

մերժեալ 'ի նմանէ՝ այնուհետեւ յղէր ստէպ պատգամ՝ ամուսնանալ օրինօք հարսանեաց ։ Նա իբրեւ յանհնարս եմուտ կոյսն մաքուր, կոչեաց յաւուր միում զերիտասարդն ․ եւ խնդրեալ 'ի նմանէ՝ թէ, զեղեցկութիւն աչաց իւրոց գայթակղեցուցանէ զնա, լաւ համարեցաւ զվնաս մարմնոյ իւրոյ քան զվնաս հոգւոյ եղբօրն ․ վաղ եւ անդէն եհար յաչս իւր զասեղ ոստայնին՝ որով գործէր, եւ կուրացոյց զերկոսին բիբս ։ Յայնժամ զղջ մեծ եղեւ երիտասարդին ․ մինչզի եթող նա զ[illegible], եւ գնացեալ յանապատ՝ կրօնաւորեցաւ 'ի հաճոյս Այ ։ Իսկ սրբուհւոյն վարդենի խաւարեալ աչօք՝ ճգնեցաւ այլ եւս յերկար ժամանակս ․ եւ ամենին վարուք գնաց առ անձկալ փեսայն իւր Քս ․ եւ ի յազդելոյ հրեշտակի Այ եկին հարք յանապատէ՝ 'ի թաղումն պատուական մարմնոյ նորա ․ եւ բազում սքանչելիք եղեն յաւուր հանգստեան նր ։ Մանաւանդ սորա այսչափ է մեզ գիտելի, զի էր յառաջ քան զԺԵ դար ․ որոյ հետեւ զանանի եւ 'ի յայսմաւուրս ար իցէ, եւ յիշատակի զօրն 'ի յոլովանէ եղանակացուոյ 'ի մեկնութե մատենոյն ․ Հ․ մայիս ․ 9 ։ Տր ի 5Լ ․ մայիս ․ 7 ։ Յ — Հ․ մայ ․ 5 ։

Սարգսեանք կամ Վարդանեանք ․ տես Շուշան դուստր վարդանայ ։

Սարգսեանք կէ՞ տօղ՝ նոր ծաղիկ հարաւային ամերիկոյ 'ի լիմայ քաղաքէ, կոյս սքանչե-

լի

քն 'ի մանկութէ, հարկեալ 'ի ծնողաց մտա-
նել յԾ՝ խափանեաց զայն կարելւլ զկարս
իւր, և ետ զանձն յոյժ ձգնութիւն. և ըն-
կալեալ զաքեմ դոմինիկեան կուսանաց՝ յա-
ռաջեաց յոյժ վարս խստակրօն սրբութե.
անձանձիր յաղօթս, և անտրտունջ յոյժ
վիշտս ներքոյ և արտաքոյ. արժանացեալ
յետ բազմամեայ ցամաքութե հոգւոյ՝ նո-
րանոր երկնային տեսլեանց 'ի պահապան
հրեշտակէն, 'ի կատարինեայ սենացւոյ,
և 'ի տր̃ ա̃ծածնէ, որ կոչեաց զնա փարդու-
հի մարիամեան. և փրկիչն երևեալ նմա՝
ասէր. վարդենի՛դ սրտի իմոյ դու լեր ինձ
հարսն: Պայծառացաւ և ազգի ազգի սքան-
չելեօք յառաջ և յետոյ ք̃ զվախճան իւր:

Լ. օգոստ. 30:

Մարտահէ կմ̃ օղա Հիդերղացի՝ սրբասէր և
ձգնազգեաց 'ի մանկութէ, 'ի մատաղ տիս
յարոյց 'ի մեռելոց զհանի իւր. և 'ի տա-
նել զհաց իւր զաղտաբար առ աղքատս՝
հարցեալ 'ի հօրէն, զի՞նչ է՝ զոր ունիս ը̃
անթոցդ, փոխեցաւ հացն 'ի վարդս: Հա-
զիւ̃ զեօթն ամհասակին լցեալ՝ առ փափա-
քանաց կրօնաւորելոյ ձգնէր 'ի խցի իւրում
իբրև 'ի մենաստանի. և 'ի հիւծելոյ զմար-
մինն անկեալ 'ի խօթութի՝ առողջացաւ 'ի
տեսլենէ տր̃ ա̃ծածնի, և հրամանն ընկալաւ
մտանել 'ի կուսաստան փրանկիսկեանց:
Տասնամեայ էր՝ յորժամ հոգելից և ազդու-
բանիւք դարձոյց զբազումս 'ի հերետիկո-
սաց.

տաց . որք մծ և զարմի֊ն հանդերձ յաքսորս տառապեալ՝ գուշակեաց զխաղաղութի֊ն եկեղեցւոյ 'ի մահուա֊ն փրիտերիկոսի երկրորդի . լուսաւորեաց զաչս կնոջ միոյ կուրի . և 'ի դարձուցանել զայլ կին յողջամիտ հաւատս՝ եմուտ 'ի խարոյկ բորբոքեալ . և ել անտի անվնաս յետ երից ժամուց : Դարձ արարեալ 'ի վիդերպիոն՝ աղաչեաց զկուսանս վանաց մարեմայ 'ի վարդից՝ ժողովել զինքն . և իբրև չեղև ընդունելի վասն աղքատութե֊ն , ասէ . յետ մահուա֊նս բնակեցայց առ ձեզ . և ինքն եկեալ ճգնէր 'ի խուց տան իւրոյ . ուր զկնի երկուց ամաց սրբութե֊ փոխեցաւ առ քս՝ ութևտասան ամաց : Յետ թաղմանն իբրև անցին ամիսք իբր երեսուն՝ երևեցաւ հռովմայ հայրապետին աղեքսանդրի չորրորդի՝ որ նստէր յայնժամ 'ի վիդերպիոն , և երիցս ազդ արար փոխել զտեղի գերեզմանին իւրոյ . և իբրև բացին , գըտաւ անապական , և փոխադրեցաւ 'ի վանսն գուշակեալ 'ի նմանէ . ուր և միշտ մնայ ողջ մարմին թարմ , և պայծառացաւ սքանչելեօք : Իսկ վախճանն եղև յամի իբր 1255 :

Ի . սեպտ . 4 :

Սրբուհի կին ռօզալէա , կոյս այլ հնազոյն և ճգնազգեաց պանորմացի 'ի տանէ մեծին կարողոսի , մ՟ծ բազմապատիկ ճգնութե֊ 'ի յայրս և սքանչելագործութե֊՝ մեծապէս փառօք պաշտի 'ի բալերմօ սիկիլիոյ . որոյ ոք նշխարացն և մեք արժանի եղաք տեսող֊

լև

Սեղբեստրոս կմ Վկլինդրիոս եպս բանտարկեալ վն քի 'ի Կիպրոս առ Դիոկղետիանոսիւ , իբրև լուաւ՝ եթէ Մաքսիմիանոս իշխանն հրամայեալ է մատնել 'ի պղծութի անառակ արանց զկուսանաւորս , յետ աղօթելոյ արտասուօք՝ պատեաց փիլոնաւն զերեսս իւր , և ընկեց զինքն 'ի վայր . իսկ դահճքն եղին զմարմինն նորա 'ի քուրձ , և արկին 'ի ծով : Իսկ ահա երևեցաւ որ եպսն նաւարդայ՝ գնալով առաջի նդ պսակ 'ի գլուխ , և ոստ արմաւոյ 'ի ձեռին , և երգ օրհնութե 'ի բերան նորա . և իբրև հասին ձկնապարհորդքն 'ի ցամաք , և աներևոյթ եղև տեսիլն , բացեալ նդ զքուրձն՝ զոր գտին , գիտացին՝ զի է մարմին սրբոյն , և թաղեցին պատուով : . օգոստ . 30 :

Սեկունդինոս , Սեկունդ , Ինկենտիոս , Սիզդիոս , Պենտորորոս , Սերափիոն , և Պասիկոս՝ եօթն վկայք կատարեցան 'ի կորնթոս առ դեկոսիւ , կմ յեգիպտոս առ նաւմերիանոսիւ , 'ի տերտիոսէ դատաւորէ : Սեկոնդինոս յետ կորուսանելոյ զակն աջոյ՝ ծայրաքաղ լեալ 'ի մատանց ձեռաց և ոտից՝ ջարդեցաւ 'ի մամուլս , կմ ջախջախեցաւ 'ի սանդի : Սեկունդ յետ հատման լեզուին՝ նովին ջախջախանօք կատարի : Ինկենտիոս յետ ձմլելոյ 'ի մեքենայս՝ մինչև հատել զարիւն ընդ ռնգունս , ը բերանն , և ը ականջս , նոյնպէս նաև փանդաղահարեցաւ , կմ կախեցաւ զհերայ յարմաւենի ծառոյ : Սիզդիոս հատեալ

ձե-

Ձեռօք և ոտիւք՝ գլխիվայր կախի, և ծխեն 'ի ներքոյ զգարշահոտ իրս : Պնտոգորոս 'ի հուր այրի : Սարապիոն գլխատի : Պապիաս 'ի փայտ բևեռեալ՝ ապա վիմով 'ի ծով արկանի : Հ. փետր. 9 : Յ. յնվր. 31 : Լ. փետր. 25 :

Սէնկէնտիոս կմ Վինչէնցիոս անուամբ, (որ և վինչէն կմ բեկենտի, Թարգմանեալ յաղթօղ, ոմ և առ յոյնս նիգոն,) բազում են հին վկայք և խոստովանօղք. այլ հռչակաւոր գտաւ յոյժ 'ի յետին ժամանակս վինչենցիոս փերրարացի կոչեցեալ՝ ծն 'ի փերրերեան ազնիւ տանէ, որ 'ի վալէնցիա սպանիացւոց, 'ի տղայ տիոյ հասուն մտօք և հոգեսէր. որ և ութևտասնամեայ մտեալ 'ի կարգ քարոզչաց դոմինիկեանց, և զարգացեալ 'ի գիտութն և 'ի սրբութն՝ եղև գզարուոր քարոզ բանին, և դարձոյց զբազումս 'ի հերձից և 'ի հեթանոսաց. ոմ և զմեղաւորս 'ի չար ճանապարհաց՝ ահեղ հնչեցուցանելով զերկիւղ դատաստանացն այ. Թօղ զիւր խստակրօն վարս, և զայլ գործս մեծամեծս 'ի նպաստ եկեղեցւոյ և 'ի հաշտութն Թագաւորութեց : Առնէր պճնոյրհս նշանագործութե, մինչև փարատել զամ ցաւս և հալածել զդևս, և մեռեալս անգամ յարուցանել : Սա 'ի ծերութե գտեալ 'ի փոքր բրիտանիա գաղղիոյ 'ի վէննեցիա քաղաքի՝ փոխեցաւ առ Տր յամի 1419. և է պայծառացեալ սքանչելեօք : Լ. ապր. 5 :

Սխողէս զօրական՝ հայր սրբոց վկայիցն գեր-ւասիոսի և պռոտասիոսի, տեսեալ 'ի հռա-ւեննա զբժիշկն ուրսիկինոս՝ որ 'ի չարչա-րանս նահատակութե փոքր մի վատասիրտ երևէր, առէ ցնա. տես զի բժիշկդ մարմնոց մի՛ կորուսցես զհոգիդ. որով զօրացեալ կատարեցաւ նա 'ի տէր ։ Իսկ պաւլինոս դա-տաւորն զայրացեալ ընդ վիտաղէս վն այնր բանի՝ ետ հանել զնա 'ի կախաղան քերա-նաց, և ապա 'ի գուբ մի արկեալ՝ ետ քա-րամբք ծածկել զնա, ըստ սադրելոյ քրմին ապողոնի. բայց քուրմն հարեալ 'ի դիւէն՝ գոչել սկսաւ, դու զիս տոչորես վիտաղիս վկայ քի. և այնպէս գետավէժ կորեաւ ։

Ի. ապր. 28 ։

Աշխոս եպս սեբաստիոյ տօնելի. հտ. Ռ. 386 ։

Սոնիփատոս կմ վոնիփակիոս (այն է պօնիֆա-ցիուս, ըստ բարբառոյ) այր հռովմայեցի՝ ծա-ռայ էր ազգայնոյ կմ աղախնայ դստեր ականաւոր անթիհիւպատոսին, գինարբու և մեղսաշաղախ ը տիկնոջ իւրում. այլ զի ունէին երկուքեանն ողորմած բարս և սէր մեծ առ վկայս քի, խորհրդովն տն յորդո-րեաց ազգայինս զվոնիփատոս երթալ յարե-ւելս 'ի հալածանս դիոկղետիանոսի և մաք-սիմիանոսի, և բերել զնշխարս մարտիրո-սաց 'ի նպաստ թողութե մեղաց իւրեանց ։ Ասէ վոնիփատոս իբրև ը խաղս. եթէ և զիմ մարմինս բերիցեն, ընդունիցիս ոպ մարտի-

րդոյն . իսկ տիկինն ասէ . Թափեամ զգինսիդ , և արամ զոր ասացի ։ Յայնժամ առեալ վընիփատոսի ընդ իւր ինչս բազումս և կտաւս մաքուր՝ գնաց ծառայակցօք ՚ի տարսոն կիլիկեցւոց . և իջևանեալ ՚ի պանդոկի միՙ եթող անդ զընկերսն . և ինքն շրջեալ ՚ի տեղիս ատենից՝ տեսանէր զահեղ տեսարան սրբոց վկայիցն ահատակելոյ սրով և հրով և խաչիւ և այլ ևս դժնդակ մեքենայիւք . և անկեալ ՚ի վերայ խողխողեալ մարմնոց նոցա ողջայր և համբուրէր ։ Զոր տեսեալ դատաւորին՝ կոչեաց և քննեաց զնա . և յասել նորա՝ թէ քրիստոնեայ եմ , և քրիստոսի ծառայ , ետ քերել զնա մինչև յոսկերս , և վարել եղեգունս սրեալս ընդ եղունգունս ձեռացն , և հեղուլ կապար հալեալ ՚ի բերան նորա . եարկ զնա ՚ի յեռացեալ կաթսայ ձիթոյ . և մինչդեռ կայր կենդանի՝ հատին զգլուխ երանելւոյն ։ Իսկ ծառայակիցք նորա տեսեալ զյամենալ նորա՝ կարծէին , եթէ ՚ի չար ճանապարհ երթեալ իցէ . այլ իբրև լուան զմարտիրոսանալն , եկին և ամփոփեցին զպատուական մարմին նորա ընդ գլխոյն . իսկ սրբոյն ժպտեցաւ իբրև կենդանի ։ Եւ եդեալ զնա ՚ի փայտեայ տապանի՝ բերին ՚ի հռոմ . ուր ազդմամբ հրեշտակի ընդառաջ ել սրբոյն տիկինն , և ետ թաղել պատուով ՚ի ճանապարհին լատինայ . և շինեցաւ եկեղեցի յանուն նոր վկային ։ Հ . յունիս . 18 , կամ 19 ։ Յ . դեկտ . 20 ։ Լ . մայ . 14 ։

Կ ընծայեաց Հայրապետ տօնելի . Հտ . Պ . 481 :

# Տ

Տայիս պոռնիկ , որ և դայիսիա կմ Թայիսիս ( աղեքսանդրացի ) , յերկոտասանամենից և 'ի վեր տռփեալ յապիրատ մօրէն 'ի գործ մեղաց վն կորստական ընչից , ձգեր զբազումս 'ի կորուստ . զոր լուեալ ոք ծերոյն սրապիոնի ( կմ պափնուտիոսի սիդոնացւոյ՝ ) եկն առ նա Յակամ ձևով . և իբրև յուշ արար նմա զներկայութի ծածկագիտին այ և զահեղ դատաստանն նր , իսկ և իսկ զղջացաւ տայաս 'ի բոլոր սրտէ . և 'ի հուր արկեալ հրապարակաւ զամ ինչս ժողովեալս մեղօք՝ գնաց զհետ սրապիոնի յանապատ , և արգելաւ 'ի վանս կուսանաց յանձուկ և 'ի նսեմ խցի զամս երիս՝ յաւուրն միանգամ ճաշակելով հաց և ջուր չափով , և աղօթելով միշտ զայս բան . որ ստեղծեր զիս՝ ողորմեա ինձ : Յետ այսորիկ 'ի տեսանել սբյն պօղայ աշակերտի մեծին անտոնի զփառաւոր պսակն՝ որ պատրաստեալ էր տայասայ վն ճշմարիտ ապաշխարութե նր , եկն աբբայ սրապիոն , և հանեալ զտայաս յարգելանոցէ՝ հրաման ետ կալ ընդ այլ կուսանս . որ և յետ ժե աւուրց հիւանդացաւ , և զկնի երից այլ աւուրց փոխեցաւ յերկինս՝ յամի Քրի . 345 : յունիսի . 24 : Յ . ժամագր .

Հոկտ. 8 : Ղ՚ատրնա . Ի. Հնէ : Մարք հց :

Տօն Ճարտերոյ եգիպտացւոց, Մ՛արկիանոս, Նիկանդրոս, Ապողոն, Ղևոնդիոս, Արէոս, Գէորգ, Ապիոք, Սելինոս, Իրինոս, և Պարսամբոն, ՚ի հալածանս մաքսիմիանոսի մատնեալք յատեան դատաւորին եգիպտոսի՝ կրեցին վ̃ն անուանն ք̃ի գանս և քերանս հանդերձ խանձողմամբ վիրացն . և կիսամահ ՚ի բանտ արկեալք՝ բժշկեցան ՚ի ձեռն հրեշտակի . որով և զբազումս ձգեցին ՚ի հաւատս ք̃ի . և յետ կրկին հարցափորձի, սովու և ծարաւու՝ տապով և ցրտով կատարեցան ՚ի բանտի : Հ. ապր. 28, կմ̃ 27 : Յ. Լ. յունիս. 5 :

Տօն Ճարտերոյ կրետացւոց, Ժ̃ Թէոդուլոս, Սատոռնինոս, Եւպորոս, Գելասիոս, և Եւնիկիանոս գորտինացւոց, Զոտիկոս գնոսացի, Պենտիկոս կամ լէոմենէս պոնտիաս եպինացի, Ագաթոպոս պանորմացի, Բասիլիդէս կիւդոնացի, և Եւարիստոս կամ աւեստիոս իրակլացի, ՚ի հալածանս դեկոսի մատնեցան վասն ք̃ի ՚ի ձեռս բդեշխին կրետայ . որ ետ զնոսա ՚ի ձեռս ամբոխին՝ քարշել ը̃ հրապարակս, կախել և այպանել, թքանել և փետել զհերս նց̃, թաւալել յաղտեղութիս, և քարամբք կոշկոճել ամնօրեայ մի ժամանակ . և յետ բանտարկութե իւրև ետես զհաստատութի վկայից ՚ի ք̃ս, բրածեծ արար զն̃ս, և ետ հատանել զգլուխս նց̃ : Իսկ եղեն գորտինոյ քա-

ղա

